ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Պ. ՊԱԼԵՆՑ ԳՐԱՏԱՆ

# ՄԱՍՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄԵԾԱՏՈՒՆՆԵՐՈՒ

## 1400էն 1900

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՅԱՐԴԱՐԵԱԼ ԵՒ ԿՐԿՆԱՊԱՏԿԵԱԼ

ԳՐԵՑ

Յ. Գ. Մ.

Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐ. Օ. ԱՐՁՈՒՄԱՆ
*Զարմագճըլար Եակուպեան խան*
1910

ԳԻՆ 10 ՂՐՇ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Պ. ՊԱԼԵՆՑ ԳՐԱՏԱՆ

# ՄԱՍՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ՄԵԾԱՏՈՒՆՆԵՐՈՒ

**1400 ԷՆ 1900**



Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՅԱՐԴԱՐԵԱԼ ԵՒ ԿՐԿՆԱՊԱՏԿԵԱԼ

*«Ոչ եթէ դու՛ զարմատն ի վեր ունիս,*
*այլ արմա՛տն զքեզ:»*
**Պօղոս**, *առ Հռոմայեցիս. ԺԱ. 18:*

ԳՐԵՑ

Յ. Գ. Մ.



Կ. ՊՈԼԻՍ
ԳՐԱՏՈՒՆ Պ. ՊԱԼԵՆՑ
1909

# ՄՈՒՏՔ

Եօթը տարի է՝ որ գործիս համառօտութիւնն հրատա-րակած եմ պատուական Մխիթարեանց Վենետիկի Ս. Ղա-զարի վանքին տպարանէն, եւ հինգ տարի կայ՝ լուր առած եմ այդ առաջին համառօտ տպագրութեանն սպառումին:

Թէպէտեւ մեզի համար արտուղի գործ մըն էր աս եւ կարօտ՝ շատ կողմերով ամուլ աշխատութեանց, սակայն նկա-տելով ժամանակակիցներու վերաբերումով եւ գործնական ու բարոյական շինութեանց տեսակէտով՝ ՀԻՆ ՕՐԵՐու մե-ծութեանց վրայ պատմական այսպիսի Ձեռնարկի մը իրա-կան ու անհրաժեշտ օգուտները, մանաւանդ քաջալերուա՛ծ առաջին փորձին գտած ընդունելութենէն՝ ձեռնարկեցինք վերստին խմբագրել ու աւելի ընդարձակ սահմանի մը մէջ ամփոփել զայն, աւելի՛ խնամով մը պաճուճելով լեզուն եւ շարադրութիւնն ալ, եւ աւելցունելով ի Կ. Պոլիս Հայոց փողոց գոյութեան վրայ մասնագրական նոր վկայու-թիւններ (*). Մեհիններու Թուականայ մեծատուններու եւ Պաղեստանի հայ վանքերու վրայ ալ գլուխ մը, ինչպէս Անիին գաղթողաց եւ Լեհաստանի ու Տրանսիլվանիայի Հա-յոց վրայ տեղեկութիւններ: Այնպէս որ ներկայ տպագրու-թիւնն եղաւ առաջինին կրկնապատիկէն աւելի՝ ինչպէս անոր վրայ թափուած մանրակրկիտ աշխատութիւնը, որուն

(*) Հարիւր աւելի տպեալ ու ձեռագիր գիրք ու տետրակ աչքէ անցուցած եւ նոյնչափ ալ իրազեկ անձնաւորութիւններ հարցա-փորձած եմ այս պատրաստութեան համար:

արժէքը գիտնալու են այս կարգի նախաձեռնարկ գործերու մէջ քրտնողները: Շնորհակալութի՛ է առ այս նաեւ մեր պաշտ. հրատարակիչ Պալճեան գրատանն ալ՝ որ գիտցաւ արժեցունել մեր այս գործը:

Հնարաւոր խտութիւն ունի, վաւերական վկայութեանց համար խղճամտութիւն, անաչառ ու չէզոք դատաստաններ եւ ուսաբուղխ ազատական խորհրդածութիւններ՝ ըստ մեր բաւականին՝ յուսամ պիտի կրնայ տալ արժանի կարեւորութիւն մը, յաչս յառաջդիմասէր մեծատանց, հին տոհմերու, պատմասէր եւ ուսումնասէր ժամանակակցաց, մեր Ձեռնարկին այս նոր տպագրութեանն ալ:

Աւելի՛ն՝ ժամանակի՛ն (*) ու նորագոյն աւելի՛ մասնագիտաց:

**Յ. Գ. Մ.**

**Սկիւտար, Կ. Պոլիս**
*1909, 1/14 Մարտ*



(*) Կը խնդրուի Թուրքիոյ եւ արտասահմանի մեծատուններու եւ ազնուականներու որդիներէն ու պարագաներէն՝ որ բարեհաճին յղել մեզի իրենց պատուական նախահարց վրայ գտուող վաւերական տեղեկութիւններ՝ ի պէտս յաջորդ հրատարակութեանց եւ ի շուք իրենց ազնուական եւ ազնուազարմ անունին, բայց մի՛շտ **ճիշդ ու վաւերական** համառօտութեամբ, որպէս զի առիթ ընծայած չըլլանք բամբասանքի եւ խծբծանքի, որ դժբաղդաբար երկրորդ բարք մը դառնալու վրայ են մեր մէջ: Ճշմարտութիւնն՝ ազնուազո՛յն ազնուականութիւնն է:

(Գրել Հեղինակին հասցէին ի Կ. Պոլիս Չամլաճըլար, Պ. Պալճեան գրատուն):

Պատմապէս ու բանաստեղծապէս ալ՝ երբեք ծագեալ արաբական Միր, Էմիր, Միրիմիրան բառերէն՝ շատ նո՛ր կը թուի (1) ու կը նշանակէ՝ գէթ բառ ձայնականին՝ Հրամանատար, Հրամանապետ, եթէ սակայն այդ սեմական ժողովուրդին նախնականին անուանութեամբը՝ ժառանգուած չըլլայ յաջորդաբար Պարսկաստանի ու Միջագետքի Տանուտէրներէն ու չնշանակէ, բառ այնմ, նախապետ կամ նահապետ՝ գրեթէ համազօր նախնի Հռոմայեցիներուն և արդի Անգղիացիներուն Պատրիկ ու Լորտ կոչումներուն՝ քիչ մը սեղմելով այս բառերուն քաղաքական լայնութիւնն և 'ի փոխարէն լայնելով անոնց տանուտիրական առումը:

Ամիրայ բառը չէ յիշուած մատենապէս հայերուն մէջ՝ Մագիստրոսէն, Արծրունիէն, Ուռհայեցիէն առաջ. (2) օրինակի համար՝ «Ազգ արար ամենայն մասուոր ամի-

---

(1) Թուրքմէնիերուն մէջ՝ 1750 էն առաջին է, որ կը յիշտուի այս մակդիրն անձի պաշտօնապէս տիտղոսաց: Անկէ առաջ յիշատակագրուած կը տեսնենք՝ հին Թուրքմէնիերուն մէջ անձի գործածուած Հօճա, Չէլէպի, Տէօվլէթպաշար, Մահտեսի, տղա՛յ եւլն պատուանուններ, որ կընծայուէին ժամանակին բանիբուն կամ բանասէր կամ հարուստ եւ կամ բարերար անձնաւորութեանց, հարուստներն ու մեծամեծներն Հնդկաստանի մէջ կը կոչուին բաբու որ համանիշ է **պարոն** կամ **ամիրայ** տիտղոսներուն:

(2) Կը յիշուի նաեւ 13րդ դարին վերջերը պատմական «Ա՛յր մեծազգի» մը Ամիրայ անուն Առփայ գիւղէն, բարերար ու մեծատոհմիկ մարդ: Տես **Ստեփաննոսի Սիւնեաց Եպիսկոպոսի պատմութիւնը**, տպեալ 'ի Մոսկվա 1861 (էջ 358): Անկէ ետքն ատեններն՝ Ամիրայ տիտղոսին համազօր բառեր էին՝ իշխանաց իշխան, հրամանատար, մարզպան, ոստիկան, կուրապաղատ, պատրիկ, Մագիստրոս, տուխ կամ տուկ, կոմս, հիւպատոս, Վեստ, Սեպաստոս, որ քաղաքներու եւ ամբողջ գաւառներու կիշխէին: Իրենց գլխաւոր կայաններն էին հին ատենները՝ Դուին ու Նախիջեւան, ուր դրամ եւս կը կոխէին: Այս դրամներուն ամէնէն հինը կոխուած է 717-718 թուականներուն ըստ Ֆրէնն դրամագէտին:

բացցին» . «Ո՛վ մականուանդ ամիրայական սերի յԱզգասիրան» Մագիստր. Է., որով կըրնանք ըսել թէ հեղինակական այդ գաղափարէն շատ հեռու մնացած է մեր մէջ ամիրայ ա–նունը: Տե՛ս նաեւ բառն Ամիրայ՝ Հայերէնի փոխառեալ բառերու ուսումնասիրութեան մէջ Հ. Հիւպշմանի (էջ . 54) տպագր . Վիեննա 1894:

Իսկ Մէլիք կոչումն՝ աւելի՛ հին է ծագումով եւ իր նշանակութիւնը ծանօթ է սեմականագիտաց, մանաւանդ եբ–րայագիտաց, վասն զի բուն եբրայական բառ է ու ամի–րայէն աւելի բարձր նշանակութիւն ունի: Միւս կցորդ կոչումները— Հօճա, Աղայ, Տէօվլէթլուոր եւս յայտնի են, ինչպէս իրենց մեկնեալ նշանակութիւնները:



Ունեցած ենք մենք ալ Ամիրաներ, եւ անոնց ա–նունները լծորդուած են՝ մանաւանդ Թուրքահայերուն՝ պատմութեան հետ 1550 էն սկսեալ մինչեւ 1866 կամ 1870, մինչ մեռաւ Ամիրաներուն ետքը (1) վերջինն ու մեծահամբաւն ալ — Կարապետ Ամիրան Պալեան, արքունի մեծ ճարտարապետն հայ. խալֆան:

Ըստ այսմ՝ ՚ի չգոյէ ժամանակակից ամիրայի որդի

(1) Վասն զի Կարապետ ամիրայէն ետքը՝ 1869ին վախճանած է ամիրայապետի Տատեան Յովհաննէս պէյը, վառօդապետ արքունի ու բարերար Ս. Փրկչի Հիւանդանոցին եւ մատենագրական ու դպրոցական շատ ձեռնարկութեանց: Յովհաննէս պէյ Տատեանի մատենագրական մեծագոյն յիշատակարաններն են՝ Հ. Եղիակի Գա–բրիէլեան Մխիթարեան վարդապետին երկհատոր ընդարձակ Տիեզե–րական Պատմութեան տպագրութիւնն (ի Վիեննա 1849), որուն վեր–ջին հատորը դեռ լոյս չէ տեսած մեծ դժբաղդութեամբ եւ ըն–դարձակ աշխարհացոյցներն՝ լոյս տեսած Վենետիկի Ս. Ղազարու Մխիթարեանց վանքէն: Յովհաննէս պէյ Տատեան մեր կոչուած է **Ազգասէր** եւս:

սերունդը չէ՛ տեսած ու չօշափած ամիրայ մը, չունի ամիրայութեան վրայ կայուն՝ այսինքն՝ գերի առնուած գաղափար մը, ժողովածու գրաբառ պատմութենէ (1) մը զատ, որ ամիրաներու էութեան ու երանգին վրայ ոչինչ կրնայ իրեն պատմել քննաբար:

Ամիրաներուն գիրքն ու անունները կը պատկերին նոր սերունդին երեւակայութեանը մէջ, ազդեցութեամբ անհատական դրոյթներու և ծայրայեղ կուսակցական պատմութեանց, համբաւական հին արտադրածներուն կամ Արաբական գիշերներու առասպելի պարիկներուն խօլ գիծերովը, այնչա՛փ սիրած էինք Փրանսական հեռաւոր երեւակայութեանց անիր վէպերն ու այնչա՛փ անհոգ մնացած էինք մերձաւոր ու իրական անցեալին ու ժամանակակից կըցորդ պատմութեանց: Ամիրաներուն և ոչ հասարակ հայ մեծատուններուն վէպը՝ Զօլա՛ն իսկ չգիտէր ու չէր կրնար տալ մեզի ինչպէս որ արժան է:

Այս անհոգութեան նշանակելի պարագան՝ միայն Ռուսահայ մեծկակ գրիչ մը գիտել տուած է, ու՝ իր կարգին՝ մասնական պատմութիւն մը գրած և հրատարակած է իրեն ծանօթ Պարսկաստանի և Ռուսաստանի հայ մեծատուններուն վրայ:

Ու ես՝ այդ իրական անցեալ կենցաղներէն կը համարձակիմ փորձել այսօր՝ ներկայի ու անցեալ հոգիներու մէջ՝ բանալ ցուցադրել փոքրիկ սրահ մը, վայրիս ժամանակիս ու պարագաներու թելադրածին չափ սրահակ մը, զոր ուրիշ լայնագոյն պատեհներով թերեւս կարենամ այլ ընդարձակել ու վերածել մանրանկար ցուցադրութեան մը «հարցասիրելով մեր հայրերը, որ և պիտի պատմեն ու մեր ծերերը, որ պիտի ըսեն»: (2)

*
* *

(1) Պատմութիւն Աւետիս Վարժապետի Պէրպէրեան, 1772—1860:
(2) **Երկր. Օրինաց** Մովսէսի ԼԲ. 7—8:

Այդ հին սերունդին բարեկամներէն համարուելու եմ՝ որ տեսած եմ խոր տղայութեանս մէկ հատիկ ջոջ ամիրայ մը, ու այսպէս՝ պիտի կրնամ ասել աղօտ պատկեր մը գաղափար մը իր ու թերեւս՝ իրմով՝ միւս ամիրաներուն և մեծատուններուն ալ կենդանագիրներուն վրայ։ Նոյ՛ն յիշեալ Կարապետ ամիրայ Պալեանն էր այն իմ տեսածս։

Հազի՛ւ հինգ-վեց տարեկան կայի՝ երբ լսելով իրենց չափ ակնածողներուն շշնջիւնը՝ թէ Կարապետ Ամիրան կամ աղան (սո՛ւտ, տանելէ յատուկ անունի, աղա՛ն) «կու գայ կոր», վազեցի հասայ Քուզկունճուգ-Իճատիյէի զառի վերին գլուխը, ուրկէ պիտի անցնէր՝ Ներսէս Աշտարակեցի կաթողիկոսին բարձր թեկնածութեան և Սէթեան Յովհաննէս վարդապետին ու Տէրոյենց Յովհաննէս Պրուսացի պատուելիին աստուածաբանական ու այնքան բարձր առաջնորդութեանը՝ Շահնազարեան Կարապետ էջմիածնի վարդապետաց դասուն եղբայրակից ամիրան (1), համարձա՛կ ճէզայիրլեան Մկրտիչ ամիրային համեմատ ռամիկ բարեպաշտ, վարպե՛տ մարդը։

Ինչ ձիաւո՛ր էր այն երեկոյ, ու ձին՝ պարզօրէն համետուած՝ կ'ընթանար մեղմիկ արդարութեամբ զառ 'ի վերն 'ի վեր. ետեւէն կը գար հետեւակ իր անբաժան ծառան կամ հէճուպը՝ Գասպար. քանի մը անցորդ հայեր ալ բարեւի կեցան հոն անցորդաբար։ Խաչա ամիրան՝ իր ձիուն վրայ ուղղաբերձ նստած՝ վաթսուն և հինգնո՛ց մը կը թուէր. Գրիգոր էֆէնտի Գարակէօզեանի ձիաւոր գրհացքին բաւականին նման ձուլուածով ու սարուածքով մը, բայց աւելի՛ երկայնահասակ, աւելի՛ տարէց, աւելի՛ չաղ, ու աւելի՛ և աւելի՛ հանդուգն։ Ունէր քայլա-

(¹) Տե՛ս այս դասատանին նկարագրութիւնը մեր Յովհ. Տէրոյենցի Վարքին մէջ, ՀԻՆ ՕՐԵՐ։

շուրթն մէկի մը ներքև կիսովի զարդուած ճակատ մը ան-կիւնաւոր, թանձր լուրջ և բաշակաց յօնքեր, ճերմակ ու յորդկէկ պեխեր, նոյն գոյնով և թուլցած այտեր, բե-րանն ալ՝ բաւական խոշոր։ Կլոր գլուխը բոլանդակ՝ որուն երևեցուցիչ մասին վրայ ծեփուած էր ճոխ և գոհ և ծա-ծուկ խնիդ մը, ճարտարպետօրէն յեցած հաստատուն մի-ջի մը վրայ՝ կը ճոճեցունէր ասիական ու բիւզանդական խառնուածոյ ազնուականութիւն մը, հրաման մը։ Շրթ-ունքը կխափուց ու աչքն համարձակահայեաց՝ ունէին դիրք մը անճնապատրաստ յանկարծ բանալու և անկեղծե-լու մեծարոյ ի՛նչ է ան, ծօ՛ (1), որուն՝ դէմի ազերա-ւորը պէտք էր պատասխանել խոնարհութեամբ և բոլ անմիջապէս ի՛նչ։ Ամիրան հագած էր այն օրն (ու թերևս մ՛իշտ ալ կը հագնէր) զուգուշկոպալը բաճկոն մը պարզ, և՝ ատանց արդուկի՝ նոյնպէս պարզուկ օձիքով ու մթագոյն փողկապով շրջապատուած էր իր մազասուն վիզը։ Ձեռքն ալ ունէր բարակ չիղ մը երերուն, որ կը ծառայէր իբրև խարազան։ Այս ձևերն էին՝ որ նաքերը, գրեթէ նոյնու-թեամբ, օրինակուեցան իրեն ստորադրեալներէն ճարպիկ ու խորագէտ յաջորդողէ մը(2), որ գիտեց իբր իրեն չափ հարըս-տութիւն ալ չ'ունեցաւ իրենչափ անուն և ազդեցութիւն։

Ամիրային բարեկամներուն հետ՝ ես ալ կանոնական ան-ուղղով մը երկու երեք վայրկեան կեցայ ու գիտեցի մեծարելալ ձիաւորը, որուն հետ մեր ընտանիքն ալ ունէր խնամենական կցորդութիւններ և որուն վրայ կը պատմէին մեր տունը կարգ մը ներքին բաներ, ու կը պատմէին կը անէն ու կարձագանգեն մինչև ցարդ։ Այս ,

(1) Ծօ՛, կոչականը մինչև 1880 սովորական էր Թուրքահայերուն մէջ առ ստորադրեալս ուղղեալ՝ ոչ այնքան ազնուաբար. ընս որում յունական զօ՛ (կենդանի խեն) կոչումէն ածանցուած։

(2) Գրիգոր Ներսէսեան։

տեսայ ու զիտեցի Կարապետ ամիրան՝ ո՛չ Անաքարախի մը ո՛չ ալ Պլուտարքոսի մը աչքով, այլ մանաւանդ համարձակութեամբ՝ մինչ թաղիս դպրոցէն ու Արապ զաւէի (1) բլուրէն անդին չէր անցներ մտայի՞ն ալ մարմնակա՞ն ալ տեսութեանցս հորիզոնը. զիտեցի այդպէս, եւ՝ տղա՛յ ըսի իսրալի — Ամիրան մա՛ է եղեր — ինչպէս զիս ընթերցող տղաքն ալ թերեւս բանն հիմայ:

Տարի մը չէր անցած՝ երբ լսուեցաւ թէ Կարապետ ամիրան յանկարծամա՞հ եղեր է։ Եւ որովհետեւ լուսանկար չէր հանած՝ քաշեցին իր պատկերը՝ Պէշիքթաշի տանը մէջ՝ իր անշնչացած մարմնին վրայէն։ Այս հակիրճ նկարագիրէն ասելին անմոռ փափագողը՝ կրնայ գտնել այդ մեծագիր պատկերն ամիրայական Փանփաղեան Գէորգ էֆէնտիին տունն 'ի Սկիւտար Թօփհանէլի օղլու, կամ անկէ օրինակուածը հիւանդանոցի ընդունելութեան սրահը:

*
* *

Այսպէ՛ս, վաւերական ամիրաներուն իբրեւ վերջինն եղաւ ճարտարապետ Կարապետ Ամիրան Պալեան, որդի Գրիգոր Ամիրայի Պալեան եւ որդեկորոյս հայրը վաղամեռիկ Նիկողայոս աղայի Պալեան՝ հայր եւ որդիք (Նիկողայոս, Յակոբ, Սարգիս) ճարտարապետողք Չրաղանի ու Տոլմապաղճէի դիւթական պալատներուն եւ ամէնն ալ

(1) Գեղեցիկ անտառուտ ու պարտիզաւոր բլուր մը Սկիւտարի վրայ, ուրկէ կը դիտուին՝ զրօսացիկ սփռուածութեամբ՝ Վոսփորի գլուխին երկրէ ստուարանները: Այս բլուրին ստորոտ ափունքն է (բուն մանաւա՛նդ Դաղիքիոսի) որ ի հնումն Կով կամ Ցով եւ նոր տեսներ **Խօփիւզ Լիմանը** կոչուեցաւ, եւ ուրկէ տեղի ունեցաւ առասպելեալ ժամանակներում Ցովի կամ Կովի անցքն ու եղաւ պատճառ ամբողջ Թրակեան նեղուցին Վոսփորոս անուանակոչութեանը: **Վոսփորոս**՝ կը թարգմանուի յունականէն **արջառի անցք**:

# Բ.

Պատմական այս ընձեռուածին (manuel) սկզբնական դժուարութեանցը մէջ՝ մեր գլխաւոր աղբիւրներն եղած են, վաւերական գրոյցներու մը հետ, հնօրեայ կոթողներ, խաչքարեր, եկեղեցական պատկերներ ու արձանագրութիւններ և այն յիշատակարանները, որ կը գտնուին 18րդ 19րդ դարերուն Պոլիս տպուած գիրքերուն վերջերը Փորձիս մէջ, մանաւանդ ակնարկելով հանդերձ Թուրքաստանի Պարսկաստանի ու Հնդկաստանի հայ մեծատուններուն, կը յիշատակենք գլխաւորապէս ու աշխարհակցապէս Թուրքիոյ մեծերն ու ամիրաները: Պէտք է գիտնալ նաև ուշիմ պատմաբանաց՝ որ բերանացի աւանդական գրոյցներ քննած ատեն՝ չուզեցինք՝ անձնիւր առնմի սերունդին իր նախորդներուն վրայ պատմած ամէն բաները վաւերական վէպեր սեպել, ոչ ալ բանի տեղ դնել հակառակ վկայութիւնները՝ խորշելով միայն առհամայն մտահանութիւններէն կամ ամբարտաւանութիւններէն ու նախանձի հակադրոյցներէն:

Դժբաղդաբար այդ գրոյցները, կոթողները, խաչքարերն ու յիշատակարաններն ալ՝ յոկ անուններէ տեղաներէ ու չորս մը մանրամասնական պարագաներէ զատ՝ կարեւոր բաներ մը չէին յիշատակեր: Պոլսոյ տպագրութեան սկիզբն ալ 1567 թուականէն անդին չանցնելով՝ հարիւր տարուան պակաս մը կը մնար Թուրքահայերուն համար, զոր ըստ արժանւոյն չկրցան լեցունել աւանդութիւնն և ձեռագիր տետրակներ:

Յիշատակարաններուն անտեսածը լեցուցինք բազմահմուտ բանգէտներու և գրագէտներու հաւաքուած գոր-

ծերէն ու ժամանակակից արձանագրութիւններէ՝ բանուկ խակերու մօտ դժուարութեամբ. այդ հարիւր տարուան թերայթն ալ՝ փորձեցինք պարզել կենցաղագէտ ծերունիներու մէկ քանի ձեռագիրներու և պատմական հետեւան գնացքի մը խելամտութեանց միջոցով, որ ահաւասիկ: —

Զգիտենք հաստատօք՝ թէ 1453ի Կ. Պոլսի առումին ականատես Աբրահամ Վարդապետին յիշատակած «Աստուածատուր Սաթըլմըշին, եւ Սիմէոն քարի Փաշին և պապայի որդի Այվազն (ու) պարոն Գէորգ Եշիլ հաճին [1]», ընդամէնը չորս հոգիի տաղաչափեալ անկիւրացիներ, նաև պրուսացիներ իրենց տունն ու տեղը ձգելով Կ. Պոլիս չեկած, երևելի տունե՞ր էին՝ աշխարհականին կամ իր գաղթեցուցիչ պաշտօնեաներուն ուշադրութիւնը գրաւելու աստիճան: Այս հաւանական է:

Նաև շատ հաւանական է՝ որ նոր Ստամպուլի ճոխութիւններով շնորհներով ու փառքերով՝ իրենք ու իրենց գաղթակից այլք ճէօմարթի [2] հայերը մեծատուն բանելու աստիճան երևելի եղան ու հարստացա՛ն ալ քիչ ատենի մէջ:

Ասոնցմէ շատ առաջ՝ մինչեւ 6-7րդ դարերուն կը հաստատուի պատմութիւնը Հայերու գոյութեան ի Կ. Պո-

[1] «Եւ ոչ միայն Թուրքաց ազգին,
Այլ քրիստոնէայքն ի մէջ բերին,
Ի խաննեւուր Հոգեւորներին
Զորս Հայ 'ի յԱնկիւրոյ բերին.
Աստուածատուր Սաթըլ Միշին,
Եւ Սիմէոն քարի Փաշին,
Եւ պապայի որդի Այվազն,
Եւ պարոն Գորգն Եշիլ Հաճին:»
—Ձեռագիր Աբրահամ վարդապետի, տող 260—268:

[2] Կ. Պոլսի հին եւ պաշտօնական բաժանումին կը չուլոյն է:

լիս, և բաւական թիւով, 2-3000ի չափ՝ արհեստաւոր, գործակատար, զինուորական(1) և կրօնաւո՛ր այլ (Զըպըրքլըյի Ակումբաններուն միջնադարեան վանքին, Սկիւտար Զամլըճայի և ուրիշ վանքերու մէջ)(2), յորս կան նաև

---

(1) Histoire d'Attila et de ses successeurs, par Amédée Thierry (Vol. II, V.me édition, page 96-97) Տասնեւմէկերորդ դար Գրիգոր Վկայասէրի օրերն, որ ինք այլ եկաւ Կ. Պոլիս, Կիլիկիայի կողմերէն շատ Հայեր կերթեւեկէին Արեւելքի նոր Հռոմը: 14րդ դարին ևս Լենկթիմուրի հրոսող արշաւանքին ժամանակ բազմաթիւ Հայեր գաղթեցին Կ. Պոլիս, Վանէն, Սեբաստիայէն, Կարինէն, Թոխաթէն ու Ակնէն (Պատմութիւն Հայ Եկեղեցւոյ Մեղքիսեդ Մուրատեան վարդապետի, էջ 489): Ութերորդ դարին այլ Պաւլիկեանք, որոնց մէջ կային նաև շատ Հայեր, ընդ երկար կռուելէ ետք իրենց դիմակայութիւնն հանդէպ Կ. Պոլսի հալածող յոյն կայսերաց Արգէոս լերան, Սեբաստիայի, Կարինի ու Տիվրիկի կողմերը՝ Կոստանդին Կոպրոնիմոսի ձեռքով վերջապէս բերուեցան ու հաստատուեցան Կ. Պոլիս ու Թրակիոյ մէջ խաղաղներ, ուրկէ իրենց վարդապետութիւնն անցաւ Եւրոպա (տե՛ս Կեդրենոս եւ Տարեգիրք Թէոփանեսի): Եւ ասոնք մինչեւ գաղտնի յարաբերութեան մէջ էին իրենց հայրենակցաւորներու եղբարց հետ: Ասոնք հաստատուեցան նաև 11րդ դարին Եմոս (Պալքան) լերանց հովիտներուն եւ Փիլիպպէի մէջ, ուր վայելեցին առելի՛ բոլշութիւններ ու եղան միջնորդ հին Մանիքեցւոց աղանդին Եւրոպայի մէջ տարածուելուն. (Gibbonի Decline and fall ch. LIV): Հին Կ. Պոլսոյ ու Եւրոպական Թուրքիայի Հայոց մեծ մասն հաւանական է՝ որ այդ ժամանակներէն գաղթած ըլլայ:

(2) Հաւանական կը թուի նաև մեզի թէ. զէթ 11րդ դարէն ետք, մանաւանդ Լատինաց Կ. Պոլիսն տիրելու ժամանակները, կային մէկ քանի եկեղեցիներ այլ նոյն մայրաքաղաքին մէջ Հայոց սեպհական, նկատելով մանաւանդ աշխարհի չորս կողմերէն Կ. Պոլիս երթեւեկող այլեւայլ ազգաց հետ Հայերո՛ւն այլ իրենց վաճառական իրենց զինուորական Կ. Պոլիս յաճախելն ու հոն հաստատուիլը: Եւ Հայերն առանց եկեղեցի ...ցանելու չե՛ն տեղաւորուիր ուրեք: Նիկեայ ... պատմագիրք

Ասոնց մէջ գլխաւոր տեղ կը բռնէ Կիպրոս կղզիին գաղթականութիւնը, որ կըսկսի իններորդ դարէն և որուն մէջ պակաս չէին ըլլար նշանաւոր անձնաւորութիւններ —պարոն Լեւոն Համեցի, Տիկին Սուլթան, Յովհաննէս Տիքերիացի, Թորոս Կոստանց, Մայրապետն քոյր Զիմի (1308), մայրապետ ազնուական Մարիամ (1310) եւլն (1):



Պոլսի վերջին առումէն 60ի չափ տարի առաջ է Ղալաթիա եկեղեցի շինող Ճենովացի Կոմս վաճառականը, որուն համապատիւ հայ կանանք կային կամ Թըրքիմէն անոր հետ գաղթեցին առեւտրական ու արհեստաւորական այդ Ցայնիկոյսը (2), որ գաղխական (Կողուա) գաղութէն մինչև մեր օրերը՝ հին հեթանոսութեան ու քրիստոնէութեան վաճառաշա՞ քաղաքիկ մը դարձած է բազմամարդ ու բազմաշարժ և ուր կը բնակէին բիւզանդական ճոխ պատրիկները (3): Անո՞նք ալ՝ ժամանակակից մեծատուններուն նման՝ ունէին իրենց հետեւորդ Հայերն ու փոքրիկ կաղմակերպութիւն մը առանձնաւորական, բայց պատմութիւնը

---

դարին այցելով Գ. Պոլիս կը նկարագրէ զայն ամբաւ սքանչացումով իբրեւ «դշխոյ քաղաքաց, ուր տարուէ տարի կը հաւաքուին Ռում պետութեան բոլոր հարկերը, եւ անոր պարծանքները աշտարակներն ու մթերանոցները լեցուն էին մետաքսով ծիրանիով եւ ոսկիով: Հոն բազմաթիւ էին վաճառականներ Պարսկաստանէն, Եգիպտոսէն, Ռուսիայէն, Հունգարիայէն, Իտալիայէն ու Սպանիայէն, ծովէն ցամաքէն հոն գալով», եւ այս վաճառականներուն մէջ, մանաւանդ Պարսկաստանի, Ռուսիայի, Եգիպտոսի վաճառականներուն մէջ, կային անշուշտ հայ բանքարներ ալ:

(1) Տե՛ս **Կիպրոս Կղզի** (էջ 49—60):

(2) Բառս, որ Ղալաթիայի եզական անունն էր, կը նշանակէ յունարէն **լայնիկոյս**:

(3) «Histoire d'Attila.» A. Thierry (Vol. II page 88):

մանրամասնաբար ու վաւերաբար չեն արձանագրուած անոնք կամ չեն հասած մեր ձեռքը։ Յայտնի գիտենք միայն՝ որ այդ Յայենկոյսին վաճառական Հայերուն համար Կաֆայի Հայերը շինեցին երկրորդ անգամ Ս. Լուսաւորիչ եկեղեցին՝ խոնարհ կոթիկ ոճով մը (1)։

(1) 1436ին՝ ըստ վիմագրեալ արձանագրութեանն: Կը թուի դարձեալ թէ աւելի առաջները Պոլիսի կողմը, թերեւս Թօփ գաբուի հին Ս. Սարգիս եկեղեցիին տեղը, կար հինաւուրց հայ եկեղեցի մը: Տասնեւհինգ ու տասնեւվեցերորդ դարերէն սկսեալ, իտալացի վաճառականներու, արուեստագէտներու եւ մեծ գրագէտներու ազդեցութիւնն հանուր Եւրոպայի, մանաւանդ Անգղիայի ու եւրոպական Թուրքիայի եւ Կ. Պոլիսի վրայ նշանակելի եղած է: Այդ դարերուն Հենրիկոս Ը. եւ կարդինալ Ուոլսէյ Անգղիայի մէջ հզօրապէս պաշտպան կեցած են իտալական գեղարուեստից, ու մանաւանդ վերջինը բերել տուած է շատ իտալացի արուեստագէտներ, շքեղազարդելու համար Hampton Court Palaceը: Շնորհիւ իտալական գեղանկար ճարտարապետաց՝ կոթական հին ոճը տեղի կու-տար նոյն ատենը վերածնութեան ոճին. իտալացի բժիշկներ մուտ գործեցին Թիւտոր թագաւորաց եւ արքունականներու պալատներ: Իտալացի սեղանաւորներ, երգահաններ, սուսերամարտիկներ, պարապետներ եւ պարտիզպաններ կը մարզէին բրիտանիկ ազնուականութիւնը, որ իրեն կրթութեան լրութիւնը կը համարէր իտալական լեզուին ուսումն ալ: Նորածագ բողոքականութեան վերջնական յաղթանակն ու Մաքիավելական իշխանութիւններն հազիւ կրցան վարել Անգղիայէն իտալական այս հզօ՛ր ներգործութիւնը: Այսպէս կը գրէ Nuova Antologia իտալական հանդէսին 1906 Հոկտ.ի թիւը (տես ի Review of Beviews, 1906 Նոյեմբերի թիւը, էջ 527): Այդ ու աւելի՝ հին ժամանակէն՝ Իտալացւոց ազդեցութիւնն ի Կ. Պոլիս ալ մեծ եղած է, մանաւանդ ի Ղալաթիա, ուր կը գործէին Ճենովացիք եւ վերերը, արդի Պերան, ուր կը բնակէին ժիր եւ ճոխ Վենետիկեցիք. եւ այդ պատճառներով իտալական լեզուն Կ. Պոլիսի Քրիստոնեաներուն, Հրեաներուն եւ Հայերո՛ւն ալ մէջ եղած էր հրապարակի գործնական լեզուն, եւ մեր հին հայ մեծատուններն ու մեծ գրագէտները խաչ կը խօսէին թոսկանական բարբառը, ինչպէս խաչ կը գրէին ալ: Այդ օրերէն եկած հասած են առեւտուրի լեզուին մէջ ցարդ ընթացիկ կոկիկ կլորիկ բառերն իտալական։

*Ուստի՝ գալով Կ. Պոլսոյ վերջին առումին ժամանակներն՝ կը գտնենք որ հին տոհմերուն հաստատուն շարունակութիւններէն զատ 'ի հնմէ փոքր Ասիա, որոնց մեծ մասը կոչուեցան իշխանաւոր, տէօվլէթաւոր և միւս փոքր մասերը՝ Տէր, Պէյ, Հօճայ, Աղայ, մերթ նաև Պարոն, աշխարհական Սուլթան Մեհմէտ Բ.ի պաշտպանութեան արժանացող Կ. Պոլսոյ Յովակիմ առաջին պատրիարքին հետ* (1) 1461*ին Կ. Պոլիս եկող՝ պրուսացի, գաղատացի, ամասիացի, արաբկիրցի և այլս ղարամանցի* (2), *թոքաթցի սամաթիաբնակ*(3) *հարիւր հարիւր-*

---

(1) *Պրուսացիներուն մէջ հայ զրոյց մը, ըստ որում Կ. Պոլսի այս առաջին Պատրիարքը, որ Պրուսայի եպիսկոպոս էր առաջ, շատ ստոր վիճակ մը եկեղեցական դառնալով եպիսկոպոսացած էր...*

(2) *Ղարամանի աւելի՛ հին Հայերուն Խաչակրաց մատուցած դիւրութիւններն ու ծառայութիւններն ալ՝ անշուշտ չմոռնալ տուած էին Լատինաց հողմէն նոյն Հայոց գլխաւորներուն տեղ ու դիրք մը Կ. Պոլսի մէջ, երբ Լատին Պարոնայք (վենետիկցի, ճենովացի եւայլն) կը տիրէին Կ. Պոլսի 12րդ դարէն սկսեալ:*

*Դարձեալ Լատինաց Կ. Պոլսէն վտարուելէն ետք, յունական իշխանութիւնը խաղաղականութեամբ մը բազմացուց Կ. Պոլիսն ամէն կարգի ժողովուրդներով, մանաւանդ արեւելեան գաւառներէն* (Gibbon Decline and fall. Vol. 4, page 235):

*13—14րդ դարերուն Զմիւռնիայի մէջ կը յիշուին, վաճառական Յունաց հետ, վաճառական բազմաթիւ Հայեր ալ* (Gibbon, *անդ էջ 278*):

(3) *Հ. Ղուկաս Ինճիճեան, աշխարհագր. Եւրոպիա (հատ. Ե. էջ 131): Սամաթիայի եկեղեցիին շուրջի թաղն հայաբնակ մինչեւ 1805 թուականը կ'ըսուէր* **Դապաղխանէ մահալլէսի**: *Իսկ օսմանեան մեծանուն պատմագիրն Յ. Համմէր՝ կը պատմէ Կոստանդինուպոլսի 15րդ դարու գաղթականութիւններն այսպէս. — Մահմէտ Բ.ի նետուած գաղթականութեան եղանակը շատ տարբեր էր հին գաղթականութիւններէն. իր աշխարհակալութիւններն ի հիւսիս եւ յարեւելս Ասիայի ի հարկէ պէտք լեցուցին նոր ժողովուրդներով իր նոր մայրաքաղաքը. Պոնտոսի, Կապադովկիայ.ի, Սեր-*

քան տուն Հայերէն երեւելիները՝ չորրին նորաչուք պատրիարքութեան ու պետական վնաս վերաբերութեանց առացան, իբր անմիջապէս, եկ ու տեղական հին Հայերուն վրայ և անոնց նշանաւոր ջոջերուն հետ խել մը սաստ նախապատուութիւններ ու հեղինակութիւն մը՝ օրուես-տական առանձին ու եկեղեցապետական գործերու մէջ:

Եւ սա՛նք թուի թէ էին Կ. Պոլսոյ մեծատուննե-րուն ծանօթ սկիզբը, որ արագ արագ զօրացին եւնամ ազնուերէն ու արհեստաւոր ժողովուրդէն բարձր ու մե-ծապատիւ դիրք մը՝ թեւարկութեամբ մնալով օսման-եան աւագանիէն անանց: Պոլսոյ առումէն մինչև 1600[1] օսմանեան կայսրութիւնն հասած էր իր ամէնաբարձր պայծառութեան՝ այնպէս որ 17րդ դարին սկիզբն՝ էր նաև դաշնակցէան ընդարձակ բարդութեամբ և սկզբնակէան ամէն մարդկային հասարակի զինակեալ նուազումին, բայց Օսմ. պատմագրաց, որոյ անշուշտ ցոյն վայր Կ. Պոլս հաստատուած Հայերն ալ ունեցած ըլլալու են գերագոյն մեծութեան աստիճան մը և հարուստ բարեկարգութիւն մը: Ինչ օգուտ որ յիշատակարանք քարկոթողք և ար-ձանագիրք չեն մնացած մեզի այն ժամանակներէն, և չենք կրնար յիշել անուններն այդ ժամանակամիջոցի հայ մեծատուններուն:

վիայի ու Պեղոպոնեսի ներսերէն կաղէր, Դարամանցիներ, Իշի-րինցիներ եւ Յոյներ ձգուեցան նոր պետութեան կենդրոնները, եւ գրաւեալ տուներնին մայրաքաղաքներու մեծահարուստ բնակիչնե-րը փոխակեցան նորէն բազմացնելու Սուլթանին քաղաքը: Ասոնց-մէ միայն Դարամանցիք միւսլիման էին. միւսները՝ բոլորն ալ այլադէս քրիստոնեաներ՝ իրենց կրօնքը պահելու թոյլատրուեցան. Յ. Համմեր Գլ. ԺԶ:

(1) Ինչպէս դիտել կուտայ նաեւ Յոսէֆի որ Համմեր Օսման-եան Պատմութեան Ա. Հատորին մէջ (էջ 85) ակնարկելով Քարլո-վիցի հաշտութեան (Փրանս. թարգմանութիւն 1835ի):

Այս սկզբնական ամիրաներուն վրայ՝ եկան հետզհետէ աւելցան՝ Փոքր Ասիոյի միւս քաղաքներէն, մինչեւ իսկ Երեւանէն, Ագուլիսէն, Ջուղայէն, Դաւրէժէն (1) ու Սպահանէն, մեծ և հարուստ տուներ՝ երբեմն ալ հաստատելով իրենց ճիւղերէն փոքր Ասիոյի մէջ փոքր ամիրայութիւններ մը Զարպաճի, Մահտեսի եւլն անուններով: Եւ ասոնք ալ՝ վերջիններուն նման՝ յարելով օսմանեան մեծ անձնաւորութեանց ժամանակին բանուկ և անցուկ միջոցներովը՝ գլուխ կեցան պետական գործերու (ճարտարապետութեան, դրամկերհանութեան, ոսկերչութեան ու սեղանաւորութեան) Ալայ. Հօճայ Պաշի անուններով՝ իբր հաւատարիմներ տէրութեան, և՝ իբրեւ դարձեալ ազնուականներ՝ պետ կարգեցան ու կոթողեցան տանմայրին ալ գործերու՝ հօճայ (2) միւթէվէլլի կամ չէլէպի անուններով: Ամիրայութեան ծագումն այսպէս կը գտնենք Կ. Պոլսոյ և փոքր Ասիոյի ու Կիպրոսի մէջ:

Այս մեծատունները չուտ համակերպեցան՝ պետական ու մայրաքաղաքական չափանիշներով՝ տեղական սիրոյ տա-

(1) Պարսկաստանէն Թուրքիա՝ մանաւանդ Կ. Պոլիս՝ գաղթականութեանց սկիզբը կը բռնի Դաւրէժի առումէն (1585), զոր պատմած է համառօտի Սիմէոն Ապարանցին (վիպասանութիւն էջ 158—162 տպագրեալ ի Վաղարշապատ, ի տպարանի Ս. Կաթող. Էջմիածնի 1870): Այդ ժամանակին կը բռնի նաեւ մեր համեստ նախահայրերէն երկու եղբարց Պարսկաստանէն ի Թուրքիա գաղթումն՝ ինչպէս ինչ շատ հասու եղանք վերջերս Մարաշէն, Եւդոկիայէն, Պրուսայէն եւ Կիւրինէն մեր մականունով բերուած ազգայիններէն՝ շնորհիւ մանաւանդ Յովհ. էֆ. Դագաւեանի:

(2) Տեսած ենք ամիրաներու տրուած պետական փառաւոր պէրաթներ՝ դիւանական լայնոտ հակա՛յ գրչութեամբ մը, մեղրէ աւելի մեծութեամբ եւ մինչեւ 27ուկէս տողով: 1586ին՝ Կ. Պոլսոյ մէջ միւլթիզմանի հուազ էին բերով, գրուած է, ֆրանսերէններէն, նոյն իսկ հրեաներէն! անգամ (Տե՛ս 18րդ դարին վերջերը տպուած Abrégé de l'histoire Ottomane tome I pages 16—21):

բաղին թէ՛ բարքով թէ՛ լեզուով թէ՛ հանդերձանքով․ միայն կրօնական աւանդութեանց ու արեւելեան եկեղեցիին վարդապետութեանց պինդ փարելով՝ կըրցան պահել հին բայց տարտամ տիպ մը։ Իրենց լեզուն՝ որ իրենց բնավայրի գաւառաբարբառէն ու միջակ գրաբառէ մը խառնուած բան մըն էր՝ հետզհետէ թուրքախառն ձեւ մը առաւ, որով կերպացաւ ճախ այլ խառնուածոյ ռամկերէն մը տափակ, որուն մէկ նմոյշը պահուած է Հ․ Ղուկաս Ինճիճեան Մխիթարեանին դարապատումներուն մէջ․ ասկէ առնելով հատուած մը՝ յիշած ենք գործիս Զ․ գըլուխին վերջը։

*
* *

Ասոնցմէ պատմութիւնը կը յիշէ նախ՝ վերն ակնարկուած գաղթականներուն վրայ՝ 1600էն 1630 երեւելի խալիֆա Աստուածատուրն ի Կ․ Պոլիս Տիվրիկցի․ Պոչպոզճի կոչուած, որ սիրելին ու եղբօրը պէս էր ժամանակին օսմանեան վէզիրին․ հանճարեղ ու քաղցրաբարոյ անձ մը, որ բարեկամն էր նաեւ Բ․ Դրան մեծամեծներուն և Գրիգոր Պարոն—Տէր Երուսաղէմի բարեխօս Պատրիարքին, ու անոնց միջոցով գլուխ կը հանէր համայնքին կարեւոր գործեր․ ինք էր՝ որ մեծ դժուարութիւններէ ու ներքին հակառակութիւններէ ետք՝ յաջողեցաւ շինել․ յիշեալ պատրիարքին հետ, Պալաթի Ս․ Հրեշտակապետ եկեղեցին (1)։ Նոյն միջոցներն (1621 յունուարի 17ին) է պատահած նաեւ Վարդարան 'ի չար՝ տարեգիրներուն մէջ յանունուած՝ ամենասաստիկ ցուրտ և ձմեռ մը, որ սառեցուցած է Նեղուցը և՝ Դանուբի պէս՝ Ղալաթիայէն Սկիւտար քալելով գացեր եկեր են (2)։

(1) Ժամանակագրական պատմութիւն Երուսաղէմի տպ. յԵրուսաղէմ 1890, հաս. Ա. էջ 308):

(2) Դարապատում եւ Ամառանոց Բիւզանդեան (էջ 35) կը յիշեն զայս: Ասկէ իբր 70 տարի առաջ է պատահած նաեւ այն հեղեղանման փոթորկայոյզ տեղատարափը որ տեւեց 24 ժամ եւ շատ նշանաւոր շէնք ու կառոյց քերեց քերթեց: Տես Համմէր Պատմ. Օսմանեան:

Կա՛ր 1644-49ին Տիարպէքիրցի Մաղաքիա Չէլէպի մը, որ սիրելին էր մեծ Եպարքոս Մէլէք Ահմէտ փաշային ու կատարեց՝ այս հանգամանքով՝ յիշատակութեան արժանի գործեր, զոր և կը գովէ Երեմիա Չէլէպին (1):

Պատմութիւնը կը յիշէ նաև նախնական մեծատուն Իսքէնտէր Չէլէպին, որ բարեկամ ալ էր Կղեմէս Գալանոս բժիշկ կրօնաւոր մատենագիրին և հիւրընկալեց զայն ժամանակին կրօնական հակառակութեանց ատեն: Այս Իսքէնտէրի Չելեպիի մակդիրը կենթադրէ արդէն իր վրայ բաւական ֆրանկութիւն՝ ժամանակին բացորոշ ու բացորոշող բառով: Կը յիշուի նաև Գալաթի եկեղեցին շինողներուն և թևարկողներուն մէջ Խարբերդցի Աբրակէս (Աբրահակէս) վարդապետ մըն ալ (2) Գրիգոր Դարանաղցի վարդապետին հետ. որ ունի ընդարձակ ձեռագիր ժամանակագրութիւն մը 1536-1640ի տերքին անցքերուն վրայ ('ի թանգարանին Ս. Յակոբեանց Երուսաղէմի: 1628ին էր որ ձեռնարկուեցաւ շինել Գալաթի այս Ս. Հրեշտակապետ եկեղեցին՝ ջանքով ժամանակին երեւելիներուն. այդ թուականէն առաջ նոյն թաղի Հայերը կը յաճախէին Գարակէօմրիւկի Ս. Նիկողայոս եկեղեցին, որ առաջ վանք էր և կը կոչուէր Մանուէլի մենաստան(3): Թուի թէ այս միջոցներուն մզկիթի փոխուեցաւ ու կոչուեցաւ Քեմկեշի ճամիսի այդ համբաւաւոր եկեղեցին, որ կը գտնուի Եարմէ-Գաբուսի ու Թէքիր-Սարայի մէջև՝ Գարակէօմրիւկի մօտ: Կէսն Հայոց ու կէսը Քէֆէցի Հաժի-

(1) Ձեռագիր Երեմիա Չէլէպիի 'ի թանգարանին Ս. Յակոբեանց յԵրուսաղէմ:

(2) Երեմիա Չէլէպի առ Հ. Ղուկաս Ինճիճեանի, Աշխարհագրութիւն Եւրոպիո. Հատ. Ե. էջ 129—130, նաև ծանօթութեանը մէջ:

(3) **Մանկլկեան** (Չամչեան Պատմ. Հայոց Բ. էջ 441):

նաց ու Դոմինիկեան կրօնաւորաց կը պատկանէր. չուրջի թաղն ալ՝ բնակութիւն նորեկ Հայերու՝ կը կոչուէր Խաղախացւոց թաղ. զոր Գրիգոր Պարոն-Տէր Երուսաղէմի պատրիարքը շէնցուց շատ տուներով և շինուածներով, և հոն հնուց տեղաւորած Լատիններէն ուրիշ շատուց Հայերուն բնակարանները, որով թաղն ու եկեղեցին մեծ մասով Հայոցն եղան. բայց 2-300 դրչ.ի պարգևի մը զանցառութեանն համար՝ եկեղեցին դրաւեցաւ և փոխուեցաւ մզկիթի (1635-40)։ Այս միջոցներուն կը յիշուին նաև Ոսկան-Պօղոսանի պէյերուն կարգն՝ երկու հայազգի պէյեր ալ՝ մին Գասպար, որ նստաւ Պօղոսանի մէջ և իր կինն էր որ շինեց Եռաշի մէջ հայոց Ս. Աստուածածին եկեղեցին, միւսն Սամն, այսինքն Ահարոն, որ այս հռոմէացաւ և շինեց մայրաքաղաքէն կէս ժամ հեռու Յունաց այն վանքն՝ որ կը կոչուի իր անունով Սառն-վոսա:

Զարմանալի երևոյթ՝ Հայերն հին ատեններն մինչև Չինաստանի մէջ ունեցած են եկեղեցի. Թաթարներու տիրապետութեան ժամանակ 14րդ դարուն՝ Դանթոն ծովեզերեայ քաղաքին մէջ մեծատուն հայ տիկին մը շինել տուաւ մեծ ու գեղեցիկ եկեղեցի մը, զոր Բէրինի Յովհաննէս արքեպիսկոպոս Ֆրանչիսկեանը՝ վերայիշեալ տիկնոջ կամքովն՝ ըրաւ եպիսկոպոսական եկեղեցի, ուր կը պաշտօնավարէին Կղեմէս Ե. Պապին դրկած երեք եպիսկոպոսներն յաջորդաբար։ Բայց 1369էն ետքը Չիներն անկախ հրատարակուելով՝ նորէն վռնդեցին իրենց երկրէն բոլոր քրիստոնեաներն ու ամայացուցին եկեղեցիները։ Մետասաներորդ դարէն՝ կը յիշուի մեծ հայ գաղթականութիւն մին ալ յԻտալիա, որմէ ըլլալ կը թուի Ուտինէ քաղաքին մէջ ցարդ նշմարուած կանութիւնը։ Դարձեալ նոյն գաղթականութենէն կը թուի Բիզա քաղաքին մէջ

մեծանուն Միրանդոլեաց ծագումը, որ եղաւ հայրը Կոր-դուսեանց մեծատոհմին հիմնադիրին ։ Ռաւէննայի մօտ Թր-լասէի մէկ թաղը դարերէ հետէ կը կոչուի Առմեն, նոյնպէս Փլորենտիայի մէջ Էմպոլի անունով հայ կրօնա-ւորներու յիշատակը կուգայ շատ հինէն ։

Հոլանտայի մէջ ալ Հայք նշմարուած եղած են՝ 16րդ դարէն սկսեալ՝ թէ՛ վաճառականութեան թէ՛ խղճա-կան ու կրօնական ազատութեան կողմէն, ինչպէս կը նշանակէ միջնադարեան պատմութեանց մէջ Կիպրի պատ-մագիրն ալ ։

1620էն 1640 կը յիշուին՝ Պալաթի Ս. Հրեշտակա-պետ եկեղեցին շինողներու կարգին՝ ակընցի խօճա Վահ-րամ, ախրբիկցի խօճա Վահրամ, Մահտեսի Կարապետ, Մահտեսի Աղազար, ակընցի Մահտեսի Քուփալ, խօճա պարոն Լէոն, խօճա Բանդուխ, խօճա Կիրակոս, խօճա Նահապետ, խօճա Պաղտասար և այլք, որ Ոսկեղջիւրի Հայերուն նախնի երեւելիները կը թուին ։

Կը յիշուի նաեւ նշանաւոր վանեցի Ռուհիճան հօճան (մեծ Եպարքոսին Քիւրքճիպաշին)՝ իբրեւ պետ կրօնա-պա-տրիարքական կուսակցութեան մը ու գործակից պատրի-արքական աթոռակալներու. նոյնպէս Հօճա Աստուածատուր ու Չիրաք Գերաքեան (1) ։ Այդ աշխարհական մեծերէն մէկ քանին՝ 1640ին Դաւիթի պատրիարքութեան առեն՝ յաջողեցան նաեւ 10—15 տարիի չափ Պատրիարքական աթոռն իրենք՝ կառավարել ժողովուրդը, առանց եկե-ղեցականի առանց կրօնական նախապետութեան (2) ։

(1) Հաւանաբար ասոնց սերունդն ըլլալու է յաղգայեցի Պայծառ իշխան ազա Յովհաննէս Գերաքեան բնակեալ ՚ի Ճնգիկս, ՚ի Սարայ, որոյ ծախսովը տպուած է երկու մեծա-հատոր Պատմութիւն Թէկլէմանին, թարգմանութիւն Մարգար Զաքարիայի Խօջենց ։

(2) Չամչեան Գ. էջ 627—629 ։

Թուրքիայէն դուրս ալ 14րդ դարէն մինչեւ 18րդը՝ Չինաստանէն զատ ամէն տեղ Հայերը ծաղկած ու մեծացած են վաճառականութեամբ։ Արդէն իրենց բնավայրին մէջ ճարտար ու ճարպիկ առեւտրական՝ իրենց ցրուելով ցանուելով վիճակին մէջ նոյն Հայք՝ ամէնուրեք եւ ամէն վաճառատեղի սփռուած են Պարսկաստան, Հնդկաստան, Յունաստան, Ռուսաստան, Իտալիա, Ֆրանսա, Գերմանիա, Հոլանտա ու Լեհաստան. ասոնցմէ ոմանք պահած են ցարդ իրենց լեզուն եւ կրօնը, իսկ այլք խառնուած են տեղային ազգերու հետ՝ վաճառականութեան բնակից այլանմանութեան հետեւանքով։

Եւրոպացի մատենագիր մը՝ Մարգինիյէ՝ կը գրէր իր երկու հարիւր տարի առաջ. «Հայերը գրեթէ բոլորովին տուած են ինքզինքնին վաճառականութեան, որուն ընդունա՛կ ալ են՝ ոմանք արուեստաւորներ են ոչ միայն արեւելքի վաճառականութեան, այլ նաեւ ձեռնտուներ վաճառականութեան Եւրոպայի մեծամեծ քաղաքներուն։ Կը տեսնենք ամէն ատեն անոնց գալը Պարսկաստանի խորերէն մինչեւ Լիվոռնոյ. դեռ շատ չիներ որ ոմանք հաստատուեցան Մարսիլիա՛ ալ, կը գտնուին նաեւ Հոլանտա, Անգղիա, Վենետիկ, կը ճանապարհորդեն 'ի Մողոլ, 'ի Սիամ, 'ի Ճավա, 'ի Փիլիպեան կղզիս եւ բոլոր աշխարհներին արեւելքի՝ բաց 'ի Չինաց» (1)։ Պիչինեկ ալ նո՛յնը կրկնելով՝ կըսէ «իսկ Ասիայի մէջ չիկայ նաւահանգիստ մը կամ վաճառական քաղաք մը, ուր չգտնուին բազմաթիւ վաճառական փարթամ Հայեր»։ Մօրէր անուն մատենագիր մին ալ կը գրէ «Հայերուն գլխաւոր գործն է վաճառականութիւն. Կարտինալ Ռիշլէօ մտադիր էր բնակեցունել Հայերն 'ի Ֆրանսա՝ զարգացունելու համար

(1) Առ Հ. Ղուկաս Ինճիճեանի **Աշխարհ. Ասիա:**

վաճառականութիւնը, և ա՛յս միջոցով էր որ տպագրել տուաւ քանի մը գիրք»: Ոսկեան եւս(1) կ'անուանէ Հայերը. «Տէր էամ վարժապետ Ասիոյ ներքին վաճառականութեան. աշխարհիս և ներհուն ազգ մը, որ գիտէ արեւելքի բովանդակ քաղքն ու սովորութիւնները. դրամատէր միանգամայն վերջին աստիճանի ժուժկալ և խոնարհ. դաշնակից Պարսկաց և Հնդկաց. մանրազնին քննող և ընդարձակամիտ... Եւրոպայի արքունիք խնամատարութեամբ խորհեցան բերել հաստատել մը յԱժտէրխան այս հարուստ հնարագէտ ու աշխատասէր ժողովուրդէն. Հայերո՛ւն ձեռքով կ'անցնին միշտ ասիական վաճառքները ի Ռուսիա»(2). Վոլթէր ալ կը յիշէ ի դէպս Հայերն՝ իր Ձեռնարկ ազգաց բարուց եւ ոգւոյն վրայ գործին մէջ, և Ռուսօ՝ իր վերջին հիւանդոտ ամերուն՝ Եւրոպայի վաճառական Հայոց տարազովը կը հագուէր: Պենկալայի հարուստ աշխարհին վաճառականութիւնը ծաղկեցուցին Հայերը, որոնցմէ ապա առաւ գրաւեց Անգղիացին: Մեծն Պետրոս Ա. Հայերուն հետ ըրաւ վաճառական շատ դաշնադրութիւններ ու բերաւ բնակեցուց Աժտէրխանի հայ գաղթականութիւն մը: Այլ աւա՛ղ որ շատ քիչ բան մնաց այդ ժամանակներուն՝ հարկերու ծանրութեան, ներքին կռիւներու, քաղաքականութեանց ու անմիաբանութեանց պատճառով. ուստի գործիս ընթացքին՝ քանի մը արտասահմանի մեծատուններէն զատ՝ չպիտի կրնանք յիշել այս փառաւոր վկայութեանց համակրելի բազմաթիւ Հայ մեծատուններու անունները:

(1) Նոյն անդ. վասն Ոսկեանի 'ի պատմութեան վաճառականութեան Եւրոպեանց յերկուս Հնդկաստանս հատ. Բ. գիրք Է. գլ. 39:
(2) Առ Յ. Ղուկաս Խանճեանի, Աշխարհ. Ասիա:

Ի Թուրքիա՝ 1650—55ին կը փայլի Պրուսացի Անտոն Չէլէպին բազմահարուստ, որ տուաւ շատ դրամ Փիլիպպոս կաթողիկոսին՝ Էջմիածնի մեծ զանգակատունին շինութեան համար։ 1652—55ին՝ Կ. Պոլիսի բնիկ Հայերուն մէջ սկսած էր խլրտում և եկեղեցական եկամուտներուն ինքնահրաման տնտեսելու յաւակնութիւն մը, որով արևելցիները, այսինքն Անատոլուէն եկողները, կը նկատուէին արհամարհութեամբ մը իբրև «գաւհիկ» ըստ Առաքել Դաւրիժեցւոյ։ Արևելցիներն ալ միշտ կը բողոքէին, որով երկուստեք անպակաս կըլլար կռիւն հերձուածի և կը բանար դուռ մեծ ծախքերու։ Փիլիպպոս կաթողիկոս շատ աշխատեցաւ վերջ տալ այս վէճերուն՝ բայց իւր անաչառ ու խաղաղասէր բնաւորութեամբ։

Այս միջոցին կըսկսին աւելնալով փայլիլ Հայերն Իլովի մէջ ալ, ուր վաղուց հաստատուած՝ հետզհետէ աճելով զարգանալով՝ ունեցան մեծ անձնաւորութիւններ կարգ մը առանձնաշնորհումներով։ Նախ սկսան գաղթել հոն 1062 թուին, ինչպէս կերևի Դեմետրիոս Ջուղի որդւոյն Թէոդորոսի հրովարտակէն, որու հին թարգմանութիւնն է այսպէս. — «Ահա մեծի դքսի Թէոդորի որդւոյ Դեմետրեայ առ Նախիջևանցի Հայս, որք աստ կամին գալ։ Եկեսցեն յօգնութիւն ինձ։ Եւ ես տաց ձեզ ազատութիւն ընդ ամս երիս։ Եւ յորժամ լինիցիք առ իս, ուր և հաճեսցի ոք՝ երթիցէ ազատօրէն»։ Այս հրովարտակը կը հաստատէ նաև Վլատիսլաւոս Դ. Թագաւորը Լեհաց իւր ընդարձակ հրովարտակին մէջ, զոր տուաւ Իլովցի Հայերուն 1641ին.(1) այնուհետև դարէ դար ու-

(1) 14րդ դարէն մինչեւ այս միջոցները՝ ըստ Իլովցոց աւանդութեան՝ Իլովի եւ Կամենիցի Հայերուն մէջ հայկական լեզուն խափանուած էր գրեթէ եւ սովորաբար կը վարէին Թաթարաց

դումար փոխատուութիւն ըրաւ արքային, որով հանեց մեծ անուն. վասնզի տէրութեան մէջ միայն իր քով գտնուեցաւ այդչափ դրամ։ 1363ին Հայք շինեցին Իլովի մէջ նշանաւոր եկեղեցի մը, որուն գլխաւոր բարերարներն եղան Ցակոբ՝ որդի Ծանճաշի կաֆացի և Փանոս՝ որդի Ալբանի ղաղայցին։ Իլովէ՛ն է նաև լեզուագէտ Ստեփանոս վարդապետ, որ թարգմանած է գրաբառի՝ Յովսեպոսի հրէական պատերազմին պատմութիւնը։ 1652ին կը յիշուի Թաշկոյ անուն Իլովացի հայ դատաւոր մըն ալ, որ կաթողիկոսական խնդիրի մը համար եկաւ Կ. Պոլիս Իլովի Հայերուն կողմէն և ազդեցութեամբը լուծեց զայն. ասոր ինք ալ իր ժամանակի ամիրապետներէն էր։ 1618ին էր որ առաջին անգամ Իլովի մէջ տպագրուեցաւ Սաղմոսարան մը։

1655ին՝ նորէն կարգ մը մեծատուններ ձեռք ձգեցին պատրիարքական տեղապահութիւնն ՚ի Կ. Պոլիս։ Ասոնցմէ մէկ քանին կրնէին թարգմանչութիւնն եւրոպական դեսպաններու. տեղեակ էին եւրոպական պատմութեանց բարքերու և սովորութեանց։ Քանի մը տարիէն քսան և չորսի հասած կը գտնենք թիւն այս տեղակալներուն,

«ֆէյֆանըյարը յնըեն հազարէկանյարնըեն. ամէն. խօյարմէն սիզան
«մէն հազրխըը յ արզուենիսիզ Մհիֆայէյ ֆանանայ ֆի մէնի պիր
«թէնկրի պօշասըն հազրխըյարինայ. այդ մախալյայ, սա պիր հայր
«մեր պէ. այ ունուղ մայկայսիզ. ֆի թէնկրի սիզնի ըւնըկայ: Եա-
«զըլսըյ իյով շահարինայ. գօյկայսնա սուրբ Աստուածածինին.
«կընդոյունինայ Տէր Ստեփանոսունեն ախրաշընինայ. Տէր Գրիգոր
«արհիախրաշնին. վանըյ երեսփոխանինայ պր. Օհան, Աղապէկ
«օղլու սայ պր. Գրիգոր բուն Աւհանն օղլունուն. Կ: Թվ. ռ. ծԱ:

Բայց հետզհետէ այս բարբարախառն լեզուն ալ կորսուելով՝ սկսան խօսիլ մեծ մասամբ Լեհաց բարբառով, որոնցմէ կը զանազանին միայն անունով, ծիսով, դէմքի գծագրութեամբ եւ կարգ մը հայական սովորութիւններով։

որոնց մէկ քանիին անուններն են Խօճայ Տաւլու, Խանճի Սէֆէր, Էքմէքճի Պէկլէր, Քէրէստէճի Գրիգոր, Սիմէոն Երէց, Քիւրքճի օղլու Երէց, պօտուռ Սիմէոն, Մկրտիչ Մուրատ, Յարութիւն Պալի, Փէրհատ օղլու Աւալին։

Եւ ասոնց նիւթերին խորհրդատուութեամբ ձեռնատուն էր վերջացեալ Վանքի Ուռհիճանը։ Ասոնք էին նաև Թոմա Պատրիարքին հովանաւորողներն ու անոր մահուան պատճառները, ասոնցմէ՝ դարձեալ ծայր առաւ Եղիազարեանց ու Թլթըլեանց հռչակաւոր վէճը պատրիարքական, որ մեծ դեր ունեցաւ՝ իր արդիւնաւէտներովը՝ Եղիազար պատրիարքին այնթացքի։ 1666ին կը յիշուին Զուղայեցի Խանենց պարոն Սանիմանոս, Քթուէչենց Մահտեսի Յեսադար և որդին պարոն Թէոդորոս, պարոն Պետրոս՝ Պայապասարհանց, որ Ոսկան Վարդապետի օգնած են բաւական դրամով՝ առաջին անգամ տպագրելու համար Աստուածաշունչն յԱմստերդամ։ (Յիշատակարան Ոսկանի Աստուածաշունչին, հատոր Բ. էջք 833-834)։

Նշանաւոր ազնուականներ ու մեծատուններ կան նաև 'ի փողուց Մահտեսիաթանի Պաշպայով հայաքաղաքին մէջ՝ մեծ մասով վաճառական, որոնց անունք ամէն կայարէն պաշտօնական ազնուականութիւն զանազան մեծ արտօնութիւններով և կոչուեցան ազատայնեաց յորդւոց որդի։ Նոյնպէս կեսար Հայաքաղաքին մէջ, որ Հայք չինեցին 1703ին, և 1800ին իրենց թիւր կը հասնէր 3600ի։

*
* *

1600 թուէն կըսկսին նաև հին և հռչակաւոր Տիւզեանց ծագումը՝ Տիգրիկէն, ուրկէ նոյն թուին գաղթած է Կ. Պոլիս Յարութիւն անուն Հայ Համէականը(1), և՝ շնորհիւ իր ճարտար ամկերշութեան՝ յարաբերութեան մանե-

(1) Ազգաբանութիւն գաւմին Տիւզեանց 'ի Հ. Գարրիէլ Մենեվիշեանէ, Վիեննա, էջ 6—7:

լով կայսերական պալատին հետ՝ անուանուած է հոն սէրմէնի ոսկերիչ և բացած է իր անունովը Կայսերական գանձատունին քովն ոսկերչութեան խանութ մը, որ մինչեւ 19րդ դարուն սկիզբը կանգուն էր Տիւզեան անունով։ Տիւզեանք 18րդ դարէն սկսեալ բնակած են Գուրու չէշմէ աւանը։ Յարութիւնի մահէն ետքն՝ արքունի ոսկերչապետութիւնը մնաց իր որդին Մահտեսի Սարգիսի, որուն բարձրահասակ կաչմուռն և ուղղորդ կազմուածքն (1) առաջին անգամ տեսնելով Վեհ. Սուլթան Ահմէտ Գ. արքունի պալատին մէջ «աս Տիւզը կանչեցէ՛ք ինծի» կը հրամայէ, որմէ կը սկսի այլ տոհմին Տիւզ անունը։ Տիւզ Սարգիսէն կը ծնին Տիւզ Յովհաննէս ու Տէօվլէթ աղաները, և Տիւզ Յովհաննէսի որդին էր Հոճայ Միքայէլ Չէլէպին(2) (Ծն. 1724 վխճն. 1785)՝ փառաւորագոյն դարդը Տիւզեան գերդաստանին, որ հմուտ էր միանգէս նկարչութեան ոսկերչութեան ու տարրագիտութեան, և նշանակ այլ եղաւ ժամանակակից նախանձներու իր բարձր արժանիքովը․ իր միակ խօսքովն՝ 1741ին 53 հոգի ազատեցան, և 1769ի պատերազմին այլ՝ ազատեց Յոյները իմաստուն միջամտութեամբ մը։ Այս Հոճայ Միքայէլի որդին է Յովհաննէս Չէլէպին (Ծն. 1749. վխճն. 1812), որ շատ ուսումնասէր և ուսումնական այլ էր․ ինք էր որ հրատարակել տուաւ Դիւանի Բիւզանդեանը, ու շատ գիրք հրապարակ եկան իր ծախքովը․ սոր Իսկուհի անուն աղջիկն էր, որ անուանեցաւ «հայկարան» Հ. Արսէն Կ. Բագրատունիէն՝ իր հայերէնագիտութեան հա-

(1) Նոյն անդ էջ 9—10:

(2) **Չէլէպի** մակդիրն թէ՛ իբրեւ նշան ազնուականութեան թէ՛ մանաւանդ իբրեւ նշան աստուածպաշտութեան եւ գիտութեան՝ կը նշանակէ աստուածային, ու ծագած է հին թուրքերէն **Չալապ** բառէն որ ըսել է Աստուած:

մար։ Յովհաննէս Չէլէպին թողուց տասներկու զաւակ, որոնց մէջ էին Սարգիս, Գրիգոր, Յակոբ ու Միքայէլ Չէլէպիները և անոնց պատմութիւնն համառօտիւ արձանագրած են Ա. Պէրպէրեան(1) ու Հ. Գաբրիէլ Մէնէվիշեան(2)։ Տիւզեան ընտանիքն ամէնէն հին ու նշանաւոր այն ընտանիքներէն է Կ. Պոլսոյ, որ թիւով նուազ ու դիրքով և տաղանդով առատ՝ տուին բացառիկ փայլ մը բիւզանդեան հարստութեան։

Դարձեալ 17րդ դարին կէսերը կը յիշուի Սէմէրճի Տէօէ կոչուած Կարսեցի Մուրատ Հօճայ մը, որ կը վայելէր Վեհ. Սուլթան Մեհէմէտ Դ.ի վստահութիւնն և ազդեցիկ անձ մըն էր Տէրութեան մէջ։ Սա՛ իսկ կրցաւ միջնորդել մեծ յաջողութեամբ պետութեան և տոհմայիններուն։ Ձեռագիր Մաշտոցի մը յիշատակարանին մէջ 1660 ին կը յիշուի սոսկալի հրդեհ մը 'ի Կ. Պոլիս, որ սկսելով Այազմայ Բարուէն՝ քաղաքին մինչև ներսերը, մինչև Սամաթիա՝ արևելքէն արևմուտք, ծովէ 'ի ծով, տաշորեց լափեց աւերեց ամէն բան, շատ մարդիկ այրեցան կիզեցան երկու սուէ, ինչպէս շատ եկեղեցիներ ու մզկիթներ հրոյ ճարակ եղան։ Յիշատակարանին գրիչը, որ կը թուի Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանը, կը նմանցունէ այս հրդեհի օրը՝ կատարածի սարսափելի օրուան, (Տե՛ս Երևակ 1859, հատ. Ե. էջ 139 նաև Զամչեան հատ. Գ.)։

Տասն և եօթներորդ դարի մեծերուն մէջ է նաև ներհուն Երէմիա Չէլեպի Քէօմիւրճեան՝ որդի Քէօմիւրճեան՝ Տէր Մարտիրոսի, Բարեկամն Այնթապցի Եղիազար Կաթողիկոսին, նօտար գրագէտ ու մատենագիր մեծատուն՝

(1) Պատմութիւն ժամանակաց 1772—1860։

(2) Ազգաբանութիւն զարմին Տիւզեանց, (էջ 25—40)։

երէց եղբայրը Տէր Կոմիտասի (1), որ և նոյն Սամաթիայի Ս. Գէորգ Եկեղեցիին աւագ սարկաւագն էր, և վախճանեցաւ իմաստուն փառքով 60 տարեկան 1695 ին։ Գրած է հինգ գիրք պատմութիւն Օսմանեան Թագաւորութեան ընդարձակ, գիրք մը՝ անոր համառօտութիւնը, միւս գիրք մը ոտանաւոր՝ Յակոբ Կաթողիկոսի (2) խնդրելովը, Աղեքսանդրի պատմութիւնը՝ նոյնպէս ոտանաւոր. Թարգմանած է Թուրքերէնի՝ քաղուածներ Եարենացիէն. գրած է՝ գերման դեսպանին խնդրելովը՝ Պարսկական Հնդկաչին ու Փոքր Ասիայի աշխարհագրութիւններ. գիրք մը ընդդէմ Հրէից. քարոզներ, ճառեր՝ հայերէն տաճկերէն, պատմութիւն Երուսաղէմի. Թարգմանած է Թուրքական լեզուի՝ Աւետարանն ու ինչ ինչ կտորներ հին Կտակարանէն, Թարգմանած է յունական ու լատինական լեզուներէ կարգ մը գիրքեր, տպագրել տուած է Յիսուս որդին գիրք միացորդն իր հսկողութեամբն՝ երկու հատոր, նաև Տնօրինական տեղիքը, գրած է՝ ժամանակակից խնդիրներուն վրայ՝ ընդարձակ նամակներ առ պատրիարքս և կաթողիկոսունս, նաև յորդորականներ՝ խանդաղատելի ոճով և ոգիով մը, տեղեկագիրներ, յիշատակարաններ վանքերու վարչութեանց և պատմութեանց վրայ, որոնց մէկ մասը կը գտնուի Երուսաղէմի ձեռագրաց Թանգարանը։

Ճանապարհորդած է Փոքր-Ասիայի շատ քաղաքներն ու գիւղերն՝ այն դժուարահաղորդ դարերուն, ինչպէս

(1) Զամչեան, հատ. Գ: Եւ վարք Տ. Կոմիտասի, (էջ 9—10):

(2) Որ էջմիածինէն Կ. Պոլիս եկած էր յանդիմանելու եւ պատժելու համար Կ. Պոլսոյ Պատրիարքին Եղիազարի մէկ անհոգութիւնը՝ բոլորովին ծպտեալ գեղջուկի տարազով մը, եւ վախճանեցաւ հոն ու թաղուեցաւ Բերայի հին գերեզմանատունը՝ սրբազանեայ տապանի մը մէջ:

նաև Պէրութ, Բերիա, Անտիոք Երուսաղէմ, Արմաշ(1) ևլն: Գրած է նաև ստուգութեամբ իր ժամանակին պատմութիւնը, որմէ թուի Զամչեան առած է շատ բան. իր անունով կը յիշուի Կ. Պոլսոյ առաջին տպագրութիւնը (տե՛ս Հայ մատենագրութեան Հ. Գարեգին Զարբհանալեանի (էջ ԺԸ): Ունի նաև Հայ լեզուի բառարան մը՝ որ ամէնէն հինն է վերջին դարերու բառարանաց: Մենք շատ փնտռած ու հարցուցած ենք իր այս ձեռագիր գործերն ու չենք գտած, նոյն իսկ բազմահմուտ ու բազմաշխատեան անձերու քով. կը թուի շատոնց ինկած են արժանաւոր Վենետիկի մատենադարանն և հաւաքուած մատենագիր վարդապետներէն՝ եթէ չեն ինկած կամ կորսուա՞ծ Կ. Պոլսոյ մէջ անարժան չարաշահողներու և բռնագրողներու ձեռքը: Երեմիա Զէլէպիի գրաբարն ունի արծաթի ձուլուած մը խաթուն՝ տարբեր յոյժ ժամանակին լատինախառն անոճ ոճէն, որ ճարակելու վրայ էր Ոսկան Երևանցի վարդապետին Ամստերդամի տպագրական հրատարակութիւններովը. իր տպագրեալ քանի մը գործերէն կը համարձակինք ըսել այս դատաստանը: Ինք՝ իմաստուն Զէլէպին՝ ցաւսիրտ անձնաւորութիւն մըն ալ է եղեր, ու իր գրական յառաջդիմութիւնները՝ դարու չափ կանխումն են Պոլսոյ ու Վենետիկի գրական զարգացումներուն 17րդ դարին մէջ. իր ծագումն է Ակնէն, անշա՛ւշտ գիւղերէն, 1600 թուին(2): Յիշատակելի է նաև 17րդ դարին մէջ Ագուլեցի Խօճայ Գուլնազարի որդի Խօճայ Նահապետ, որ 1687ին Վենետիկի մէջ իր ծախքով ձուլել տուած տառերով տպագրած է աշխար-

(1) Որու եւ վանքին վրայ գրած է չափեակ ընձեռուած մը՝ իբրեւ Նօտար Մարտիրոս Պարրիւրին. (տե՛ս Ցանկ. Տէրոյենցի հին փոքր Երևակներուն մէջ:)

(2) Վարք Տէր Կամիսասի, (էջ 9):

հարուստ Սաղմոսի մեկնութիւն մը ընդարձակ՝ աշխատասիրութեամբ Կ. Պոլսեցի Յովհաննէս լեզուագէտ վարդապետի մը (¹)։ Տասն և եօթներորդ դարին նշանաւոր է նաև Ամստէրտամի մէջ հայ գաղթականութիւնը, որուն մէջ կային մէկէ աւելի մեծատուն վաճառականներ՝ մեծ մասով Պարսկահայերէն։ Հոն եղած է նաև՝ ուրիշ կարգ մը Հայ տպագրութեանց հետ՝ Երեւանցի Ոսկան վարդապետի ջանքով Աստուածաշունչի առաջին տպագրութիւն մը 1666ին։ Կար հոն աւելի հին թուականէ մը մնացած եկեղեցի մը, զոր 1874ին Հոլանտայի Ռուսական հիւպատոսը վաճառեց՝ հրամանով Տ. Տ. Գէորգ Ս. Կաթողիկոսին՝ 12000 Հոլանտական ֆիորինի, որ՝ եկեղեցւոյ 15000 ֆիորինի պատրաստ դրամին ու քանի մը պատկերներու զգեստներու և գիրքերու հետ՝ ղրկուեցաւ Էջմիածին։ Իսկ հայ գաղթականութիւնն արդէն 40-50 տարիէ հետէ անհետացած էր Ամստերտամէն։

---

(¹) Պարզաբանութիւն Սաղմոսաց Դաւթի (տպեալ 1687)։

## Գ.

Վասփորի ծովն ու բանաստեղծական աշխարհէն անցնինք պահ մը հիւսիսի ու արեւելքի խորխոտ ու հին նահանգները, որ լեռնային անմատչելի բարձրութեանց մէջ վաղուց բռնուած էին հին բարձրութիւններն հայ իշխանութիւններու եւ Մեծատուններու ։ Ասոնց մէջ նշանաւոր են մանաւանդ Ղարաբաղն՝ իր Մելիքներովն ու Պարսկաստան՝ իր խաներով ։

Այս մելիքներն՝ յաջորդ հին ազնուական տանուտէրներու եւ Մեծատուններու՝ գլխաւորապէս իբր ասպետ նշանաւոր եղան իրենց ձիերով, գիւղերով, կալուածներով եւ ձիաւորներով(3) ։

Նոյնպէս խաներն ալ Պարսկաստանի մէջ ու Պարսկաստանէն գաղթեալ գաւառներու մէջ՝ նշանաւոր եղան իրենց արքունական ազդեցութեամբն հարստութեամբ եւ ուսումնականութեամբ ։

Մելիքներու իշխանութիւնք մեծութիւնն եւ տիտղոսները ժառանգական էին, անդրանիկ որդի 'ի հօրէ ու քաղաքային լայն քան Թուրքաց Ամիրաներունը. կցորդուած իրարու աշխարհային ու ժամանակաւոր չափերով եւ յարաբերութիւններովը ։

Նոյնպէս խաներունը որ աւելի դիւանագիտական ու խորհրդականական էին Պարսկաստանի մէջ ։ Աբաս Միրզայի ատեն ու իրմէն առաջ Պարսկաստանի Հայերը՝ բացի վաճառական արհեստական ու երկրագործական պաշտօն-

(1) Տե՛ս մանաւանդ **Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի պատմութիւնը** տպեալ 'ի Մոսկուա *(1861)* եւ **Խամսայի Մելիքութիւնները** *1600—1827*, տպեալ 'ի *Թիֆլիս*, *1882ին*:

ներէ՝ կը վարէին նաև ամբողջ նահանգներու փոխարքայութեան պաշտօն, կը խառնուէին քաղաքագիտական գործերու, կը կառավարէին պետական գանձը, ունէին մինչև անգամ ներքինիի ու ներքինապետի պաշտօններ՝ Շահերու կանանոցներուն մէջ(1)։

Ղարաբաղի յոխորտ լեռնային ու յորդայիշատակ հողերուն վրայ և Պարսկաստանի երկրագործական նոյնպէս լեռնային և հովուական նահանգներուն և վաղեմի լայնածիր քաղաքակրթութեանց որոնց քաղաքներուն մէջ՝ մելիքներէն ու խաներէն շատեր՝ արդարև ցուցած են ռազմական լեռնորդեաց արիութիւններ, նահապետական առաքինութիւններ ու հարստութիւններ և նուրբ խաղաղէտ քաղաքայնութիւն մը, որ Հայէն զատ ոչ ոք Արեւելքի մէջ կրցած է տանիլ և իւրացնել այնքան դիւրութեամբ։ Ճկուն ոգի ու բարք, լեզուագիտական ու երգագիտական նկարչական յարմարութիւններ՝ արժանի ըրած են զանոնք անհաւատալի բախտաւորութեանց, որոնց չորրորդ մասն հազիւ արձանագրուած է պատմութեան։

Հայ մեծկակ վիպասան մը՝ տեսած է Ղարաբաղի Մարտակերտ անուն գիւղն հարիւրամեայ ծերուկ հայ մը, Միրզա-Աղի անուն, հմուտ՝ հայերէնի, պարսկերէնի, արաբերէնի և թուրք գրականութեանց, որ քանի մը խաներու թարգմանչութեան պաշտօն կատարելէ յետոյ՝ սպասարկած է նաև Փերմանցի մինիստրներու։ Կենդանի պատմագրութիւն մը իր բոլորի դատաններուն մեծատուն հայերուն, որոնց կենսագրութիւնը պատմած է յիշեալ վիպասանին՝ գլխաւոր աղբիւրը մելիքներու և խաներու վրայ մեր այս ուսման յիշատակութեանց։

*
* *

(1) Խամսայի Մելիքութիւնները (էջ 347)։

*Սիւնեաց հին մելիքներէն գլխաւորները կրնանք յիշել հետ ժամանակագրական կարգով մը, առանց առատացած պարագաներով՝ ըստ մերձաւորութեան արդի ժամանակներուն։*

*Եւ նախ կը յիշուի առաջին դասակարգութեան մէջ՝ Մելիք Բէգլարեան (Պէյլէրեան). իր եղբայրն է Մելիք Թամրազը։ Ապա՝ Մելիք Իսրայէլեանները. Խաչէն Հասան Ջալալեանները, որոնցմէ 16 դարին նշանաւոր եղան՝ Երեմիա Կաթողիկոս (մեռն. 1700), Վէլիջանբէկ, որոյ որդին Մուչքի-բէկ Երեմիայէն եաքը կաթողիկոս ըլլալով՝ ունեցաւ կարեւոր բանակցութիւններ Ռուսաց մեծանորոգիչ ինքնակալ Մեծն Պետրոսի հետ։ Մելիք Շահնազարներ. որոնցմէ Մելիք Յուսէ, Մելիք Միրզաբէկ, Մելիք Աւանեաններ, Մելիք Ալլահվէրդի և այլք։ Ասոնցմէ զատ կը յիշուի՝ նոյն ժամանակներէն քիչ մը եաք՝ 18րդ դարի սկիզբները՝ հարուստն Խարխանեաշի Մելիք Աբով, որ աշխատեցաւ փոխադրել Ախալցխայէն իր Վրաստանի կալուածները Ղարաբաղ հայ բնակիչք։ Սա ինք ունէր քաջ ձիաւորներու խումբեր։ Մելիք Աբովի որդիներն են՝ Թամամ-բէկ, Սաֆի-բէկ և Մանաս-բէկ, որոնց մէջ նշանաւոր եղաւ քաջն Թամամ-բէկը, նոյն և բանաստեղծ, բայց որոյ երգեր ալ իր վախճանին եղերական*(1)*։ Նշանաւոր էր նաև Բեգլարբէկի մէջ մեծանուն և բարեկէր ալոյ Միհրան Լազարեանի՝ շատ անգամ խօսակից ու խորհրդակից Ռուսաց կայսրին։*

*Մելիք-Ջումշուդ, որ իր արիական ծառայութեանց համար ստացաւ աստիճան Պոլկովնիկի։*

*Մելիք-Ֆրէյդուն, որ ինկաւ եղբօր ձեռքով*(2)*.*

(1) **Խամսայի Մելիքութիւնները** *(էջ 250)։*

(2) *Անդ (էջ 288)։*

տակէ ետքը Վրաստանի մէջ Մէլիքներու նշանակութիւնը կըսկսի իյնալ և կը տեղափոխի Ղարաբաղ։

Ղարաբաղի Մէլիքներուն մէջ առաջնակարգ են վաղեմի ազնուական Աթաբէկեանները, որոնցմէ կան Պօլ-կովնիկի աստիճան ծառայողներ ալ։

Մէլիքներու հաւասարազօր էր նաև Բաղդասար Մետրապոլիտ Ղարաբաղցին՝ Հասան Ջալալեանց տոհմէն, որ թէպէտ ոչ ուսեալ, բայց շատ հանճարեղ անձնաւորութիւն մըն էր, որոյ գործունէութիւններն հռչակ հանած էին հասարակութեան մէջ Նասրէտտին Հօճայի առակներուն չափ. ինք հիմնեց նաև Գանձասարի Վանքին մէջ[1] դպրոց մը, որուն վարժապետ եղաւ նշանաւոր Յովսէփ Վարդապետ։ Սա նախապէս եպիսկոպոս էր՝ կ'ըսուի, բայց թողլով իր բարձր աստիճանն՝ եղաւ վարդապետ մանկավարժութեան և կրթեց շատ աշակերտ. Բաղդասար Մետրապոլիտ ասոր (1837ին) կարգեցաւ թեմական առաջնորդ Ղարաբաղի Կարբեցի Յովհաննէս Կաթողիկոսի կողմէն, իր եղբայրը Մէլիք Ալահվերդիի երկրորդ վախճանելով 1827ին՝ իրմով վերջացաւ իր տոհմին Մելիքութիւնը.

1722ին նշանաւոր էին նաև Մելիք Հայկազնեանները, Տաթևի կողմերը՝ Օրբէլեանները, Ղափանի մէջ Մելիք Փարսադանեան և Մեղրիի մէջ Շահնազեան։ Շահ Աբաս՝ Մելիք Հայկազին շնորհած Ֆէրմանի մը մէջ ընծայած էր անոր Սադր-Նիշին տիտղոսը, որ կը նշանակէ դահերէց, արքային մօտ գերադահող։ Անոնց տոհմէն ակնարկած է Աբել Եպիսկոպոս Մխիթարեան, միաբան Էջմիածինի 19րդ դարուն, իր հեղինակած ձեռագիր Հայ պատմութեան մէջ (1761էն 1857), շարունակութիւն Ջամչեանի. կ'ըսուի

(1) Գանձասարի հռչակաւոր վանքը 19րդ դարին խորհրդարանն էր Ղարաբաղի Մելիքներուն:

թէ այս պատմութիւնը քանի մը հարիւր րուպլի կաշառքով անցած է անծանօթ մէկի մը ձեռք և դատապարտուած մոռացութեան կամ այլակերպութեան:



Պարսից Աբաս Միրզայ Արքան կազմած էր Հայոցմէ առևտրական միութիւններ, որ կը գործէին ու կը մեծնային վաճառականութեան մէջ՝ իր իսկ դրամագլուխով և որով ինք կուզէր ծաղկեցունել Պարսկաստանի վաճառականութիւնը: Այսպէս գործած էր նաև ժամանակին Շահ-Աբաս Միրզայ՝ սահմանափակելու համար գերիշխող այլազգիները իր երկիրին մէջ՝ բարձրացուցած էր Հայերու Մելիքութիւնը տալով անոնց առանձին շնորհներ և սահմանելով ռոճիկներ: Պաշտպանելու համար Քրիստոնեաները մոլեռանդութենէ՝ նա կը յաճախէր մերթ Հայոց Եկեղեցիները. իր ժամանակ Հայ Եկեղեցիներն սկսան զանգակահարութեան, որ առաջ արգիլուած էր. ինք ազատեց նաև հարկէ Դավրէժի՝ արքունի քաղաքին՝ Հայերը, մինչև ցայսօր կը տևէ այդ արտօնութիւնը: Շատ աշխատեցաւ տաք պահել սիրտերն իր հպատակ Հայերուն Պարսկաստանի վրայ և առաջքն առնել գաղթականութեանց, բայց հակառակ այս ջանքերուն՝ 1827-28 ին 40000 Հայեր գաղթեցին Արարատեան նահանգն՝ ուրիշ հզօր առիթներով:

Փանահ խանը նախ՝ տկարացունելով հնազանդ մելիքներու մեծութիւնը և իշխանութիւնը՝ գրաւեց անոնց կալուածները: Իր որդին Իբրահիմ խան և յաջորդներն՝ ուրիշ առաջ գացին ու այսպէս՝ Մելիքներու մեծութիւնը նուազելով տակաւ առ տակաւ՝ երթալով մարեցաւ մինչև 18րդ դարու կէսերը: Վերջին մնացորդ մըն էր՝

ատոնց շատուերգներէն՝ 1860ին Յովսէփ Զաքարեան Զէր-քէզեանց, պետական պաշտօնեայ Ռուսիոյ։

Աբաս Միրզայի ժամանակները Պարսկաստանի մէջ ծաղկած հայ մեծատուններու անուններն՝ համառօտ պարագաներով կը յիշենք 'ի ստորեւ։

Եուսուֆ-խան՝ սպարապետ (մարզպան) Ատրպատականի. երկրորդ Եուսուֆ-խան՝ Թօփճի պաշի, Մուսա էգ՝ Թօփճի պաշի. Աղա-Եագուբ՝ ներքինապետ Շահին, Աղա-Իբրահիմ Ղարաբաղցի՝ ազդեցիկ ներքինի Ֆաթալի-շահին կանանոցին մէջ. Աղա Եագուպ Երեւանցի՝ ներքինի ու մատակարար Ֆաթալի Շահին կանանոցին մէջ. բժըշկապետ Դաւիթ խան Մկրտիչեան Նոր Ջուղայեցի՝ Բարձր. Դրան բժիշկ Ֆաթալի շահի ու Մահմէտ խանի ժամանակները. Խաչատուր խան Սալմաստեցի՝ կառավարիչ Ատրպատականի զանազան գաւառներու. Դաւիթ-խան սապետ և Միրզա Եուսուֆ խան Մելիք Շահնազարեան որ Ղապուր՝ առաջինը Թարգման Ֆաթալի Շահին, որ իբրեւ լիազօր դեսպան Պարսկաստան ղրկուեցաւ Նափոլէոն Ա.ի 'քով, իսկ երկրորդն՝ հօրեղբօրորդին էր առաջինին, և դժգոհ ըլլալով Պարսկաստանէն՝ գնաց Թիֆլիս, ապա Ս. Պետրբուրկ, ուր մեռաւ. Զօհրապ խան խազնէտար շահին, որ գանձապետն ու փեսան էր Ֆաթալի շահին, Զօհրապ խան Վարդանեանց՝ արքունի գանձապետ Սպահանի մէջ. Աղա Բահրամ՝ ներքինի, ամիր դիւանխանէ, այսինքն՝ պետական դիւանապետ. Զօհրապ խան՝ Խուլամիկիչ-Աղմաթ պաշի, Շահի արքունիքին սենեկապետներուն գլխաւորը. Եուսուֆ խան ամիր Թօփխանէ՝ պարսկական հրետանիին գլխաւորը՝ Թիֆլիսցի Բաղկալ Գեւորգենց տունէն. Սպանդար-Խան իշխանազն Ամատունի՝ Թիֆլիսցի. Ղուլամ-Փիշկոդմէթ, սենեկապետ Շահի, Ալլահ-Վէրտի-բէկ Ղարաբաղցի՝ Մահմէտ Շահի մէօհիւր-

տարը. Ոսկան-Սամուէլի Սպահանցի՝ վաճառական Յաթա-լի չաճի. Մահտեսի Յովհաննէս Ղազարեան Թաւրէժցի՝ վաճառական Աղասի Միրզայի, որ ազատեց բանտարկու-թենէ ՝վշտաչարչար Դանիէլ Կաթողիկոսը (19րդ դարին սկիզբը). Մուհնուչար խան, որ ունէր Մօհտամէտ-ու-տօվլէ տիտղոսը, որ կը նշանակէ Նեցուկ պետութեան: Ինք էր Էնիկօլօբեաններու տունէն, և այն ատենւան բարձրագոյն Պարսկաստանի մէջ, որ վարեց ժամանակ մը Թաւրիզի, Սպահանի, Լուրստանի, Բախտիարեայի, Շուշտէրի և Դաֆիզի նահանգներուն փոխարքայութեան պաշ-տօնը. Խոսրով խան վալի Թիֆլիզցի կայսերազեանց տոհ-մէն՝ և շատ ուժեղ ըլլալուն համար կը կոչուէր նաև Խոսրով խան շիր (առիւծ). Սէթի խան Բուշեցի, ՚ի սկզբան ծառայեց անգղիական դեսպանատանը, ապա մտաւ Պարսից ծառայութեան և իր որդին Ծատուր խան սարհանգ (գնդապետ) եղաւ Թարգման առաջին Թաւրէժի արտաքին գործոց նախարարի պաշտօնէութեան մինչև 1882էն ասդին. Դաւութ խան կամ Ժան Դաւութ խան Ջմիւռնացի, առաջին Թարգման Նասրէտտին շահին. Թադէոս խան կամ Թուրաք խան Թաւրէժցի, ճէվահիրճի պաշի, ակնագործներու գլխաւորը Բ. Դրան, Իսմայիլ խան Մելիք Մինասեան Թաւրէժցի, ճէվահիրճի պաշի նոյնպէս, Եուսուֆ բէկ Էնիկօլօփեանց՝ թիկնապահ Աղասի Միրզայի, Սուլէյման խան Էնիկօլօփեանց, իբրև զօրավար երեւելի՝ այն ատենւան բարձրագոյն Պարսկաստանի մէջ, որ կառա-վարութիւնը շնորհեց անոր Սարը-Տօփիկ տիտղոսը, որ կը նշանակէ սուր պետութեան: Երկար ատեն վարեց Շիրա-զի, Բախտիարեայի, Լուրիստանի, Շուշթէրի և Դաֆիզի փոխարքայութեան բարձր պաշտօնը: Իր որդին է ժէնէ-րալ Նարիման-Խան, որ այժմ Վիեննայի պարսկական դեսպան է՝ Փեսայ Պօղոս պէյ Տատեանի այրի աղջկան

և հայրագիր Նէվրուզ Արթաքի խանի, թոռն Յարութիւն ամիրայ Նէվրուզեանի, որ 1905ի կէսերը վախճանեցաւ Աւստրիոյ մէկ քաղաքին մէջ։ Սուլէյման խանի միւս որդին է գեներալ Ջհանկիր խանը՝ ու Դաւիթ Աջուդան բաշին միանգամայն ամբողջ Պարսկաստանի արգիլըրիի գըլխաւորը։ Աւագ խան Մէլիք Մէհրապեանց, հին Նախիջեւանցի, կը ծառայէր Դաւրէժի Ռուսաց հիւպատոսարանը, միանգամայն անգղացի ռուսահպատակ վաճառականներու թաճիր պաշին էր, այսինքն՝ առեւտրական դիւանի գլխաւորը. Իր կատարած նշանաւոր գործերով՝ առացաւ մեծ յարգանք ու հռչակ Պարսկաստանի մէջ, և թողուց անմոռանալի յիշատակ անգղային քրիստոնեաներու մէջ՝ երկու անգամ ազատելով Դաւրէժի Հայերը զայրացած պարսիկներու սարսափելի ապառնալիքէն։ Իր որդին՝ Սուլէյման խան կը վարէ Թիֆլիզի արեւելեան լեզուներու գլխաւոր ցենզորի պաշտօնը։

Բացի զինուորական, քաղաքական, դիւանագիտական ասպարէզներէն, բացի Շահի Բ. Դրան մօտ զանազան նշանաւոր պաշտօններ վարելէ՝ Հայերը Պարսից հոգեւոր դասին մէջ ալ երեւելի եղան, 'ի հարկէ, կրօնափոխ ըլլալով։ Առանցմէ յիշելի են Մօլլա Բաշի, Միրզա Աքասի անունը, Հաճի-Մօլլա Քարիմ Տէր Գրիգորեանի անունը, որոյ եղբօր թոռը Թիֆլիսի Մօղնի եկեղեցին քահանայ եղաւ։

Աւելորդ չենք համարիր նկատել՝ որ վերայիշեալ անձնաւորութիւններէն ոմանք Աղամամատ խանի Թիֆլիսէն ու Անդրակովկասի ուրիշ տեղերէն տարած (1795-ին), ոմանք ալ Աբաս Միրզայի Ցիցիանով իշխանի հետ ունեցած կռուի ժամանակ (1804ին) Ապարանէն տարած գերիներէն են, որ իրենց ձիրքերով Պարսկաստանի մէջ ալ հասան բարձր պաշտօններու։ Թէպէտեւ անոնց բոլորին անունը կը կրէ Պարսկական ձեւ՝ բայց անոնք, մէկ քանի բացառութիւններէ զատ ամէնն ալ Քրիստոնեայ մնացին՝ հաւատարիմ իրենց հին կրօնին ու տոհմին։

## Դ.

Վերոյիշեալ հին խմբերու և մեղեդիներու լայն նախապատուութիւններն որչափ որ անհետացած ալ 19րդ դարին կէսերը՝ նոյն դարին վերջերը, սակայն, պարագաներու բերումով թէ՛ Ռուսիոյ թէ՛ Պարսկաստանի մէջ բաւական բարձր պաշտօններու կոչման հասնիլ կարգ մը նոր անձնաւորութիւններ, որոնցմէ կրնանք անուանել աղայ Կարապետ Եղեանցը, բարեսէր ու կրթասէր անձնաւորութիւն մը, Աղայք Մկրտիչ Սանասարեանց և Յովսէփ Իզմիրեանց. Յովհաննէս Խան Զմիւռնացի՝ կցորդ պարսկական դեսպանին ՚ի Կ. Պոլիս, Գրիգոր Խան Շահնազարեան՝ վաճառական, Յարութիւն Խան Թիրեաքեան՝ բժիշկ բանասէր և այլք։

Ժամանակագրական շարունակութեամբ՝ 17-րդ դարի կէսէն սկսեալ ալ հետզհետէ կընդարձակին նաև Թուրքիայի Ռուսիոյ ու Պարսկաստանի և հետևաբար Մոսկուայի, Ս. Պետերբուրգի, Թաւրէժի ու Կ. Պոլսի գործառնութեանց գլխաւոր մասնակցողներն եղող Հայերուն գործերն ու ազդեցութիւնները։ Նոյն ժամանակին՝ Կ. Պոլսի գաւառացի երևելի վաճառականներէն էին պարոնայք Միրզէ ու Խաչով՝ Յակոբ Կաթողիկոսի ծանօթները։ Բայց Պոլսոյ մէջ ժամանակակից ամէնէն նշանաւոր դէմքն է Ապրոյ Չէլէպին՝ Եպարքոսին մարդն և խորհրդականը, Եղիազար Այնթապցի Կաթողիկոսին մտերիմն ու պաշտպանը, որու սերունդէն եկած են հետզհետէ՝ մինչև մեր օրերը՝ նշանաւոր և ունեւոր մարդիկ, ծառայելով թէ՛ տոհմին թէ՛ պետութեան հաւասար ջերմութեամբ և հաւատարմութեամբ։

Տասն եւ եօթներորդ դարին՝ Երուսաղէմի Գրիգոր

Պարոն Տէր | Մարգարեան գանձակեցի Պատրիարքին[1] ժամանակակից է նաև Բաղիշեցի մահտեսի Ամիրդոլից Ամիրխան բանասէր ու աստուածասէր Աղան, որ շատ տեղ՝ մինչև Հռոմ իսկ՝ ուխտաւոր գնաց՝ քրիստոնեայ իմաստասէրի մը վայելուչ անխոնջութեամբ. իր բարեկամ Գրիգոր Պարոն-Տէր Պատրիարքը կարգեց զինքը նուիրակ Ս. Յակոբեանց՝ անդրբաղցրարանութեան և Երուսաղէմասէր նախանձաւորութեան համար:

Այդպէս՝ աշխարհական կրօնասէրն՝ իր համբոյր բարքովն և անքին վարքովն օգտակար եղաւ Ս. Յակոբեանց վարդապետէ մը աւելի. ամէն մարդ առատ դրամ կուտար վանքին՝ անոր շնորհէր Ամիրդոլի ձեռքով, բա՛ւ էր որ ինք բերան մը խնդրէր. և վախճանեցաւ Երուսաղէմի մէջ՝ վրան արձանագրեալ քար մը անգամ չէ դրուած, բայց վկայութեան Ս. Յակոբեանց վարդապետի մը: Պարոն-Տէր պատրիարքի օրով մանաւանդ՝ արևելքի մեծ վաճառական Հայեր շատ նպաստեցին բառնալու համար Վանքին ծանր պարտքերը. և իւր Երանայիշատակ պատրիարքը[2] կը վայելէր թէ՛ պետութեան թէ՛ ռամկին ամէնահաւատ վարկը, գոհաբանական մաղթանքի մը ա-

---

(1) Այս պարոն Տէր դրուասանունը, որ բացառիկ մակդիր մըն է ազնուականութեան, Գրիգոր Պատրիարքէն առաջ 1564 թուին տրուած է նաև Երուսաղէմի Անդրէաս Պատրիարքին, որ՝ Ս. Աթոռին բարերարներէն եղած կը պատմագրուի՝ գնած ըլլալով մանաւանդ Աթոռին համար շատ կալուածներ, ինչպէս վանքին արեւմտակողմի պարտէզը մէջ մեծ պարտէզն եւ վանքին կցորդ ուրիշ վայրեր: **Տե՛ս Ցուցագրութիւն Պատրիարքաց Սիոնի.** Բանասէր վարդապետի Դանձանակեցւոյ (տպ. 'ի Պոլիս 1872. էջ 52):

(2) Իր անունով գեղեցիկ այգի մը կայ Բեթղեհեմի ճամբուն վրայ՝ հովասուն եւ բարձրադիր, ջրուէր հինաւուրց ձիթաստանով մը եւ գեղեցիկ գերեզմանատունով. հոս երբեմն օդափոխելէ կ'երթան Ս. Յակոբեանց վարդապետք:

ութով՝ անգամ մը Բեթղեհէմի մէջ 500 ոսկիար մատաղ ըրաւ ի ցոյց երախտագիտութեան ժամանակին Վեհափառ Սուլթանին և ստացաւ մեծ շնորհներ, ինչպէս կը գրէ Ֆրանչիսկեանց մեծաւորն(1) իր եռհատոր Ս. Տեղեաց պատմութեան մէջ։

* * *

1681ին՝ Պոլսոյ Հայերը կը բնակէին գլխաւորաբար Գում-Գափու, Վլանկա, Եէնի-Գափու, և ասոնց եկեղեցին էր Ս. Աստուածածին Մայր Եկեղեցին՝ արդի մէջնատաճարին տեղը, բայց ոչ այնքան ընդարձակ։ Սամաթիա ունէր 1000 տուն, եկեղեցի՝ հինաւուրց և Պատրիարքական՝ Ս. Գէորգ. իսկ Եէնի-Գափու և Պալատ՝ Եկեղեցի Ս. Հրեշտակապետ. Ղալաթիա՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ. Սկիւտար Եէնի-Մահալլէ՝ Ս. Կարապետ շինուած վանեցի Զաքարիա վրդ.էն, որուն միջնադարեան կոթիկ տապանաքարը կը գտնուի Պաղլար-Պաշըի գերեզմանատունին Եէնիմահալլէի բաժինին մէջ։ Նոյն տարիները, ըստ եւրոպացի պատմիչի մը.(2) Կ. Պոլսոյ մէջ կային իբրև 40000 բնիկ և 50000 պանդուխտ Հայեր։ Հայոց թիւն ի Կ. Պոլիս ամէն ատեն հազիւ 150000ն անցած է ու այն՝ 19րդ դարին կէսերը։(3)

Ամիրաներէն Պատրիա՛րք ալ եղած կայ, ու թերեւս ժամանակին պահանջներուն կարի՛ իմաստուն համակերպութեամբ մը։ 1679ի մեծատուններէն էքմէքճի պաշի Սարգիս՝ աշխարհիկ վիճակով բարձրացաւ մինչև պատրիարքական տեղապահութեան. ապա ընդունելով

(1) Բեռ. Լիեվէն, Ս. Տեղիք, երեք հատոր։

(2) Գեշգեր։

(3) Ոմանք՝ մանաւանդ Հ. Ղուկաս Ինճիճեան՝ կը չափազանցեն այս թիւը երեւակայական քանակով։

եկեղեցական վիճակ՝ եղաւ Պատրիարք, ինչպէս կարծանագրէ նոյն Չամչեան ալ։(1) Այս միջոցին՝ Կոստանդինուպոլսեցի Յովհաննէս եպիսկոպոսն ալ կառնէ Երուսաղէմի Պատրիարքութիւնը. նոյն թուի միա՛կ Կ. Պոլսեցի Պատրիարքն է Երուսաղէմի հաջորդական Պատրիարքութեան մէջ։ Երուսաղէմացիք ցարդ ունեցած են մասնաւոր խորշում մը Կ. Պոլսեցիներուն հանդէպ՝ անոնց դրամներն առատ առատ քաշելո՛վ հանդերձ, Կ. Պոլսեցիք ալ փոխադարձաբար շատ ձեռք չեն ուզեր Ս. Յակոբեանց մանուածոյ խուցերուն մէջ. Ս. Յակոբեանք կըսեն՝ թէ Պոլսեցիք հոս գերեզման չունին, թերեւս որովհետեւ չե՛ն ալ ուզեր ունենալ։

Կ. Պոլսոյ պատրիարքութեան վերոյիշեալ յանդուգն նախընթացին վրայ՝ 1684ին դարձեալ աշխարհական երեւելիներէն Սաքոյ օղլու և Ճահին անուն տեղակալներ կ'ելնեն Կ. Պոլսոյ Պատրիարքական աթոռը, և կը վարեն զայն քանի մը տարի։

Այսպիսի հզօր աշխարհական մեծատուններու օգնութեամբն էր՝ որ յիշեալ Կ. Պոլսեցի Յովհաննէս եպիսկոպոսը Պատրիարք եղաւ Երուսաղէմի աթոռին և իրեն իշխանակից ըրաւ զանոնք «տեղակալ» անունով՝ իր Պատրիարքութեան առաջին տարին(2)։ Այս միջոցին (1685—1706) մեծ յուզումներ տեղի ունեցած են Պատրիարքական աթոռին շուրջն և Կ. Պոլսոյ Հայերուն մէջ առհասարակ, ինչպէս արձանագրուած է 1709ին Պոլիս

(1) Չամչեան, Հատոր Գ. Աշխարհականաց միջամտութիւն չինելն այսպէս Պատրիարքական իշխանութեան՝ եղանակով մը արտօնուած էր Օսմանեան Պետութեան հրովարտակներուն մէջ. (Պատմ. Հայ Եկեղեցւոյ, Մեղքիսեդեկ Մուրատեան վարդապետի, էջ 566—567):

(2) Յաջորդութիւն Պատրիարքաց Երուսաղէմի, Բաննարաս Վարդապետի Գանձակեցւոյ (էջ 56):

տպագրուած Ագաթանգեղոսի մը յառաջաբանին մէջ(1) : Գրիչն այսպէս կը համառօտէ այդ յուզումը. «Յորժամ Նորին (Տէր Աղեքսանդր Կաթողիկոսի) հրամանաւ ես նուաստ Աստուածատուր վարդապետ՝ ձեռնասուն աշակերտ ի մանկութենէ սոյն հայրապետիս՝ գայի ի նուիրակութիւն ի մայրաքաղաքս Բիւզանդեան, եւ ինձ գիրքս զի բերեալ տայցիք Մահտեսի Գրիգոր դպրին՝ զի տպեսցէ, եւ ՌՃԾԶ թուոջ եւ յամսեան Ապրիլի եօթներորդի ժամանակաւ հասի ի Կ. Պոլիս, եւ տեսի զի խռովութիւնք յոլովք յուզիւր ի քաղաքիս, ամենեցունց յայտ է, յաղագս որոյ եղեւ խափանումն կրողութեանս մինչեւ ի թիւն ՌՃԾԸ» :

1700—1707ին՝ շատ ազդեցիկ էր Խօճա Մարգար Պարթեւեան գործօն եւ հարուստ Հայ մը, որ ջերմ կուսակիցն ալ էր Աւետիք Պատրիարքի : 1702ին կը յիշուին՝ իր ազդեցիկ ու մեծատուն անձնաւորութիւնները՝ Թիւթէլ օղլու Յովհաննէս, Սահապ-այար(2) Երեմիա, Թիւթէլ օղլու Յարութիւն եւ Իւսկի օղլու Նիկողոս, որ եղան նաեւ հակառակորդներ Աւետիք Պատրիարքի : Կը յիշուի

---

(1) Այս միջոցներուն է՛ որ կը շեշտուի Կ. Պոլսոյ մէջ յարումը լատինական դաւանութեան, եւ առաջին անգամն ըլլալով կը լսուին հոն ի Հայս՝ **կաթոլիկ**, **Ֆռանկացեալ**, **ուղղափառ**, **ոչ ուղղափառ կամ չարափառ** յորջորջումները՝ ձայներ աւելի ատելութեան քան դաւանաբանական խտրութեանց նոյն եկեղեցիի զաւակաց մէջ, որուն առաջքն ի սկզբան իսկ անդ առնելու ջանքերն Եղիազար կաթողիկոսին եւ Երեմիա Չէլէպիին չյաջողեցան՝ իրենց վերահաս վախճանին պատճառով:

(2) Զարպխանէյի մէջ վերակացուի գործ մըն էր **Սահապ-այարի** պաշտօնը մեծ, **Զարպխանէ Նազըրի** պաշտօնին հետ, որ հին ատենները շատ անգամ Հայերուն էր, իսկ այժմ միայն Տաճկաց կը տրուի 120 տարիէ ի վեր:

նաև յիշատակէ(1) Թօմաս անուն ազնուազարմ առաջակաց նախագահ մը՝ 1708—1710ի միջոցները, որ ոգւով չափ խնամատար էր հասարակութեան կարգացն և բարեկամ Մխիթարի նորահաստատ Միաբանութեան․ իր քով ի պահ դրուած էին Մխիթարի նշանաւոր բարերարաց դրամները, և այս պատճառով՝ մատնուեցաւ շատ հակառակութեանց ու տագնապներու։

1704էն մինչև 1706՝ հռչակաւորն Աւետիք Պատրիարք, իբրև նախանձաւոր եկեղեցականներու իշխանական իրաւունքին, կը յաջողի վերջապէս բաւական նեղը ձգել ատենին ամիրաներուն հարուստներն ու իշխանաւորները։ Անոնք ալ՝ միաբանելով վերի հակառակորդներուն հետ՝ կը հրաժարեցունեն զինքը մեծ դժուարութեամբ։ Ահա այդ միջոցներուն է, հաւանաբար, որ կը զայրանայ ու ուրուական կամ պատմական երևոյթ մը կանխէ՝ վերի գրիչին յիշատակագրած յուզումներուն հետ՝ Պատրիարքութեան ու ամիրայութեան մէջ իրարու վրայ իշխելու և իրարու հրամաններն ընկալու կաշառաբոյծ նախանձաւորութի՛ւն՝ մանաւանդ հանուրին մնայուն կերպ մը, որ տևած է մինչև 1863 թուականը, և, չըջան ընդ մէջ, մինչև մեր օրերն իսկ։

Նոյն տարիներն է (1705)՝ որ Աւետիք Պատրիարք կերթայ Ֆրանսական դեսպանատունն՝ հետն առած երեք հարիւր հարուստ և երևելի Հայեր՝ վերցունելու համար բանադրանք մը։ Աւետիքէ անմիջապէս ետքն է որ Կ. Պոլսոյ մէջ կը յուզուին Լուսաւորչականութեան և Հռոմէականութեան վշտալից կռիւները, որ Զմիւռնացի Գրիգորեան Յովհաննէս Պատրիարքի օրերուն կառնեն զայրագին երևոյթներ և կը յանգին աղետաւոր վախճաննե-

(1) **Պատմութիւն կենաց և վարուց Միխիթարայ Աբբահօր**, *Յօրինեալ Տ. Տ. Ստեփաննոս Դիւվէր Ագոնց Արքայի, 1810 (էջ 175—176)։*

րու ։ Նոյն Յովհաննէս Պատրիարք պատճառ եղաւ քանի մը երեւելի մեծատուններու ցուցալի անկումին ալ, որոնց անուններն են՝ Տուրսունեան Մանուկ, Մահտեսի Աբրահամ Բարա օղլու (Թերեւս Բարաքէհեաններու նախահայրը), Մուրատ Թէրճիման, Շահամիրեան Առաքել, Պէնկլի Յարութիւն, Նորատունկեան և Մխլէջիմեան ու այլ կարգ մը նշանակելի անձնաւորութիւններ ։ (Տես Զամչեան հատոր Գ. էջ 757)։

Դարձեալ՝ երկու տարի ետքը, 1707 ին, է որ Եպարքոսական հրամանով՝ Խաչատուր Մարկոսեան և Տօնապետ Վարդանեան ազդեցիկները ճամբայ կելլեն Կ. Պոլիսէն Եւրոպա՝ գտնելով Աւետիք հափշտակեալ ծածկեալ պատրիարքը բերելու համար զայն Կ. Պոլիս, ու կը վրիպին, Ֆէրիոլ Ֆրանսական դեսպանին նախապատրաստեալ երկդիմութեամբը, Թէպէտ և ժամանակին Օսմանեան վեհապետն ալ ջերմ փափագող էր, հայ ժողովուրդին հետ, արեւմտացեալ ու անհետացեալ Աւետիքի դարձին (¹)։



Վիպական ու կարճ հետաքրքրական այս դրուագներէն ետք, որ Թուրքահայերուն պատմութեան ամէնէն անանդորր փուլերէն էին, ու Շղթայակիր(²) Գրիգոր Երուսաղէմի խաղաղիկ ու արդիւնաւոր Պատրիարքէն քանի մը տարի առաջ՝ Ս. Յակոբեանց վանքին խեղճութեան հզօրապէս օգնած են դրամական ու նուիրական նպաստներով՝ ժամանակին ամիրաներէն Թէվէքէլլեան Յարու-

(¹) Տես **Երկաթէ դիմակով մարդը. եւ Հայոց Աւետիք Պատրիարքը**, *Մարիուս Թօրքէի, թարգմ. Կ. Ս. Իւթիւճեան (տպագր. Կ. Պոլիս 1870)։*

(²) *Իսկ այլազգիները կանուանէին զայն* **Զինճիրլի վարդապետ**՝ *Երուսաղէմի պարտքին բարձումին համար իր վիզին կախած կամակիր շղթային պատճառով։*

թիւն, Պոլսեցի մահտեսի Իսրայէլ, մահտեսի Լութֆի. Ակնեցի Երեւանենց մահտեսի Սեղբեստրոս Մանուէլեան՝ Պալըրկեան պաշի, որ էր ամէնաճոխ սեղանաւոր, ու եղաւ փաճառապետ արքունի(1)։ Իր ժամանակին Կ. Պոլսոյ մէջ ամէնէ՛ն մեծատուն հայը, որոյ հարստութիւնն առակաւորեալ է ցարդ հայ ժողովուրդին բերանը։ Այս օգնողներուն մէջ՝ Մահտեսի Սեղբեստրոսէն ետք՝ ամէնէն ազդեցիկն եղած է Կեսարիոյ Տարախալ գիւղին Արապ օղլու Մելքոնը(2), ճարտարապետ Վեհ. Սուլթան Ահմէտ Գ-ի, որ Բ. դրան ալ մեծարուն էր(3). Նաեւ՝ Մահտեսի Սեղբեստրոսի ընկեր Հովուեան Մահտեսի Յարութիւն՝ նախահաւուն Հովուեանց տոհմին. Նոյնպէս Կեսարացի Սարգիս Եաղֆան, որ ժամանակին արքունի ճարտարապետն ու Ղալաթիոյ եկեղեցիին վերաշինողն և միւս եկեղեցիներուն ալ պաշտպան հոգաբարձուն էր։(4) Եւ ասոնք ամէնը կը յիշուին ժամանակին գրուածներուն մէջ՝ մեծապատիւ յիշատակութեամբ՝ պէրճաշուք անունով։ Կան դեռ մի մահտեսի պայազատներ ալ, որ յիշուած են Կ. Պոլիս տպագրուած Հին Հարանց Վարքին յիշատակարանին և ուրիշ ձեռագիրներու մէջ, ամէնն ալ սիրող եկեղեցիներու մանաւանդ Երուսաղէմի ու խաղաղութեան և ամէնն ալ սիրուած անձինք։

Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցիին Ս. Յակոբ

(1) Յովհ. Հաննայ, պատմ. Երուսաղէմի, տպագր. Բ. 1767 (էջ 139)։ Երուսաղէմի արքունի այս մեծանուն բարերարը վախճանած է ի Կ. Պոլիս՝ Խասքեալ Պարթեւի տօնին երեկոյին, 1754 փետր. 5։

(2) Հ. Ղուկաս Ինճիճեան, Եւրոպիա (էջ 131)։ Նաեւ Բ. ծանօթութեանը մէջ։

(3) Նոյն, անդ (էջ 169)։

(4) Կեսարացիները 18րդ դարուն ալ արքունի գործօն եւ հզօր էին Կ. Պոլսոյ մէջ հանրաբար, թերեւս կը վկայէ Նուրեթեան վարդապետ ալ իր ոտանաւոր պատմութեան մէջ Սարգիս Սարաֆեանի։

մատուռին դրան վրայ կը յիշուի նաև Սեբաստացւոն զարմ մը, որուն սերունդէն ըլլալու է 19րդ դարին մէջերն յիշ-ուած Պօղոս Սեբաստացւոն նշանաւոր գրագէտն՝ հեղինակ մեծ բառարանի մը (ձեռագիր)։

Այս միջոցներուն նշանաւոր եղան նաև Վէնետիկի մէջ հաստատուած կարգ մը հայ վաճառականներ. երևելի էին ասոնց մէջ՝ քանի մը Ջուղայեցիներ Շահրիմանեան ազնուական տունէն, որ մեծ հարստութեամբ անցնելով Եւրոպա՝ հաստատուեցան Վէնետիկ։ Ասոնցմէ երկու եղ-բայրներ՝ Նազար ու Շահրիման՝ երթալով Գերմանիա՝ մեծ ընդունելութիւն գտան Լէօփոլտ կայսրէն, որ ան-ուանեց զանոնք ու բոլոր անոնց տունը՝ Շահրիմանեան կոմս, կարգելով զանոնք Մաճառիստանի բնիկ կոմսե-րուն դասը։ Այլ սակայն իրենց որդիները ու թոռները, ինչպէս Վէնետիկի Հայերէն շատերը, քիչ քիչ փոխեցին իրենց լեզուն և ազգն ու եղան իտալացի. շատերն ալ մնացին անժառանգ և անոնք ցրուեցան զանազան աշ-խարհներ։

Կայ Վէնետիկի մէջ Երևման Ս. Խաչի մասնաւոր Եկեղեցի մը Հայոց, որ թէպէտև փոքր է, այլ գեղեցիկ է ու զմրէթազարդ, երևելի վաճառանոցին մէջ Ս. Մար-կոսի մօտերը։ Գրիգոր Կիրոսք Մրիմեան հայը վերստին շինեց այս եկեղեցին հիմէն՝ 1688 ին։ Վէնետիկի մէջ էր նաև որ ամէնէն առաջ տպագրուեցան հայ լեզուով շատ գիրքեր, ինչպէս վերջերը Ս. Ղազարու Մխիթարեանց ձեռքով ալ. Ամէնէն առաջ տպագրուեցան հոն Սաղմոս մը և Յիսուս որդի, մին 1642 ին միւսն 1643 ին։

Երուսաղէմի մէջ Գրիգոր Շղթայակիրի ու Կ. Պոլի-սի մէջ Յովհաննէս Կոլոտի եղբայրական Պատրիարքու-թեան իբրև քսանհինգ տարուան միջոցը՝ կերևի ար-ծաթ-դար մը շինութեանց և ուսումնասիրութեանց, մինչ

ամիրաներ, մահտեսիներ, աղաներ, ուսումնասէր վարդապետներ ու եպիսկոպոսներ՝ շուրջն առած այդ երկու անհատներուն(1)՝ կատարեցին իմացական, բարեսիրական և աստուածսիրական շատ բաներ, ու տպագրեցին և թարգմանել տուին կրօնական ու պատմական շատ գիրք։ Այդ արծաթ-դարին(2) ծաղկած են, ի մէջ այլոց, Ճամճուզադէ լեզուագէտ Յակոբ դպիրը՝ թարգմանն Շուէտի դեսպանին ի Կ. Պոլիս, որուն բարեկամն էր Նալեան յաջորդ պատրիարքն և անոր թարգմանել կուտար իր փափագած եւրոպական հեղինակները. Ճամճու օղլու ալ կոչուած այս Յակոբ դպիրը՝ թարգմանած է ֆրանսերէնէ Գիրք իւրատախանի. յունարէնէ ալ թարգմանած է 1749ին յունական ժամանակագրութիւնը, և լատիներէնէ՝ 1723ին Գիրք ուսմանց վասն բարւոք կենցաղավարելոյ, ու՝ 1745ին Նեւտոնի փիլիսոփայութիւնը: Ասոնց ձեռագիրները կը մնան Երուսաղէմի Հայոց վանքին մատենադարանը, մինչ Կ. Պոլսոյ ձեռագիրները կը յածին ցարդ ու կը շահածին անկո՛յս անհերեւոյթներուն մէջ...

Նաեւ հռչակաւոր է կեսարացի Բարսեղ արքունի նկարիչն ալ, որ հանած է բարձր անձնաւորութեանց կենդանագիր պատկերները: Յովհաննէս Կոլոտ Պատրիարքի մա-

---

(1) Բաղէշի Ամիրդոլոյ վանքէն էին անոնք, եւ գլխաւոր աշակերտները Վարդան Բաղիշեցի մեծ վարդապետին: Նոյնպէս այն վանքէն էր Աբրահամ Նուրսինեան վարդապետ՝ քերթող պատմագիր:

(2) Ժամանակակից մեծ գրիչ մը Երկաթի կանուանէ այդ դարը, «որ ողբալի ժամանակ մըն էր ազգին համար, մինչ տգիտութեան առաջապահը կը պատէր կը պաշարէր ամէն կողմ. Նուազութիւն հոգեկիր առաքինեաց եւ իմաստուն հովիւներու, անկրթութիւն անուսումնութիւն մանկտւոյն եւ անարժան եկեղեցականութիւն». **Վարք Մխիթար Աբբայի**. Ագոնց Քիւվէր (էջ 238—239):

ժամանակակից կը յիշուի Բաստեանց տունը (Բաստ օղլու), որոնց տունն ապաստանեցան երբեմն Պոլսոյ ժամանակակից կեսարացիներուն և ասմիկներուն երկիւղէն, թերեւս Համշականութեան հետ իր հաշտ վերաբերումներուն պատճառով, վասնզի գլխաւորապէս Կեսարացիք իբրեւ միջա անձերով եղած են ընդդէմ Հայ Համշականներուն։[1] Այս Բաստեանց հին տունէն համարելի է 19րդ դարի սկիզբները ծաղկող մատենագիր Միքայէլ-Բէստէն բժիշկը։

Անոնցմէ եաքն է Ճէվահիրճի Մաղաքիա Չէլէպին, ազգական Պէօմիւրճեան Երեմիա Չէլէպիին, և Սեղբոսեան Յովհաննէս Չէլէպի կամ Մարգիր՝ մատենագիր ամիրան, որ խոսլերէն ու հայերէն քանի մը հրատարակութեանց հետ՝ ունի նաև գրած Խոսրախան պատմութիւն մը և ծանօթութիւններ Տէր Կոմիտասի վրայ[2]։ Ասոր կը ծաղկին հետզհետէ Նալեան Յակոբ Պատրիարքի խաղաղ օրերուն յառաջացած ամիրաները ու արուեստագէտները, որ կը գտնեն հիմը 19րդ դարի արուեստական սեղանաւորական ու խնացական զարգացումներուն Թուրքահայոց մէջ։



[1] Տաղաչափեալ վէպ Նուրօհեանի ժամանակակից վարդապետի. Ձեռագիր Կ. Պոլսոյ Անտոնեան Հարց Մատենադարանին Օրթագիւղի (Երգ Դ.։

[2] Սեղբոսեան Յովհաննէս Չէլէպիի խնդրանօք տպագրուած է 1752ին ի Վենետիկ Մովսէս Խորենացիի պատմութիւնը, երկասիրութեամբ Սարգիս Վարդապետի Կոստանդնուպոլսեցւոյ։ Իսկ ու Ճէվահիրճի Մաղաքիա Չէլէպին գրած են Տէր Կոմիտասի վարքն ալ։

# Ե.

Թուրքահայոց մամուլով այս խմբային գործունէութիւններուն հայր կը համարուի, բայց ժամանակագրական կարգին, Ձահրապատցի Աստուածատուր Աստուածատրեան վարդապետն ալ՝ Գրիգոր Շղթայակիրի ու Յովհաննէս Կոլոտի հետ՝ որ 1706ին միջոցներուն նուիրակ եկաւ Էջմիածինէն Կ. Պոլիս եւ որուն համար կը վկայուի(1) թէ բանասիրական ու փիլիսոփայական ուսումներու նախանձախնդիրները առանձնեց բարեբաղդաբար Կ. Պոլսեցի պատուելիներուն. Իր առաջին աշակերտն հասաւ Պաղտասար մատենագիր ու լեզուագէտ պատուելին՝ դպիր կոչուած յառաջկայէս, որ էր Նալեան Յակոբ Պատրիարքի Դրան գրագէտը, ժամանակակից մատենագրական հրատարակութեանց Մենտորը։ Պաղտասար գրած է շատ գործերու հետ՝ Լեդարձակ պատմութիւն մը տոհմային, որ աներեւոյթ եղած է։ Ասոր վրայ քիչ մը վերջն ալ։

Փիլիսոփայ եւ մատենագիր Նալեան Յակոբ Պատրիարքի օրերուն՝ ինչպէս իր հոգեւոր հօր Կոլոտ Յովհաննէս Պատրիարքի(2) ժամանակ՝ փայլած են նշանաւոր գաւառացի անձինքներ նուամայական բեղուն խաղաղութեան մէջ, որ տեւած է բազմաթիւ գրուչ մը գիտնացի(3) Պատրիարքին երկարաձիգ իշխանութեան։

(1) Գիրք աստուածաբանութեան Սիմէոնի Ջուղայեցւոյ. տպագր. ի Կ. Պոլիս (էջ 295), եւ Յովհ. Տէրոյենց յԵրեւանեան։

(2) Պոլսոյ պատրիարքներուն ամենէն խաղաղականն ու՝ Կաղզուանցի Զաքարիա պատրիարքէն զատ՝ երկարատեւը, որ 25 տարի անխափան վարեց Պոլսոյ պատրիարքութիւնը, եւ վախճանեցաւ 1741ին։

(3) Եւ աս՝ 20 տարի իմաստուն խաղաղութեամբ վարեց Պոլսական պատրիարքութիւնը, սակայն ընդմիջումով։ Իր վրայ գրած եմ համառօտ կենսագրական մը մեր **Հին Դէմքերու** շարքին (տե՛ս **Մասիս** հանդէս թիւ 4, 1903 եւ **Ստուերք Հին Դէմքերու**)։

Իսկ Նոյեան ալ՝ ոչ միայն իր իմաստասէր Պատրիարք՝ այլ նաև իբրև կրօնական պետ տոհմային սատուար մածամանութեան, ժամանակին իշխանական եկեղակալներուն և ամիրաներուն հետ, թէ՛ Պատրիարքարանի ներքին խնդիրներու թէ՛ համայնական հատուածին վերաբերումով, բռնած է իրաւարար դիրք մը և կատարած է հաշտ դեր մը՝ հնարաւոր խոհեմութեամբ ու մէջին քաղաքագիտութեամբ մը, որով արուեստք. մեծութիւնք, գործակցական՝ եկեղեցական՝ գրական ու վանական գործակցութիւններ կրցած են դիւրութեամբ արմատ ձգել ժամանակակից տոհմայիններուն մէջ: Կոլոտի ու Նոյեանի օրերը՛ն է՝ որ Թուրքահայերուն եկեղական յառաջդիմութիւնը կը ձգէ խոր արմատ մը, որմէ կը բուսնին եւ կընձիւղին ցայսօր երևցած իմացական ու արհեստական բարգաւաճումները: Նոյեանի օրերը բարգաւաճած էին Սուրատեան Պաղտասար եւ իր որդին Գասպար ամիրաները, որ հրատարակել տուած ալ են Նարեկի ընդարձակոյն ձեռագիրը՝ բերել տալով զայն յանկարծ Կռուց անապատի վանահօր Կարապետ վարդապետի միջոցով՝ Սոկաց աշխարհէն. այս ձեռագիր՝ կարծուած է թէ՛ ն իսկ Նարեկացիին գրածը՝ նոյնին գաղիչ ձեռագիր Յակոբ վարդապետի կողմէ:

Այս միջոցներուն կըսկսի նաև փայլիլ Թուրքահայերուն մէջ՝ Յովհաննէս Լազարեան ազնուականը, որ ծընած է Բեղղբաղարկի մէջ երկու հայ եկեղեցի ու կառուցած է երկու հարիւր հազար րուպլի՝ Մոսկուայի մէջ հիմնուած Լազարեան ճեմարանին համար: Շատ նշանաւոր են նաև այն միջոցները՝ Հնդկաստանի մէջ մեծ վաճառական Պետրոս Ոսկանեան, ու Պետրոս Յարութիւնեան(1), որու-

---

(1) **Աշխարհագրութիւն** *Ստեփաննոս Գիւմէր Ագոնցի Հատ. Դ.* **Ասիա** *(էջ 15): Մինչև 1780 էին Հայերու վաճառականութիւնն*

եղբայրն էր մեծ խորհրդական Գրիգոր կամ Կորկին խանը, այր մեծախորհուրդ քաջ և կորովամիտ՝ Յասըմ Ալիին իբրու վէզիրը։ Անուանի են նաև աստիճանաւորք Յարութիւն և Մարգար խան։ Նշանաւոր եղան նաև Սէյտապատի մետաքսի հայ վաճառականները։

Գէորգ Ոսկանեան՝ Մադրասի մէջ տէր էր անթիւ կալուածներու, որոց մէկ մասը գրաւեցին Գաղիացիք, զինքն ալ հրաւիրելով սպառնալիքով Գաղիացի ըլլալ, այլ ինք մինչև վերջ հաւատարիմ մնաց Անգղիացւոց։ Իր վախճանին մօտ՝ կտակեց իր բոլոր հարստութիւնը զանազան ազգաց երեւելի ուխտատեղիներուն. մեռնելէն ետք՝ իր ստացուածներէն զատ՝ գտնուեցաւ 700,000 ռուփի պատրաստ դրամ։

Նոյն ժամանակները կը գտնուի նաև յիշատակելի Ռուսահայերուն մէջ՝ Արղութեանց երկայնաբազուկ տոհմը մեծ, որմէ էր Յովսէփ ընտրեալ կաթողիկոսն Արղութեանց. Հասան Ջալալեանց հին գերդաստանը, որ յաճախ արձանագրուած ու յիշատակուած է։ Հասան Ջալալեան տոհմին պատմութիւնը ձեռագրած է՝ 1808 թուին՝ Բաղդասար Մետրապոլիտ, և կը գտնուի Գանձասարի վանքին գիւղը Վախտանգ-բէկ Հասան Ջալալեանի տունը, Համաչ վիճակի մէջ. ունին յատուկ ճիւղաւորութիւն նաև Շուշիի մէջ։ Հասան Ջալալեանց շառաւիղէն կենթադրուի 1840 էն առաջ իբրև մատենագիր ու իբր առաջնորդ Վրաստանի և Իմէրէթի փայլող՝ Սարգիս արքեպիսկոպոսն Հասան Ջալալեանց. սա կը գրէր յստակ ու կշռեալ գրաբարաւ մը։ Ինք՝ Սանահինի վանքէն էր ու հանրային

ի Հնդկաստան անհատատարելի եղած էր, մինչեւ անգլիացիք անգամ խոստովանեցան թէ Կալկաթայի մեծաշէն դատարանն Հայերուն դրամովը շինուեցաւ. Նոյն (էջ 16)։

գործերուն մէջ ունեցաւ մեծ դեր, մանաւանդ Ներսէս Աշտարակեցիի կաթողիկոսութեան օրերը։

1740ի տարիները՝ Ղափանէն Զէյթուն, Պոլիս ու Եւրոպական քաղաքներ փախստական Հայեր կը մեծնային ու կը ճոխանային. առանցմէ Մեղրիի սահմանագլուխին վրայ գտնուող Վանք գիւղէն Ոսկան Շահումեան բացաւ Վենետիկի մէջ առեւտրական տուն մը, որ կառավարէր Դամասկոսի կերպասներու, հայելիներու, ապակեղէն ջահարաններու և այլ անցուկ վաճառքներու վրայ, Շահումեան տունը դարէ մը աւելի տեւեց եւ նշանաւոր եղաւ Վենետիկի վաճառականներուն մէջ(1)։ Այս Ոսկանի եղբօրորդին Վրդանէսն էր որ գրեց Սինեցւոց նշանաւոր պատմութիւնը. այդ հազուագիւտ գիրքը տպագրուած է Վաղարշապատ 1871 թուին Դուրիդ-բէգ անունով։



Իսկ Պոլսոյ մէջ ծաղկած ու փայլած է նոյն տարիները (1750) Թուրքահայոց ամէնէն երեւելին՝ Երեւանենց Մահտեսի Սեղբեստրոս ամիրայի հաւասար՝ Ակնցի Եաղուպ աղան կամ ամիրան, որ նորոգած է հինէն Մուշի Ս. Կարապետի վանքը(2), որ և մեծարուած էր Կ. Պոլսոյ ամէնազգի ժողովուրդէն, ու Հայերուն մէջ՝ 1455 էն 'ի վեր ցայսօր հազիւ երկու հոգի սեպուած էր հաւասարապատիւ և հաւատարմախ իրեն(3). մա՛րդ՝ Ղազէզ

(1) Լէօ, Հայկ. տպագր. հատ. Ա. էջ 387):

(2) Ըստ Հ. Ղուկաս Ինճիճեանի:

(3) Եաղուպ ամիրայի բացառիկ մեծութեանն ու անկումին պարագաներն ենթակայ մանր վկայով պատմած է ինծի յերուսաղէմ Դէր. Ներսէս եպիսկոպոս Գէորգեան՝ փոխանորդ Երուսաղէմի պատրիարքութեան ի վանս Ս. Յակոբեանց. իսկն այ վաւերաբար լսած ըլլալով զայս հանգուցեալ Դէր. Սերեան Յովհաննէս եպիսկոպոսէն: — Եաղուպ աղան սիրելին էր Մուսթաֆա աղայի՝

Արթինի պէս։ Իբր իրեն ժամանակակից՝ փայլած են նաեւ Ապուչեխցի Ազատեան ամիրաները, որոնց տապանաքարերը կը կենան տակաւին Սկիւտարի հայ գերեզմանատանը, Ակընցի Մոմճի Սարգիս ամիրան՝ Խասգիւղի Մոմճեաններուն նախահայրը, որուն յաջորդներէն ոմանք 'ի հօրէ դրամատէր մարդիկ եղած են, մանաւանդ Մոմճեան Մկրտիչ աղան, որ ունի գործօն եւ նշանաւոր դեր մը 1835էն 1855ի հանրային գործերուն մէջ։

---

տնտես Պէշիր անուն ներքինապետին, որոյ ազդեցութիւնն այնքան մեծ էր մինչեւ իշխել կամքին Վեհ. Սուլթանին. ունէր կին գերեալ Վրաստանէն եւ այս իրեն (Եաղուպ աղայի) հետ ամուսնացեալ. այս կինն՝ յաճախ լսելով իր ամուսինէն Մուստաֆա աղայի գովեստը՝ կը թախանձէ իր այրն որ օր մը տուն բերէ զայն, ու հին հիւրանոցին վրայ նայող վանդակապատ պատուհանէ մը կը դիտէ զայն ուշի ուշով։ Երկար ատեն արտաքուստ դիտելէ ետեւ՝ վերնայարկը վազելով՝ կը մարի կիյնայ եւ ոտուըները գետինը զարնելով կը պոռայ կը պոռչըտէ. տնեցին՝ մանաւանդ Եաղուպ աղան՝ վեր կը վազեն ու երբ կը սթափեցունեն (Ներսէս Որբազանին բառով՝ կը լրջացունեն) զայն՝ կինը կը գոչէ թէ «այդ Մուստաֆա աղան իմ եղբա՛յրս է»։ Եաղուպ կը զարմանայ կը մնայ ափ ի բերան եւ կը ջանայ զգաստացունել իր կինը. բայց սա դարձեալ կը պնդէ եւ կը կրկնէ ճչելով թէ «իմ եղբա՛յրս է նա, անպատճառ իր քով պիտի տանի՛ս զիս»։ Եաղուպ կառնէ կը տանի զայն Մուստաֆայի քովը. կինն հոն ալ, եւ աւելի խանդաղատանքով, կըսկսի պոռալ թէ «Դու իմ եղբա՛յրս ես, դու իմ եղբա՛յրս ես»։ Այս յուսէփեան աղաղակներուն չդիմանալով՝ Մուստաֆա կը յուզուի կայլայլի՝ պատճառ ու փաստ խնդրելով այդ յայտնութեան։ Տիկին Եաղուպ կըսկսի յայնժամ նկ... ագիրն ընել Վրաստանի իրենց բնակութեան եւ տալ իրենց հօրն ու մօր անունը. բայց Մուստաֆա դարձեալ չհաւանիր կամ չհաւանիլ կեղծելով կը պահանջէ աւելի շօշափելի նշան մը. Տիկինն յայնժամ կըսէ թէ «ծոծրակիդ վրայ նիշ մը ունիս ա՛յս ձեւ» Մուստաֆա կը զարմանայ բանին ճշմարտութեան վրայ եւ կը հաւատայ թէ որ արժան էր ու իրաւ ալ։ Փեսա՛յ կը կոչէ իրեն՝ Եաղուպ աղան, եւ այն օրէն աւելի սիրով ու բարեկամութեամբ կը կապուի անոր հետ. կը նախանձան կը փար-

1649 թուականին էր նաև Սահաթճի Եուսուֆ՝ նախահայրը Գոլխի Եուսուֆեանց։ Նոյն միջոցներն Աղբոյ չէլէպին, որ վաճառական էր Քէօփրիւլի օղլու Ֆազըլ Ահմէտ փաշային, միջնորդելով անոր և Դրան մեծերուն՝ տուաւ Հայերուն համար Կրետէի Քանտիա քաղաքին Յունաց Ս. Գէորգ եկեղեցին, որ յետ այնորիկ անուանեցաւ Ս. Կարապետ։(1) Կը յիշուի՝ կարգ մը Վենետիկեան ազնուականներու հետ՝ նաև Պարոն Եաչիկ Ջուղայեցի մը, որ կը բնակէր ի Վենետիկ և յարաբերութեան մէջ էր Մխիթարեանց հետ։ 1757ին պատահեցաւ Տիարպէքիրի գաւառին մէջ այն անհնարին երաշտութիւնն և սովը, որ պատմութեանց մէջ քիչ նմաններ ունի։ Աղբիւրները ցամաքեցան. ասոր վրայ եկաւ մարախի տեղատարափ մը Մուսուլի կողմերէն, որ թզաչափէ աւելի թանձրութեամբ ծածկեց գետինը, և ապա միլիոնս անուն թռչուններ մը արշաւելով՝ ծծեցին սպառեցին բովանդակ ցորենի ու գարիի հիւթերը։ Կորստական սովն է տիրեց Մուսուլէն մինչև Սեբաստիա, Հալէպէն մինչև Կարին. քիլէ մը ցորենն որ առաջ կը ծախուէր 7 դրշ.ի, ծախուեցաւ 15,

---

բամանան: Ամիրայական խնջոյից օր մը, տանկայն, Եաղուպ եւ բարեկամք կաղալեն իրենց ընկեր մէկ ամիրային, որ կարճահասակ ու սապասողն է եղեր, յետ գիներբուաց պարել ու զուարճանալ. այս վերջինը նախ կընդդիմանայ ապա կը համակերպի ու կը պարէ՝ հասարակաց, մանաւանդ Եաղուպի, անխոհեմ քրքիջներուն մէջ: Մարդուկն այս բանը սիրտը կը դնէ ու վրէժ կը պահէ: Երբ Մուստաֆայի մեծ Ներքինին կը դատապարտուի Բաղտ. հրամանով եւ Մուստաֆա աղ ֆիչ օրէն կը մտնուի անոր բաղդին, յիշեալ կարճուկ ամիրան յարմար առիթ համարելով զայն՝ ձեռք կուսայ Եաղուպն ալ իր անոնց ընկերը, ու կապելով զայն իր հարստութիւններն՝ կը վարեն ի բանտ եւ կը ձգեն ուր ուրեմն:

(1) Հ. Ղուկաս Ինճիճեան, Աշխարհագրութիւն, Եւրոպիա, հատ. 6 (էջ 328):

25, 30, 40 նաև 60 դրշ.-ի. աղքատները ծախեցին նախ իրենց կահ կարասիքը վար գինով՝ հաց ճարելու համար, ապա ծախեցին իրենց զաւակներն ալ ուտանելի մը գինէն վար գինով. մուրացողներուն և անօթի թափառաշրջիկներուն թիւը անհամար էր. հետզհետէ սկսան ուտել շուն և կատու, նաև ոմանք կենդանի մարդ անգամ. Հայրու ուտանին մէջ 3 քիւրտեր 40 հոգի զենլով կերան ու երեք քրդուհիներ՝ կերան շատ մանուկներ, և ապանուեցան դատաւորներու ձեռքով: Ճամբաները դիակներով լեցան, գիւղերն անբնակ ամայացան, քաղաքին մէջ ալ նոյնպէս հիւանդութիւնները սաստկացան և մեծատուններն աղքատացան սովեցան ու մեռան: Ամբողջ քաղաքին մեռելներուն թիւն հասաւ 80000ի: Յովսեպոս միայն կը յիշէ նման սով մը մարդակերական՝ Երուսաղէմի ահռելի պաշարումին ատեն, ինչպէս մեր Առաքել Դաւրիժեցին իր ժամանակին աղէտները պատմագրած միջոցին:

Ասոնցմէ տասը տասնըհինգ տարի ետքը կուգան արքունի ոսկերիչ ու դրամապետ Տիւզ Միքայէլ ամիրան՝ Հայ Համճեան, որուն ծագումն և վերջացքը (postérité) յիշեցինք վերն անուանաբար, և Մահտեսի Տատ Առաքել ամիրան,(1) համանուն գերդաստաններուն նախահայրերը, մեծահարուստ բարած Մուրատ ամիրան, Պաղտասար և Մուրատեանց Գասպար ամիրաները:(2)

(1) Տատեանն ի սկզբան Պէռեեց կը մականուանէին, (տե՛ս Սարգիս դպիր Յովհաննէսեան, Տեղագր. Կ. Պոլսոյ, ձեռագիր): Կաղզուանցի Պօղոս վարդապետ՝ գրած է ոտանաւոր գովեստ մը ի Մահտեսի Տատ Առաքել ամիրայ, (տե՛ս ի ցերակն Զուարճախօսութեան կենցաղոյս, տպագր. ի Կ. Պոլիս, 1805):

(2) Յիշատակարան ձայնց գրոց. տպագր. երկրորդ անգամ ի Կ. Պոլիս 1793ին եւ հինգերորդ տպագրութիւն Նարեկի՝ 1774, Յիշատակարանին մէջ:

1751ին շինուեցաւ՝ Նարլը գաբուի մօտ՝ ծովեզերեայ հիւանդանոցն Հայոց Ղարանցի Գէորգի պատրիարքութեան ատեն և նորոգուեցաւ 1794ին։

Ասո՛նք են ըստ մեծի մասին, կարգ մը երկրորդական ամիրաներու և թարմատար աղաներու հետ՝ ակընցի Նախիտականն ամիրաները, որոնց արտակարգ փայլելուն մեծ պատճառները կը թուին դարձալ ակընցի Երեւանեանց Սեղբեստրոս ամիրան ու ինք Նալեան Յակոբ Պատրիարքը, իբր անոնց Համշիրակ ակնցի՝ ըլլալով ինք ալ Զիմառայ գիւղէն (1)։ Իր մարդիկն յառաջացունելու այս իւրաշօտութիւնը (pépotisme)՝ վարընտել ախտ մը կը թուի մեր գործառնութեանց պատրիարքական աթոռներուն շուրջն և վանքերուն մէջ, առիթ յառաջէմ անպատեհութեանց զեղծումներու և զրկեալներու վնասաբեր ոտնձգութեանց ու հակադրութեանց։



Հինաւուրց երեւելի այս Ակընցիներուն յաջորդելով է՝ որ հետզհետէ ծլեցան ու մեծցան միւս ակընցի Թանճախօսիկ և Խորասանճիկ ամիրաները ալ, որ երեւեցան ու ճոխացան մինչեւ 1840, իբրեւ սեղանաւոր ու վաճառական, իրենց երկնայանդուած ու առակի կարգ անցած վարպետութի… երովը։

1760—1763ի մէջ … փայլած են մեծ վէզիրին վաճառական (պազիրկեա… …ի)՝ Փօղոս Ղազար ու Ասլան ամիրաները, որ և բա… …կուեցան յետ մահուան վէզիրին և ազատեցան բա… …ութեամբ մը. բայց Ղազար

(1) Կ. Պոլիս բնակող … ակնցիներ՝ ունէին յատուկ պաշտօնեաներ, որոնց միջոցո… …ն եկող նամակները պանդուխտներու կը հանէին նաւերէն և … …ֆրայկն մանաւոր պաշտպանութեամբ կը ստացուէին … …կյմէկ նախապատրաստել գործի։

ամիրան (1) ծնկաւ, ու իրենց երեքին միանգամայն յաջորդեցին Ճանուզեան Յարութիւն Սարգիս ամի և Սաքըզեան Մարտիրոս:

Նոյն միջոցները՝ Դահմաս Գուլի խանին մահուընէն ետք Ագուլիս քաղաքին հայ բնակիչները, որ 10000 տունէ աւելի էին, ցրուեցան ի սփիւռս աշխարհի՝ մանաւանդ Կ. Պոլիս. ասոնք ըստ մեծի մասին Հնդկական վաճառականներ էին ու իրենցմէ շատ մեծատուններ սերեցան, որոնց ոչ սակաւք բարերարք եկեղեցեաց տպագրութեանց և վանորէից՝ Խօճայ կոչումով:

1770 ին վախճանեցաւ Հնդկաստանի մէջ խօճա Ղազար Գրիգորեան մեծատունը, որուն ժառանգութեան մէկ մասը բաժնուեցաւ 1864 ին Պոլսոյ Պատրիարքարանի միջոցով:

Նոյն 1750—65 ի միջոցին է՝ որ կը շինուի հոյակապ Մեծ—Նոր խանը, (2) Զաքմաքճըլար եօղուշին, և կըլլայ՝ Վալիտէ խանին հետ՝ գլխաւոր կեդրոնն ու օթեան սեղանաւոր և վաճառական հայ մեծատուններուն, մանաւանդ սեղանաւորներուն, որ այդ հսկայական չէնքերուն մէջ աւելի հսկայական առեւտրական ձեռնարկներով անգամ՝ չկրցան դարձեալ մինչև 19րդ դարի կէսէն անդին ալ անխարխար պահել, այդ խաներուն հարուստ վէմերուն և որմերուն հետ, իրենց հարստութիւնն և հեղինակութիւնը. չկրցան սիրել զիրար անմախանձութեամբ մը չափ ու անուել համերաշխարար իրենց նախանձելի դիրքին մէջ: Մեծ-Նոր խա՛նը մանաւանդ՝ հայ ամիրաներուն խորանն եղած է հարիւր տարիի չափ:

Ասոնցմէ դուրս և ժամանակով աւելի նոր են Զարդախանէ Սարաֆի Ծերունն և Ռոստոմ օղլուն (Ռոստոմեանց

(1) Սանահ ազգայ Ղազարոսեան Ղազար ամիրայէն սերած է:
(2) 166 սենեակով եռայարկ ու երեք դուռներով:

տունէն), որմէ ապաւինեցի հաչակաւոր Բեղրաքի Չէ-լէպին ծառայած էր նախ և ապա յաջորդած: Այս Բեղ-րաքի Հայ—Հռոմ Չէլէպիին պատիւն և ազդեցութիւնը մե՛ծ եղաւ Օսմանեան արքունականներուն մէջ, որոնցմէ շատն հարստացան՝ միա՛յն իր հաշուագէտ գործառնու-թեանց շնորհիւ: Բայց ինք ու վերոյիշեալ Եաղուպ ա-ղան ալ՝ չգիտնալով խոհեմութեան սահմանին մէջ մնալ՝ շու՛տ ինկան (գլխատուեցան) ([1]):

Ասկէ զատ այդ Եաղուպ աղան Յովհաննէսեան ձեռնտու էր Նալեան Յակոբ Պատրիարքին շատ գործերուն մէջ. և Նալեան ալ՝ իր Երուսաղէմական պատրիարքութեան միջոցին՝ կը թղթակցէր անոր հետ շատ անգամ և կը հրա-ւիրէր ալ ուխտի յԵրուսաղէմ՝ կոչելով զայն փառաւորա-պէս արժանի, նոր Յովսէփ գեղեցիկ ժամանակին եւ երկ-րորդ Զօրաբաբէլ տաճարաշէն: Եաղուպ աղան ալ՝ Երու-սաղէմ ուխտագնաց ըլլալով՝ դարձին իր հետ Պոլիս բե-րաւ ու Պոլսոյ Պատրիարքութեան աթոռը բազմեցուց Նալեան Սրբազանն՝ ըստ թախանձագին փափաքի այս վերջինին: Կա՛ն մինչեւ ցայսօր Ս. Յակոբեանց վանքին մէջ՝ Պէքեար Թաղի կից երկու շնորհքով հին սենեակ, որ Եաղուպ աղայի անունով կը կոչուին: Կա՛յ նաեւ նոյն վանքը պղնձի յիշատակարան տախտակ մը, որուն վրայ մի առ մի գրուած են Եաղուպ աղայի բարեպաշտական ընծաները ու յիշատակները՝ նուիրուած միայն Ս. Յակո-բայ տաճարին: Տալու համար առ հասարակ գաղափար մը ժամանակին նուիրական ոճին ու հարստութեանց որա-կին վրայ՝ կօրինակենք հոս այդ յիշատակարանը([2]):

---

([1]) Դարապասում Հաս. Ե. 1789—1795 (էջ 23—25):

([2]) **Ժամանակագրական Պատմութիւն** Երուսաղէմի, պգր. 1890 (հաս. Բ. էջ 78): Երուսաղէմի նուիրուած մինչեւ հիկ արոյ-րք. ու պղնձե ամաններում եւ սրսկաններում ցանկը՝ նուիրա-

— Նուէրք Եաղուպ աղայի ի գանձս Ս. Աթոռոյն և Ս. Տեղեաց Քրիստոսի յԵրուսաղէմ՝ ի յիշատակ իւր և ազգատոհմին իւրոյ 1 արծաթի ջահ 56 օքքայ՝ կախեալ ի մէջ գմբէթի եկեղեցւոյն Ս. Յակոբայ, և ի ներքոյ նորին կանթեղք 8. 1 մեծ և պատուական վարագոյր Աւագ խորանին ոսկեթել ասղնագործ, յորոց վերայ տեսանին կերպարանք վիշապաց. 2 ծաղկեայ տիպայ գոգնոց. 1 իւղաբերից շուրջառ, 1 սոֆա վարագոյր Ս. Գլխադրի, և որմոց նորին պատկերք տնօրէնութեան Փրկչին, գործ սքանչելի՝ հանդերձ արծաթի շրջանակաւ և վանդակաւն. 1 արծաթ կանթեղ ի մատուռն Մակարայ հայրապետի. 1 ոսկեթել թաւիշագործ (Կլապիտան աթլազ տոքումայ) վարագոյր՝ Ս. Էջմիածնի խորանին. 1 պղինձ ծորակ ապն-տեստանի, երկաթեայ արտաքին մեծ դուռն վանից, (որ է երկաթագործութեան գլուխ-գործոց): Ս. Յարութեան 1 ոսկի կանթեղ 600 դրամ ի վերայ գերեզմանին Քրիստոսի. 1 շուրջառ, 1 սաղաւարտ. 1 վակաս, Ս. Յովհաննէս եկեղեցւոյ՝ 1 լեհ չիթ վարագոյր, 1 տիպայ վարագոյր, 1 տիպայ գոգնոց: Ս. Թորոս եկեղեցւոյ՝ 1 արծաթ ոսկեզօծ սկիհ. 1 տիպայ գոգնոց, Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ՝ 2 տիպայ գոգնոց, 1 լեհ չիթ վարագոյր 2 քարեայ աշտանակք մոմեղէնք: Ս Փրկիչ եկեղեցւոյ՝ 1 տիպայ գոգնոց, 1 զոյգ քարեայ աշտանակ մոմեղէնօք, Ս. Աստուածածնի գերեզմանին՝ 1 տիպայ գոգնոց, 1 սաղաւարտ, 1 վարշամակ, 3 շապիկ: Ս. Ծննդեան եկեղեցւոյն 1 շուրջառ, 1 սաղաւարտ, 1 վարշամակ, 1 փորուրար, 3 շապիկ. 1 արծաթ բուրվառ: Ս. Նիկողայոս եկեղեցւոյն Յոպպէի՝ 1 շուրջառ, 1 սաղաւարտ, 1

ցուաց բազմաթիւ անուններով՝ գեղեցիկ արձանագրուած յԵրուսաղէմ ձեռագիր ու ոսկեզօծ տետրակներու մէջ յամին 1901-2:

վարշամակ, 1 փորուբար, 4 չապիկ, 1 լեհ չիթ վարագոյր։ Իսկ Եաղուպ աղայի բարեպաշտուհի տիկինը՝ Սողոմէ՝ յիշատակեց Ս. Յարութեան տաճարին մէջ կանանց վերնատանը՝ 2 տիպայ գոգնոց, 1 չիթ լեհ վարագոյր և Քրիստոսի գերեզմանին հանդէպ Յայտնութեան պատկերի ոսկեզօծ շրջանակը քանդակագործ։

Այս ձեւն ունէին ընդհանրապէս նուէրները Կ. Պոլիս ալ։

---

## Ջ.

Տասնեւութերորդ դարին մէջ՝ առեւտրական ամիրաներուն ամէնէն ջոջերը կը համարուէին Սամուէլ Մուրատ և Ռափայէլ Հնդկաստանի մեծ թանգարներն ու Մխիթարեանց Վենետիկի ու Փարիզի Մուրատ-Ռափայէլեան վարժարաններուն մեծ բարերարները, որ հարիւր հազարի չափ Ֆրանսական ոսկիի գումար մը կտակեցին՝ որբ ու աղքատ հայ տղայոց դպրոցական կրթութեան համար, Վենետիկի Մխիթարեան Հայրց միջնորդութեամբ։ Նոյնպէս Հնդկաստանի մէջ՝ Մասեհ-Պապաճան և Մարտիրոս միացեալ ընկերութիւնը, որու անունով մեծկակ կտակի խնդիր մը յուզուեցաւ 1869էն 1871 Կ. Պոլսի Պատրիարքարանին մէջ և ներկայացեալ ժառանգորդները շատ աշխատեցան ձեռք բերել անգղիական Պանքային մէջ մնացեալ (1) գումարէն իրենց համար մաս մը։

---

(1) Լսած ենք 1884ին թէ այս պանքային մէջ 9,000,000 լիրայ սթեռլինի կապեալ գումար մը կը մնայ շահոց՝ որոց վաւերական ժառանգորդները չեն ի միջի։

1773ին՝ Էջմիածնի ջերմ միաբաններէն Կաղզուանցի Զաքարիա արքեպիսկոպոս Փօքուզեան կընտրուի Պատրիարք Կ. Պոլսի, ու իր էջմիածնական աններողութիւնը գրգռուելով և ես Մխիթարեանց ու Հ. Միքայէլ Չամչեանի քանի մը խորհական բառերէն ու գրութիւններէն, հակառակ իր նախորդաց խնամոտ և իրաւախոհ տոհմասիրութեան՝ ձեռք կառնէ անհաշտ ու անանդորր տոհմայնութիւն մը և ի գործ կը դնէ ծայրայեղ հակակաթողիկէութիւն: Իրեն այդ անհաշտ ոգին կը բռնէ ժամանակին Փոքր-Ասիոյ եպիսկոպոսներ(1) ու ամիրաներն ալ մեծ մասով՝ հալածելով ու աքսորելով կաթոլիկները ու հալածուելով և ատուելով անոնցմէ,(2) որով հայ մեծատուններու մէջ՝ փոխանակ արդիւնաւէտ ծառայելու իրենց անհատական ու աշխարհային զարգացումին՝ կրօնական ազգամիջեան պայքարներով. այս ատելութիւնն և ընդդէմ անմիտութիւնն է՝ որ տեւած է մինչեւ Արքահամ Պատրիարքի օրերը (1814) և մերթ անկէ շատ ատեններ՝ մինչեւ որ բողոքական նոր հատուած մըն ալ վրայ հասնելով հակառակ արեւմուտքէ մը՝ շրջեց արեւելեան հայ միտքերը բոլորովին ընդդիմական նորութեան մը դէմ՝ մոռնալով ա՛լ ձեւակերպեալ հայ Հռոմէականութիւնը:

18րդ դարուն վերջերը կը յիշուի նաեւ Ղալաթիայի

(1) Առնենք է նաեւ **Տերունի** յիշուած Պօղոս Գարագոլ եպիսկոպոսը, որ առաջնորդեց Պրուսայի վերուսին հիմնեց Արմաշի վանքն եւ հասուց մեծկակ աշակերտներ:

(2) Զաքարիայի հալածած ու բռնադատած հայ հռոմէականներու գլխաւորներն են՝ Կոյր Մինաս, Դափամանի Լօրքն, Վարդան մանկավարժ, Թիւլյկեանի Յովակիմ, Մահտեսի Քերովբէ, դերձակ Սերովբէ, ժամագործ Սերովբէ, Արիկ եւ Յովհաննէս եղբարք, ձայնագեան Մահտեսի Յարութիւն (**Պատմ. Ա. Պէրպէրեան** էջ. 2):

Ս. Լուսաւորիչ եկեղեցին հին շուրջառի մը վրայ՝ Բըն-կեանցի Զայնոց մահտեսի Վարդերես ամիրայ մը, որ թե-րեւս հօրն է ազնուական հանգուցեալ Զայեան Իլիաս էֆէնտիի: Նոյնպէս Պապասեանց նախածնողներէն համա-րելի են Լուսաւորիչի Ս. Խաչի բեմին յիշատակարանին վրայ արձանագրուած «Աւետեցի Պապայի որդի Մահ-տեսի Կարապետին» ու թոռներն Յովհաննէս, Կարապետ, Մահտեսի Հայրապետ Աբիկ ու Եփրեմ:

Դարձեալ այս միջոցներուն նշանաւոր է՝ թէ՛ մեծու-թեամբ թէ՛ վշտակրութեամբ՝ Կարապետ Մանուկ Օղ-լուն ամիրացի, որուն կենցաղը կը համառօտենք հոս, եւ ուրիշին համար կը դրկենք ընթերցողն՝ 1828ին Փա-րիզ տպագրուած Վարք Հայոյն Կարապետի Մանուկ-Օղլույի, սեղանաւորի Դայմազալ Թահիր փաշային եւ Վէ-զիր Ալի փաշային Եանեայու տեարակին:

Այս Կարապետ Մանուկ օղլու ծնաւ Ամասիա քա-ղաքը Փոքր-Ասիայի՝ ազնուական եւ հարուստ ծնողքէ 1755ին: Տասնեւօթն տարեկանին՝ սկսաւ ինքնագլուխ կառավարել իր հօր վաճառական գործերը. քսան երեք տարեկանին՝ վաղ իսկ ամուսնացած՝ անցաւ Կ. Պոլիս, ուր ընդունուեցաւ մեծ պատուով եւ սկսաւ ուրիշ մեծ գործառնութեանց: Սեղանաւորութիւն ըրաւ շատ փա-շաներու, մանաւանդ երկու մեծ փաշաներու, որ բազմահռչակ էին: Իր վաճառաքարձ նաւերը կերթեւե-կէին Խրիմ եւ Ռուսիա. քսան տարի շարունակելով այս-պէս՝ դիզեց մեծ հարստութիւն, եւ ապա սկսաւ նուա-զիլ ու իյնալ:

Այդ առաջին անկումէն ետք՝ նորէն կանգնեցաւ օգ-նութեամբ իր եղբայրներուն եւ փեսային Իւկաս, մինչեւ որ՝ մղեալ արկածներէ ու հիւանդութիւններէ՝ գնաց Աթենայ ու անկէ Եանինա, ուր պաշտպանութեամբ փա-

չայրն նորէն ուր եղաւ տունի և գիրքի ։ Եւ ապա Կ. Պոլիս վերադառնալով՝ կըրցաւ տունի մը համար զբաղիլ իր հին գործերով, մինչև որ բախելով մեծամեծ վնաս-ներու՝ միտքը դրաւ երթալ ապրիլ Ֆրանսա ։ Հետզհետէ Վարշաւ, Պերլին, Վիէննա, Համպուրկ, Լոնտրա և ուրիշ Եւրոպական քաղաքներէ անցնելով՝ 1823ին հասաւ Փարիզ ։

Հոն՝ իր ամբաւ հարստութեանց նշխարներովը բացաւ արեւելեան անուշահոտութեանց խանութ մը՝ Պալէ Ռոյալի մէջ, մինչև որ հո՛ն ալ կրակ մը պատահելով՝ մոխիր դարձուց Կարապետին վերջին հանդրուանը, այնպէս որ եօթանասնամեայ հայ Ցարն հարկադրեցաւ գիշերօթել ճամբաներու վրայ ։

Վերջապէս՝ Ֆրանսացի երեւելի բարեկամ անձնաւորութիւն մը վրան գթալով՝ հանգամանակութեամբ ապաս-տան ճարեց անոր և գնեց խանութ մըն ալ Պուլլիվար sk բանոտանայի վրայ, ուր անկեալ ծերուկը կապրէր ծախելով գիւրագին բաներ ։ Հո՛ն ալ սակայն հալածեց զինքը անողոք ճակատագիրը, զի եղաւ օր մը որ ամբաստանուեցաւ արգիլեալ ծուխ ծախելու յանցանքով, և դատաստանի ենթարկուելով՝ հազիւ կրցաւ անպարտ ելնել ու ազատիլ տուգանքէ ։ Իր փաստաբանը՝ Տիւքլանժի՝ գրեց վերոյիշեալ իր վարքը ։

Եւ Կարապետ՝ ա՛լ խելամուտ իր բաղդին դժնէութեան՝ որոշեց մեկուսանալ Արշիպելագոսի կղզիներէն մին հանդերձ իր ընտանիքովը, ու ապրիլ հոն վերջին փիլիսոփայութեամբ մը ։

* * *

Կ. Պոլսոյ ամիրաներուն մէջ 1780ին կը յիշուի Պալդարանցի Մահտեսի Յարութիւն ամիրան, որ էր ժամանակին Սարաֆյար Բէքեարյան ու ամէնէն հզօր հանրային գործերուն մէջ ։ Այս ժամանակ կը յիշուի նաև Ճէզայիրցի

Գափառան հասան փաշայ մը, ծագումով հայ, որ Կ. Պոլսոյ մէջ շատ շինուածոց հետ՝ շինեց նաև նաւային մեծ գործարանն երկու տարուան մէջ և ծաղկեցուց նաւավարութեան ուսումը նոր կարգերով։ Ռոտոսթոցի էր ինք, և տղայ հասակին գնացած էր Ճէզայիր, ուր քաջութեամբ և վարչական կարողութեամբ նշանաւոր եղաւ. անկէ մղուեցաւ Սպանիա և ապա ի Պոլիս, ուր հասաւ մեծ պաշտօններու։

1782ի օգոստոսի առաջին օրը(1) սոսկալի հրդեհ մը 66 ժամի մէջ մոխիր դարձուց Կ. Պոլսոյ մէջ հազարներով տուն և կիզեց այրեց 1000է՛ աւելի հոգի։

1786ին կը յիշուին նոր ջուղայեցի ազնուատոհմ Մանիջարեանք, որոնցմէ հասած են գրասէր անձնաւորութիւններ։

1799ին կը յիշուին՝ Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցին մարմարի մը վրայ արձանագրուած՝ Բինկեանցի Խաչատուրեան մահտեսի Ստեփանոս ամիրայ։

1790-1800ին կը յիշուի յերուսաղէմ յիշատակարաններու վրայ՝ կեսարացի Պաշպադրիկեանեան մահտեսի Յովհաննէս, որ յախճապակել տուած է Երուսաղէմի Ս. Էջմիածին տաճարը(2)։ Նոյն թուականներուն երեւելի է նաև Հասանքրեն Կոզմաս Զէլէպի Բէօմիւրճեան՝ Տէր Կոմիտասի թոռը, որ Կ. Պոլսոյ սպանիական դեսպանին թարգմանն էր, ու շատ օգնեց Հ. Ղուկաս Ինճիճեանի հնախօսական ու աշխարհագրական երկասիրութեանց։ Գրած է խառնելէն ստորագրութիւն մը Կ. Պոլսի. տպագրուած ՚ի գիւղն Պասսան Վենետիկոյ 1794ին. խառնական ձևով՝ կը մականուանի Բատուպօնեանց։

(1) Դիւնէշի ու զարմանալի պատահար մըն է՝ որ Կ. Պոլսի մեծ ու յանախաւոր հրդեհներն ընդհանրապէս կը պատահին աշունի սկիզբները՝ բարլիման այր բռնած միջոցին:

(2) Ուղեցոյց Ս. Տեղեաց, (էջ 392):

1789ին Կ. Պոլսոյ մէջ տեղի ունեցաւ սոսկալի տեղատարափ մը, զոր այսպէս կը նկարագրէ՝ ժամանակին ռամկօրէնով՝ Հ. Ղուկաս Ինճիճեան Մխիթարեանը(1):

«Այս տարի Ստանպօլ մէկ ալեկոծեալ տարի մը եղաւ. երկինքէն մէկ հեղեղ (սէլ) մը եկաւ որ չիկար ծեր մը անանկ տատանիկ անձրեւ յիշող. երկու օր անձրեւային եղաւ, բայց մէջը մէկ անձրեւ մը եկաւ ժամ ու կէս քշօղ անանկ շատ որ լման պզտիկ ջրհեղեղ մը երեւցաւ մեզի. Ստանպօլին ճամբաները անանկ բարձրցան ջրով որ տեղ տեղ մարդիկ չի կրցան անցնիլ, տեղ տեղ ալ անանկ խորունկ փորեց որ՝ գետնի տակէն հնուցմէ մնացած գերեզմանի քարեր երեւան հանեց. Գասըմ Փաշան տուներ՝ ակիրմէնի քարեր քակեց ծովը տարաւ: Պօղազ իչինին ան գեղերը որ ձորի (տէրէի) մէջ են՝ տուներուն բարձերը ֆըչիները սեղանները եւյն ծովը քշեց տարաւ. Կանտիլլիին ջուրի ճամբուն մէջը քշելով խօթելով կով մը՝ անանկ հրելով ծովը տարաւ, տեղ տեղ ալ ան ճամբուն ամուր պատերը պատռեց որ Սուլթան Մուրատէն են շինուած: Պէյպէքին ձորին մէջ ու ծառեր քշելով իրարու վրայ դիզելով մէկ պատուար (պէնտ) մը շինեց, ու ծառերուն վրայ ջուրը արգիլուելով բարձրցաւ, բարձրութենէն վար վազելով ջուրին սաստկութիւնը ինչ հասմի գերեզմանի քարեր որ կային՝ ծովեզերքը քշեց տարաւ, տուներ փլուց, լեռան հողը վար բերելով չարշին հողով լեցուց. խանութները վարը խորունկը մնացին. տախտակները խուլաճի չափ խանութներէն բարձր մնացին: Կէօքսույին ամմէն պարտէզները որ 4 ժամ ներսէ ներս կը քշէ՝ իրենց ամմէն բերքը ծովը քշեց տարաւ. Զէնկէլ գեղին ծովածոցը լեց-

(1) Դարապատում Հատոր Ե. 1789—1795 (էջ 11—12) եւ Ամառանոց Բիւզանդեան (էջ 153, 154):

ուած կերեւնար քշուած կանանչեղէնով, անկրէն հասած բարձերով: Ամէն մէկ տեղին պատուհանները ինչ որ տեսանք այս սովորական անձրեւին սաստկութենէն եղած՝ թէ որ պատմելու ըլլանք՝ մէկ գիրք մը կըլլայ. ամէնուս վրայ անանկ ահ մը պատեց տուաւ այս անձրեւին սաստկութիւնը՝ որ իբր թէ գետինը անցնիլ կը ցցընէր այս ամբողջ քաղաքը»: Այս հեղեղատատ փոթորիկը նման բան մը ըլլալու էր 1905 մայիս ամսուն վերջերը՝ կիրակէ ու երկուշաբթի օրերուն՝ պատահած կարկտալից և թաթառուտ փոթորիկն, որ պատճառեց մէկ միլիոն ոսկիի վնաս Կ. Պոլսոյ և արուարձաններուն ու գիւղերուն՝ իր գործած ջախջախումներուն ու աւերներով և տապալումներովը. մէկ քանի հոգի ալ կեանքերնին վրայ տուին:

Տասնեւութերորդ դարուն վերջերն էր՝ որ Հայ մը բիւզակեսի վրայ ձեռագործ նկարակերտութեան գիւտն ըրաւ ի Բուզկունճուք, որով նոյն կողմերն և ի Սկիւտար նազմաճիութեան արհեստը բարգաւաճելով՝ մինչեւ ցայսօր հարիւրաւոր հայ աղքատիկ ընտանեաց ապրուստին պատճառ եղաւ: Կ. Պոլսոյ մեծ շուկային մէջ և գաւառներն ու Տէրութեան գլխաւոր քաղաքները՝ Պէյրութ, Զմիւռնիա, Գահիրէ, Աղեքսանդրիա, Արշիպեղագեան կղզիները կը փնտռուին ու յարգի են Սկիւտարի նազմաները: Հ. Ղուկաս Ինճիճեան՝ կերգէ հետեւեալ տաղաչափ տողերով այս հայական գիւտը. — (1)

Տեղի է (Գուզկունճուք) գիւտի Հայկազուն ազգին,
Նոր գործարանի՝ ընտիր ներկողին,
Նըկարակերտի՝ գործոյ բեհեզին
Բոլորից այլոց ընտրելագունին:

(1) Ամառանոց Բիւզանդեան (էջ 189—190):

Որ թէպէտ փոխեալ՝ ի յԻւսկիւտարին,
Այլ սորայս կոչի՝ անուն Հրեարչին,
Բանայ գլուր ծաղիկ՝ ոչ սոսկ գարնայնին,
Այլ գարնան յաշնան՝ զանթառամելին:

Իսկ Հրեայք՝ որ Ցոյներէն ետք Կ. Պոլիսի մէջ պարտիզպանութեան հետամուտ մշակներ ալ եղած են հին ատեններն՝ 1650էն առաջին անգամ Եւրոպայէն Օրթաքէօյ բերին և անկեցին Ենկինարի բարեհամ բոյսը, որ անոր և այսօր ամբողջ Բիւզանդիայի մէջ կը մշակուի ու կըսպառուի յաջողութեամբ [1]:

---

[1] Ամառանց Բիւզանդեան (էջ 123—124 ծանօթութիւնն նօտագիր):

# Է.

Ժամանակին հետեւակ մակարդակէն բաւական վեր բարձրացած ու մեծցած ազնուականութիւն մը կ'ելնէ հոս մեր դէմը՝ 18րդ դարուն վերջերը, ՛նշանաւոր դեսպանական մը՝ թէ՛ իբրեւ մատենագիր թէ՛ իբրեւ Չէլէպի կամ Ամիրայ, Մուրատճան Իգնատիոս տ'Օհսոն(1) ըսուած

---

(1) Յովհաննէս Հիւարեան (**Բանասէր** ամսական հանդէս, տպ. ի Կ. Պոլիս 1851ին. Հատոր Ա. էջ 14—15) կը գրէ այս անունը Մուրատճա տ'Օհսոն: Դարձեալ ըստ Բանասէրին՝ Իգնատիոս Մուրատճա տ'Օհսոն ծնած է ի Կ. Պոլիս 1740ին Թոսունեան բարեկեցիկ ընտանիքէն Բերայի մէջ, ուր ութեւտասներորդ դարի նմանողական գաղափարականութիւնը ի վեր բռնած էր արեւմտեան տարազ ու կենցաղ մը՝ բաւական նպաստաւոր արեւելքի մայրաքաղաքին մէջ սնուցանելու եւրոպական զարգացում մը: Այդ զարգացումին գրգիռ կուտային նաեւ Ֆրանչիսկեանք ու Դոմինիկեան շրջուն քարոզիչներուն ինչպէս նաեւ դեսպանական տուները, որ օթեւանած էին Բերայի բարձանց վրայ երկու դարէ հետէ: Իգնատիոսի հայրը՝ Զմիւռնայի շուէտական հիւպատոսն էր, որ տուաւ շրջավայրի այս պատրաստութեանց համեմատ արեւմտեան ընտիր կրթութիւն մը իր այս յառաջդիմասէր զաւկին: Իգնատիոս՝ իր համբոյր բնաւորութեամբն եւ իւլկմայի մը օգնութեամբ ստացաւ արեւելեան լեզուներու եւ պատմութեանց վրայ մանրամասն ծանօթութիւններ ու 1782ին եղաւ Շուէտի դեսպան ու անուանուեցաւ Ասպետ Վազայի կարգին. 1787—1790ին հրատարակեց իր պատկերազարդ **Ընդհանուր Պատկերին Օսմանեան կայսրութեան** առաջին մասը: Այս գործը կ'որակէ մեծանուն Գիպըն անգղիացի պատմագիրը, բերելու ժամանակակցական արագ ակնարկով մը, «իբրեւ գործ մը ոչ այնքան իրապէս օգտակար քան երեւութապէս շքեղ ու փառաւոր»:

Այս երկասիրութիւնը ցարդ ունի մեծ անուն. 1804ին ալ Բարիզի մէջ լոյս տեսաւ **Պատմական Պատկեր Արեւելից** անունով գիրք մը, որ կը բովանդակէր հին Պարսից Պատմութիւնը ի

Կ. Պոլսեցին, որ էր նաեւ քաջ ֆրանսագէտ և բրաւ հեղինակութիւններ ֆրանսական լեզուով Օսմանեան պետութեան պատմութեան և ժողովուրդին բարքին վրայ (երկու հատ յոյժ ստուար տպագր. ի Փարիզ 1784ին) ու առաւ ի փոխարէն հայտաէր Սուլթան Սէլիմէն մեծ պարգեւ: Մուրատճան գնացած էր նաեւ 1792ին Վենետիկ Մխիթարեանց վանքը, և հոն ալ պարապով ուսումնասիրած ու հաւաքած էր իրեն կարեւոր պատմական ու բանասիրական տուղձները՝ մանաւանդ բազմահմուտ Հ. Միքայէլ Չամչեանի ու Հ. Ղուկաս Ինճիճեանի միջոցով: Իգնատիոս՝ ամուսնացած էր Գուլէլի օղլուի աղջկան հետ, ու իր դիզած հարստութիւնը պանկեցուցած ըլլալով Ֆրանսայի դրամատունը՝ 1708—92ի յեղական մեծ դէպքերուն ժամանակ կորոյս այդ հարստութեան

---

սկզբանէ մինչեւ 7րդ դարը: Ինք մեռաւ Օգոս. 27, 1807ին իր Պիկվրի տունին մէջ. իր զաւակը՝ Կարոլոս Մուրատճա տայեար, դեսպան Շուէտի ի Պրուսիա, շարունակեց իր ընդհատուած գործերը, եւ հրատարակեց **Պատմութիւն Մողոլաց**՝ 1824ին եւ **Սեւ ու Կասպից ծովերուն Հիւսիսային երկիրներու վրայ ի Ժ. Դարու** 1828ին: Մուրատճան Տ'Օհսընի վարքը գրող ֆրանսացի պատմագիրը աս դատաստանը կընէ իր գործերուն վրայ. «Տ'Օհսընի պատմական գործերն աշխարհագրական ծանօթութիւններն եւ միջին դարի կես անծանօթ ազգաց վրայ տուած տեղեկութիւնները՝ ճիշդ են. թարգմանած կամ քաղած է խանեւչորս արաբացի թուրք եւ պարսիկ հեղինակներէ, որոնց վրայ համառօտի կը խօսի իր յառաջաբանին մէջ: Իր գործին կէսը չեգնուած է ծանօթութեամբ, որ բուն պատմութեան կցորդ կարեւոր մասն են»: Տե՛ս նաեւ իր վրայ մեր գրածը 1903ի թիւ 5 **Մասիս** հանդէսին մէջ եւ **Սուրբէն Հին Դէմքերու**: Մուրատճայի օսմանեան կայսրութեան պատմութեանէն աղէկ օգտուած է Յովսէփ Համմեր գերմանն իր Օսմանեան Պատմութեան Ա. հատորին մէջ մանաւանդ Օսմանեանց Վանական դրութեան վրայ խօսած տեղուանքը (հտ. Ա. էջ 203):

մեծ մասն ինչպէս և իր կինը. գնաց Փարիզ երկրորդ անգամ և նորէն ամուսնացաւ հոն ազնուական օրիորդի մը հետ, ու ա՛յլ բոլորովին տուաւ ինքզինքը մատենագրական դպրութեանց: Իր հրապարակային ու մատենագրական վերջին անունն էր՝ Աւգէստ Օստեն, և ա՛ս է պատճառն՝ որ Եւրոպացիներն զայն կանուանեն զինքը. Տուէնի մէջ առաւ Օստենի ապատութեան ազտեղան ու պատիւը, ուրկէ՛ իբրև լիազօր դեսպան եկած էր 'ի Կ. Պօլիս: Զանազանից յարած գրել-կարդալու՝ պաշտօնական ու դեսպանական գործերուն մէջ անգամ կզբաղէր գրականութեամբ օրն ամբողջ և՛ օթը ժամ: Արժանիքով՝ Երեմիա Չէլէպիի ու Զամճուղատէ Յակոբ դպիրի նման, իսկ պաշտօնով՝ անոնցմէ շա՛տ վեր անձնաւորութիւն մը[1], որուն անունն յիշուած է նաև արժանաւորապար երևելի արանց եւրոպական բառգիրքերու մէջ: Պատի՛ւ իր յիշատակին:

Նշանաւո՛ր է՝ տարաբնակ մեծանուն Հայերու կարգին՝ Դրանսիլուանիայի մէջ հաստատուած Ազնոց ազգատոհմն ալ. գաղթած արարատեան աշխարհէն 1330ին 'ի Խրիմ, անկէ 1654ին Դրանսիլուանիա: Այս տոհմէ՛ն էր Ստեփանոս Ազնոց Գիւլէր արքեպիսկոպոսը՝[2] Միխիթար-

(1) Դարապատուանքն ու աւանդութեան:

(2) Ազնոց Ստեփանոս Գիւլերի մկրտութեան անունն այլ Անիրայ էր: Իսկ Ազնոց էր նանէ՝ որ Սիմոն Լուրակ ֆրանսացի խաճանային ուսոյց խաչ հայերէն մը: Եւրոպայի քաղաքներ ու իշխանազն անձնաւորութիւնք այցեցին Ազնոց Արքային՝ իր առաջինարանին մէջ եւ մեծապատիւ մեծարեցին զայն, որոնցմէ Աւստրիացւոց Ֆրանչիսկոս կայսրն՝ իր աւագանիին հետ այցելով իրեն ի Ս. Ղազար՝ ընտանի զրուցատրութեններով պատուեց զայն, եւ մեկնած ատենը խանդաղատանքով ըսաւ. «Դրանսիլվանիայի մէջ ես ա՛յ իւր ազգասիրդ. երբ նորէն դառնամ հոն՝ պիտի տանիմ անոնց իւր բարեւներդ». **Վարք Տ. Տ. Ստեփանոսի Ազնոց Գիւլէր** *(Տպագր. ի Վենետիկ 1825 էջ 40):*

եանց (Վենետիկի) երրորդ Արքան ազնուական, որմէ կը սկսի Ս. Ղազարու միաբանութեան բարոյական ու իմացական ոսկեդարը։ Ագոնց Տանուտեարք՝ պատուած են Աւստրիական ինքնակալութիւնէն Հունգար նախարարաց աստիճանակցութեամբ, և իրենց բնակած երեք քաղաքները՝ Պաշպալով, Կեռլէ, Ծուրճով անուանուած են Աստանիկ քաղաք արքունի։

Ստեփանոս Ագոնց արքայի եղբօրորդիներին ու քեռորդիները՝ Թիմիշվար, Պեստ, Լուկոշ և ուրիշ քաղաքներու մէջ եղան գանձապետ ու արքունի խորհրդական[1]։ Դրանսիլվանիոյ Հայոց սովորութեանց և ընտանեկան բարքի վրայ բաւական գաղափար կրնայ տալ հետևեալ խնամախօսական պայմանագիրը, որ իրենց լեզուով grorkif անուանուած են.—

— Գrorkif. Թվին Հայոց ՌՄԷ. (1758), Հոկտ. Գ.

Կամաւն Աստուծոյ կամեցողին բարեաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. եղեւ այս շնորհաւոր հարսանիքն ի յերկիրն Դրանզիլվանիոյ. ի քաղաքն Հայոց (Armenopoli) Կերլա. ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին, որ է օգնական և պահապան ամենայն հաւատացեալ քրիստոնէից. մանաւանդ այս հարսանեացն։ Ի հայրապետութեան հանուրց Քրիստոնէից Սրբազան Պապին Տեառն Տէր Կղէմէսին երեքտասաներորդի. եպիսկոպոսութեան յերկրիս Գերապատիւ Տեառն Տէր Զիկկիւլմնոսին, Արքեպիսկոպոսութեան քաղաքիս գերյարգելի Տեառն Տէր Վրթանեան Ղուկասին. Աւագերիցութեան տեղւոյս Գերյար. Տեառն Տէր Թորոսեան Մինասայ, ընդ իշխանաց վերապատուելի քահանայից։ Եւ ի ժամանակս Գրայուրեան

---

(1) Vita D. D. Stephani Acontii Kover. Venetiis, Typis coenobii. Lazari. 1825 (page, 4—5)։

թագուհւոյն մերոյ Մարիա Թէրէզիային. Եկեղեցականութեան պատուելի Աղաչայ Ծէրրկէին, Յաչիկէին Ակորչայեան. Պիտոյութեան քաղաքի՛ս Պատ. Աղաչայ Ակորչային Համազուլիչեան, ընդ իւր երկոտասան երդուեալ դատաւորաց։

Զոր եկն առաջի օրինաց վերապատուելի քահանայից, և պատուելի տօղխաբաւորաց՝ փեսին հայրն Պատ. Աղաչայ Նիկօլն Շումուլովցու, ընդ կողակցոյն իւր պիխա խաթունին, և խնդրեցին ի Պատ. Աղաչայ Յաչիկէն և իւր կողակցոյնմէ պիքսա Աննուհէն՝ զիւրեանց սիրելի դուստրն զՀռիփսիմէն, իւրեանց սիրելի որդւոյն՝ Ստեփանին՝ ի հալալ ամուսնութիւն, զոր Տէր Աստուած շընորհաւոր արասցէ։

Արդ ես Յաչիկս հետ իմ կողակցոյն Աննուձին, կուտամք մեք մեր սիրելի դստերն Հռիփսիմէին՝ ճհէզ. Նախ, զԱստուծոյ և զծնողական օրհնէնքն. և ապա՝ ոսկեղէն և մարգարեղէն, արծաթեղէն և հագստեղէն. որ է այսչափ. Ա. նշանի մատնի մի Թ. ոսկու, ադամանդով և ռուպինով, պաչխա. Ա. մատնի մի Գ. ոսկու ռուպինով, Ա. լանձուկ մի ԻԸ. ոսկու, իւր ոսկու առւգաղոյն Է. ոսկու։ Ա. արաթէ ոսկէջրած գօտի մի մարգարտեղով ակներով Լ. ոսկու։ Բ. ճուփթ օղ, առջինը Է. ոսկու ռուպինով և ադամանդներով. երկուսում ճուփթը Դ. ոսկու ռուպինով և ադամանդներով։ Բ. Բընա վզի մարգրիտ, առջինը Ը. ջրակ գօրջաներով արթէ. երկուսում բընար՝ Ե. ջրակ այլվի վզի մարգրիտ։ Ի. ջրակ թեւի մարգրիտ Գ. մնդէյ. առջինը կապուտ փորած խատիֆէ կուչայով բրիմուիդ և ոսկը փորով. արաթէ ոսկէջրաց սաւատուն կօճկրտիքներով և կիլապտոնէ կայդներով։ Երկուսում մնդէյը համուսին լիւտպարինէ կուչայով բրիմուիդ կիլապտոնէ կայդներով, սիրմայէ կօճկր-

տիքներով։ Իրեքում մինդէյը ձիձիլիայէ բրիմուխու քիչով արադէ ադէջրած կօճկռտիքներով, Բ. կրծդալ, առջինը դէղին ըշտօֆէ բրիմուխդ քիչով կիլապտօնէ կայդներով։ Երկուսում կրծդալը ձիձիլիայէ բրիմուխդ եանօդով, կիլապտօնէ կայդներով։ Բ. Զէփէչ. առաջինը զարպայէ ոսկու բօնդիչքաներով։ Երկուսումը ու երեքումը կապուտ փորած խատիֆէ բօնդիչքաներով։ Եօթն սուգնա. առջինը կապուտ փորած խատիֆէ իւր գերդօվն իւր կիլապտօնէ ֆիգոյօվն և իւր զարմաճին ըէձէթադիօլէ չուրձօվն։ Երկուսում սուգնան դեղին ըշդօֆէ իւր գերդօվն, և իւր ճերմակ ըէձէէ չուրձօվն։ Երեքում սուգնան տրօկէտէ չիչակներով իւր գերդօվն և իւր ըշլայիրէ չուրձօվն։ Չորսում սուգնան ժանչարի ըշտօտօֆէ իւր գիրդօվն իւր կիլապտօնէ ֆիգօյօվն և իւր չուրձօվն։ Հինգում սուգնան քարմուճին ձիձիլիայէ իւր գերդօվն և իւր չուրձօվն. և իւր կիլապտօնէ ֆիգոյօվն։ Վեցում սուգնան փօշին աղէի զամիլօդէն իւր չուրձօվն և իւր ճերմակ լայպրօվն։ Եօթնում սուգնան համուսին աղէկ զամիլօդէն իւր չուրձօվն։ Պաշխա, Բ. չարձ. Բ. սեւ չար ըէձէ գլխու, Բ. վզի լաչեխ չիչակներով։ Ա. չապիք մը փեսութեան. ԻԴ. չապիք հարսնութեան։ Պաշխա Դ. չապիք ըշլայիրէ և մէկը ըէձէէ։ Բ. օպրուզ։ Դ. սաւան, հինգում սաւանը կաչի։ Դ. ճուֆթ բարձերեսք ճերմակ զուդիչներով, Ա. կնկողին մը Բ. բարձով. Ա. Թուրքի խալի մը. Ա. Թէփսի մը. Ա. մատուկ մը։ Այլ ամելի Աստուած իւմերուստ պարգեւէ։

Դարձեալ կուտանք մեր սիրելի փեսին պաշխշ Ե. գուլիա արմթէ ադէջրած։ Զ. արմթէ գիդալ, և մեր զանկրն մէկ մարդաէ ֆարթա մը ոսկի պօկլարներով որ ըլլան անդաճնալի։

Դարձեալ ես Նիկօլս՝ հետ իմ՝ սիրելի կողակցու

կուտանք մենք երեսջուր մը սիրելի հարսինը Հօփիսին երեսջուր պան հարուր և քսանըհինգ ոսկի, մէկ մանե-լա ոսկու, և մէկ լանցուկ մը 45 ոսկու, որ և ամէնումը մէկտեղ՝ երկու հարուր ոսկի։ Եւ զԱստուծոյ ողորմու-թիւնն կու կամենանք որ անհատ ըլլայ մեր սիրելի որ-դոցն(1)։



Եւ որովհետեւ անգամ մը առած եղանք մեր շրջա-նակին մէջ գրագէտ-ամիրաներն ալ՝ յիշե՛նք նաև իբր այնպիսիներ՝ աղայ Մարգար Շէհրիմանեանը(2), որ թարգ-մանած է Մեծին Ճինկիզխանին պատմութիւնը գրաբար հայերէնի (Տպագր. ի Թրիեստ. ի տպարանի Հարց Մխի-թարեանց, 1788), և Մարգար Խօջենց. Զաքարիան կա—ևթէ երբէք այս երկուքը չեն միեւնոյն Մարգարը, որ նոյն միջոցները (1790-1800) Կ. Պոլիս գտնուելով՝ Բե-րայի գերեզմանատունին մէջ տօն օր մը ունեցած է ի-մաստուն գրուցատրութիւն մը՝ ժամանակին Անատօլու Քազասքէրիին հետ՝ Երրորդութեան վրայ, որ արձանա-գրուած է Ս. Յակոբեանց Սիոն հանդէսին մէջ։ Ունի Հոգեշահ բանից կցախագիր մը տպեալ՝ առ իւր որդին, և առաջին թարգմանութիւն մը Տելեմաքայ արկածքին՝ տպա-գրուած Նոր Նախիջեւան՝ ընդ հովանեաւ երկնահանգէտ Սուրբ Խաչ վանուցն 1793ին։

1799ին կը յիշուին Բինկեանցի մահտեսի Պետրոս ա-միրայ Ադրիանուպոլսի մէջ ու իր որդւոցը՝ Պաղտա-

(1) Տե՛ս **Բազմավէպ** *1873ի:* Պայմանագրիս մէջ անծանօթ եւ օտար բառերը մեկնուած են նոյն Բազմավէպներուն մէջ:

(2) Ասոր սերունդէն կը թուի Կոմսն Յովհաննէս Շէհրիմանեան, որ Սամուէլ Մուրատի կտակակատարութեան մէջ ունի բաւական բաժին:

սար, Ցոլհաննէս, Խաչատուր, որ տպագրել տուած են Սիւնեցիին Ադամ Գիրքը, հիններուն լաւագոյն տաղաչափերուն՝ քերթուածներէն։

Ռուսիոյ մէջ ալ՝ 1789ին ծնած էր Խաչատուր Լազարեանց, Պետրոսեան Յովհաննէսեան Ռուսիոյ, որ նուիրեց իր նախնեաց հիմնած Լազարեան ճեմարանին մեծաքանակ գումարներ, այցած է քանիցս իշխանաբար Եւրոպայի մայրաքաղաքներն ու Փարիզ. վախճանեցաւ բարեաց ծերութեամբ 1871ին Պետերբուրկի մէջ։ Նշանաւոր է նաև ի Թիֆլիս Քամոյեանց վաղեմի տոհմը, որոնց անունով կը կոչուին Թիֆլիսի Տափի բաղի երկու եկեղեցիները։ Երևելի է նաև Ուրֆայի մէջ 18րդ դարին՝ հայազգի Ստեփանոս կամ Փանոս ճարտարապետը, որ շատ սիրելին էր մեծափարթամ Համալոյ օղլու Ահմէտ փաշային. շինեց Ուրֆայի մէջ հինգ նշանաւոր մզկիթ և շատ յորդորուեցաւ թողուլ իր կրօնքն և ազգը մինչև ի վախճան։

1790ին Մադրասի մէջ կը փայլէին կարգ մը հայ մեծատուներ, որոնց մէջ էր նաև Շահամիր Ս. Շահամիրեան, որ տպագրել տուած է Աղեքսանդր Մակեդոնացիի պատմութիւնը։ Նոյնպէս ի Մադրաս Աղայ Եդուարդ Ռաֆայէլ Ղարամեան՝(1) հայր պարոն Աղեքսանդր Ռաֆայէլի Ղարամեան, որոյ արդեամբք և ծախիւք տպագրուած է Ռօլէնի վեց հատոր ընդարձակ Հնախօսութիւնը՝ ճոխ և գեղեցիկ գրաբառ թարգմանութեամբ ի Վենետիկ 1825-1829ին, ինչպէս Հռովմայեցւոց մեծ պատմութիւնը 1816ին։

Այդ միջոցներուն նշանաւոր է դարձեալ Մանուկ պէյ Ռուսճուքցի, որ փայլած է արտաքոյ կարգի թեւարկութիւններով։

---

(1) Սերեալ Ղարամենց ազնուական ցեղէն՝ Նախիջևանի Արբանէկ գիւղը ծնած Խալիկ Ղարամենցմէ։

1799ին առաջնակարգ մեծատուն Հայեր էին ի Կ. Պոլիս՝ Ազնաւուրեան Գասպար, Տագէսեան Յովհաննէս, Լէմոնճեան Յովհաննէս և Կիւլլապեան Յակոբ ագաները:

1800 թուին կը յիշատակուի ի Կ. Պոլիս Ղրիմեցի (ըստ այլ արձանագրութեան մը՝ Վանեցի) Աղայէկեան հաճի Գէորգ Աղայ՝ թարգման ռուսական դեսպանատանն, որ աշխատեցաւ Կաթողիկոս ընտրել տալ Յովսէփ եպիսկոպոսն Արղութեանց, և յաջողեցաւ:

Նոյն թուականներուն յիշուած են ի Գանձակ Արդուեցի Տայինեանք, որոնց սերունդը բնակեցաւ 1842էն առաջ ի Տփղիս. կը համարուին Յովհան Օձնեցի իմաստասէրին տոհմէն: Այս սերունդին վերջին նշանաւոր անդամն եղած է Ստեփաննոս Տայինեանց:

1780էն մինչեւ 1825՝ կը յիշուի նաեւ ի Կ. Պոլիս ժողովրդական Աբրահամ ամիրան(1), որ տպագրել տալէ

---

(1) Իբր հայրական ու հանրական ալ պարագայ մը՝ ներեն մեզի հետաքրքիր ընթերցողներն յաւելուլ հոս՝ որ անընցի տպագրանէր այս ամիրային եղբայրն էր համի Երամ պարեկէր անձնաւորութիւնն՝ հայր Երամեան Կարապետ ու Գէորգ պէյերուն, որ այս վերջինն ալ՝ էր հայր բարձրապատիւ Աբրահամ փաշային, անդամ օսմանեան պետական Խորհուրդին: Այս համի Երամ աղան եւս կը բնակէր Սամաթիա՝ ատենին գործօն Հայերուն հռչակաւոր կեդրոնը, եւ Մոմճը զասկ Յակոբի (մեր հօր կողմէ պապն ու Մոմճը Տէր Յակոբ Սամաթիայի վաղնջուց աւագերէց աղօթամոմունեց՝ **Մոմճը՝** խանութին թոռան թոռը) եւ Դուզումճըն Ղազարոսի հետ թաղին համերաշխ երեւելիներէն էին: Երեքն միասին Համի Երամ աղայ, Մոմճը զասկ Յակոբ, Դուզումճըն Ղազարոս, ընտանի մտերմութեամբ կը հաշուէն՝ որ 1816 Ս. Գէորգի տօնին շաբթուն երեքն ալ մէկմէկ նոր զաւակի տէր պիտի ըլլան. ուստի ուխտ կընեն՝ որ յղացուած երախաներուն երեքին ալ անունն առ յիշատակի **Գէորգ** դնելով նուիրեն անոնք հանրական ծառայութեան: Սակայն Ղալաթիացի անհանդարտ այն մարդը,

ետք իր ծախքովը շատ գիրքեր՝ բացաւ ալ ի Կ. Պոլիս՝ Հասան փաշա խանը՝ տպարան մը իրեն սեպհական. ժամանակին մանաւանդ կրօնական ու պատմական գիրքերուն մեծ մասն եղած են այդ խոշորագիր տպարանէն: Աբրահամ ամիրայի հայրն է Թէրզեանց Սարաֆ Հաճի Օհան աղան՝ մի՛ շտ ակնցի: Աբրահամ ամիրայ, որ Քարաքէհեա ևս կը կոչուէր, ըրած էր նաև մեծագումար կըտակ մը, որ 1830ին Հասգիւղի Ս. Ստեփաննոս եկեղեցիին նորաշինութեանը գործածուեցաւ:

18րդ դարու մէջերը օտար տէրութեանց Կ. Պոլսոյ ներկայացուցիչներուն կողմէն կըլլայ Կ. Պոլսոյ հայ Պատրիարքարանին կարևոր առաջարկ մը, որ կը մերժուի խղճահար խորամտութեամբ մը: Մինչև նոյն ժամանակներն եւրոպական դեսպանք և հիւպատոսք կիջևանէին, բաց ի Ֆրանսական ու թերևս անգղիական դեսպանէն, Կ. Պոլսոյ Թաւուք Բազար մեծ Վէզիր Խանի դիմաց էլչի-խանը (Տե՛ս նաև Յ. Համմէր Պատմ. Օսմանեանց, Թրգմ. J. J. Hellert, հատ. Զ. էջ 117) և որովհետև չէին կրնար իրենց

---

Դուլումճը Ղազարոսի որդին, յառաջիմաբա՛ր երկու շաբաթ առաջ կը ծնի. ու հայրն ալ՝ այս պատճառով՝ կը յայտարարէ իր ընկերներուն թէ պիտի առնէ իր ուխտը պաշտամացոյն անուանադրութեամբ մը, յանի որ Աստուած կը կանիկ սանն եւ հինգ օր առաջ սաղու իրեն զաւակը. միրանչով անհամբեր երախան ալ՝ իրեւ **Քրիստոսի** արագ **տուրին**՝ անունը կը դնէ **Քրիստոստուր**, հոչակաւո՛րն այն այս Ղազարոսեան Քրիստոստուր կէֆէնտին: Իսկ հանի Երամ աղայի եւ Մըմըր զադէ Յակոբի ժամադէտ երախաները՝ ճիշդ հաշուեալ օրին՝ Ս. Գէորգի շաբթուն՝ 1816ին աշխարհ գալով կը մկրտուին երկուքն ալ Գէորգ անունով նոյն Վարագայ Խաչի կիւրակէին մին՝ Երամեան Գէորգ պէյ սեղանաւորը, միւսն՝ հանգուցեալ (1873) հայրս Գէորգ Մըմըրեան, երկուքն ալ երրորդին՝ Քրիստոստուր կէֆէնտիի՝ հետ կըլլան այսպէս **յորդորական ընտրեալ եւ զատուցեալ**: Զայս այսպէ՛ս պատմած է ինծի ինք Քրիստոստուր կէֆէնտի Ղազարոսեան աւանդաբար:

կիներն ալ հետերնին բերել ի Կ. Պոլիս(1)՝ նկատելով Հայ Եկեղեցիին մերձաւորութիւնն Արեւմտեան Եկեղեցիին՝ կառաջարկեն Հայոց Պատրիարքարանին Հայ մեծատուններէ առջին առնել ի հարմնութիւն՝ համակերպելով բաց ամենայնի՝ կրօնական ձեւակերպութեանց. Հայոց Պատրիարքը ժողովելով ամիրայից հետ ի խորհրդակցութիւն՝ կը մերժեն Ֆրէնկութեան պատճառով. դեսպանք կը դիմեն Յունաց Պատրիարքին, որ կընդունի ամենայն սիրով՝ պայմանով որ Որդոտոքս ձեւով կատարուի այդ խնամութիւնը. անկէ ի վեր կը հաստատուի խնամական կցորդութիւն մը Եւրոպացւոց և Յունաց միջեւ, որ Հայոց հետ պիտի ըլլար՝ եթէ Պատրիարքը (Թուլի Զաքարիա Պատրիարք) և մեծատունք չմերժէին:

Ասոնցմէ զատ՝ կան նաև գաղտակիլլիկ (1780-1810) դպրոցաշէն Միրիճանեան Շնորհք ամիրաները, որ նպաստած են Ս. Յարութիւն եկեղեցիին քովի Հիւանդանոցին հիմնարկութեան (1794), և հաստատած են Դպրատուն մը Մայր Եկեղեցւոյ քովն ու Թէրճէր փողոցը՝ Գալփոյ հայ իբր անդրանիկ վարժարաններն հանրային: Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցիին նորաշէն աւազանին ներքին ճակատը դրուած մկրտութեան պատկերին յիշատակարանին մէջ՝ արձանագրուած են Միւթէվէլլի մահտեսի Վարդերես ամիրայ և որդին Յակոբճան աղայ և անոնց փեսան մահտեսի Պետրոս ամիրայ, որոյ որդին Միւթէվէլլի Գրիգոր ամիրայ: Ասոնց օրերն արդէն բա-

(1) Կ. Պոլիսի մէջ տիրող տարազն էր յայնժամ՝ արանցը գալրամ եւ Ճիւպպէ, կանանցը Ֆէրաճէ ու Եաշմաք. Երկ գլխարկաւոր կամ շրջազգեստով մէկը երեւէր փողոցը՝ կը մասնանշէին իբր Էֆրէնճ խորշելի, եւ փողոցի շուները անգամ կը հաչէին հալածելով: Այս եւ ուրիշ նշանակալից պատճառներով Եւրոպական ներկայացուցիչք չէին կրնար իրենց հետ կին բերել Կ. Պոլիս:

ւական պայծառացած էր Տ. Մովսէսի որդի Փափազեան Սիմէոն ամիրան՝ հայր Սարգիս աղային և նշանաւոր Ճանիկ յաղթանդամ ու յաղթադրամ ամիրային, որ անուն հանեց 19րդ դարի առաջին քառորդին մէջ։ Կա՛յ նաև Սուրէնեան Մուրատ ամիրայ մը։



Կեսարացի՝ նախ կօշկակար այս գրագէտ ու մատենագիր Պաղտասար Ա. դպիր յորջորջուած Պատուելիէն ետքը, որ էջմիածնական հին նուիրակի մը ամէնէն ներհուն աշակերտն ու 1700էն մինչև 1758 Պոլսոյ ամենէն բազմահմուտ և բազմավաստակ վարժապետն եղաւ. (1) Ձեռնկալութեամբ իրեն ժամանակակից ամիրաներուն և գրասէր Յովհաննէս Կոլոտ և անոր ձեռնասուն Յակոբ

(1) Ըստ ծերունի Դարբինէյ Պասկունի (Ծաղկաքաղ կենսագրութիւն Ներսէս Ե. Աշտարակեցի կաթողիկոսին, էջ 11—12) այս Պաղտասար Ա. դպիրն՝ Հոլով Յովհաննէսի նաեւ Մխիթար Աբբայի գրական հեղեղէն պահպանած էր ուղիղ հայերէն լեզուն, գրելով եւ տպելով շատ հեղինակութեանց եւ սրբագրութեանց հետ՝ նաեւ երեք հատոր աշխարհաբառ ու գրաբառ քերականութիւն, զոր, կըսէ Դ. Պասկանեան, ծայրէ ծայր իւրացուցած է Հ. Միքայէլ Չամչեան՝ առանց յիշելու իր Պատմութեան մէջ զէթ անունը Պաղտասար Ա. դպիրին: Կաւանդուի թէ գրած էր նաեւ ընդարձակ պատմութիւն մը Հայոց: Այս վաղեմի գրաբառեան դպիրին վարժարանին մէջ ճախարակուեցան՝ Սիմէոն Կաթողիկոս, Բաղեշցի Յարութիւն վարդապետ, Իմաստասէր Պետրոս վարդապետ Բերդումեան, Թագւոր վարժապետ (Ներսէս Ե. Աշտարակեցի Կաթողիկոսին վարժապետը), Աղամալեան, Ղարաբեցին, Բարսեղ Կեսարացի եւ Սահակ Բ. ահագին բռուածքը, որ հակառակորդն էր Զաքարիա Պատրիարքին Կ. Պոլսի: Ըստ այսմ՝ գրականութեան դարագլուխ մը բացած է այս անձնուէր Պաղտասար դպիրը, որով կը կշռէ՝ զէթ գրականօրէն՝ քոչ ամիրայ մը: Պաղտասար դպիր վախճանեցաւ 85 տարուան 1763ին, եւ թաղուեցաւ պատուով Պալըքլըյի գերեզմանատունը:

Նալեան Պատրիարքներուն, հետզհետէ իբրեւ գրագէտ ու լեզուագէտ դպիր փայլեցաւ, Խարբերդցի Ղուկաս լեզուագէտ վարդապետին յաջորդելով արժանաւորապար.(1) 1750էն 1812 անխոնջ աշխատող Պալաթցի Տէր Յովհաննէսեան Գէորգ պատուելին, տեղեակ գրականօրէ՛ն ալ վեց մեծ լեզուներու (եբրայական, յունական, արաբական, պարսկական, լատինական ու հայկական)։ Ինք՝ ամիրաներուն շատ գլուխ ծռող մարդ չէ՛ եղեր ուրիշ հետեւակ պատուելիներու պէս, այլ խորխտ ինքնավստահութեամբ Պալաթի Հրեշտակապետ եկեղեցին քովինայի սենեակին առանձնական բուսակեր ներանձնութեամբ մը՝ բանտարկեր է տարիներո՛վ, օժանելով տոհմային դեռ փոքր մանկութենէն տասնեհինգ հատորի չափ հմայլից գործերով.(2) մինչ Վենետիկի Հ. Արսէն Բագրատունին դեռ աշխարհ եկած անգամ չէր։ Յարութիւն Պէզճեան տպագրել տուած է այս անձին

(1) Այս յաջորդագէտ Ղուկաս վարդապետը՝ շատ անուանի է իբրեւ թարգմանիչ, տաղագիր ու բազմավաստակ. ունի թարգմանած քսան հատորի չափ իր ամէն տեսակ մեկնութիւն Ս. Գրոց, որոնց մեծ մասը ձեռագիր՝ կը մնայ ազգ. մատենադարանը Ղալաթիայի ու Երուսաղէմի Ս. Յակոբեանց թանգարանը. մէկ մասն ալ՝ տպագրուած է ի Կ. Պոլիս եւ ի Վենետիկ։ Միխիթարեանցմէ ու Յովհ. Տէրոյենց պատուելիէն զատ՝ նոր դարերու մէջ չկայ այս անձին չափ թուղթ սեւցուցող հայ գրագէտ, որ կը գործէր ծախսովն եւ յորդորելովն Յակոբ Նալեանի։

(2) Գլխաւորները՝ Պարսկական բառարան (տպուած), Եբրայական թարգմանութիւն մը Սաղմոսի, Աստուածաբանական հատորներ, արաբերէն քերականութիւն մը գրաբար բացատրութեամբ, արաբականէն թարգմանուած աստղագիտութիւն մը, Արիստոտէլի Ոդ. Աշխարհիին գրաբար թարգմանութիւն մը անաւարտ (Ս. Յակոբեանց Երուսաղէմի գրատունը թիւ 1435 մատեան), զոր թարգմանած են նաեւ Դաւիթ Անյաղթ ու գործիս հեղինակն՝ ամբողջապէս։

քանի մը գործերը, ու մենք շատ տեղ պատահած ենք իր կոկիկ ու կարեւոր ձեռագիրներուն։ Սա՛ ինքն ալ իր ժամանակին գրագէտներո՛ւն ամիրան է եղեր, որ Գալաթցի ըլլալուն համար՝ կստորագրէ եղեր Գէորգ դպիր Գաշաքալեան. Արժանայիշատակ Տ. Յովհաննէս Ա. քահանայ Հիւնքեարպէյէնտեան՝ մասնաւոր ազգականն էր Գէորգ Յովհաննէսեան այս դպիրին ու թերեւս անոր նախանձայուզութեամբը մղուած բանասիրական ու լեզուագիտական դժուար աշխատութեանց։

Գէորգ դպիրին աջէն ձախէն զոյգ կընթանան՝ Մելքիսեդ դպիր ու Հոգելից իմաստասէր բառարանն՝ հանարար հայ-հռոմ., որ թարգմանուած է՝ ի մէջ այլոց՝ յունականէն Վաստակ ոսկեղէն ըսուած (ձեռագիր) կարեւոր գիրք մը, եւ Սարգիս դպիր Յովհաննէսեան, որ գրած է Կ. Պոլսոյ վրայ հետաքրքրական տեղագրութիւն մը՝ Բիզանդէն մինչեւ իր օրերը պատմական անցքերով. ոճը՝ կոկիկ եւ լեզուն՝ պարզեփուն գրաբար մըն է։ Գալաթի այս փիլիսոփաներուն թիկունքն էին Պեզճեան Յարութիւն ամիրայ եւ Հովուեանց Մարտիրոս աղայ՝ թոռն Ապուչէխցի արդիւնաւոր հօճայ Յարութիւնի։[1] Իրենց յաջորդեցին իմաստասիրաբար 19րդ դարին մէջ՝ Գրիգոր Փէշտըմալճեան պատուելին եւ Զամուրճեան, որ ապա (1857) Տէրոյենց կոչուեցաւ. նաեւ մասամբ Յովսէփ Մալէզեան պատուելին՝ իբրեւ քաջ հայկաբան եւ Խ. Պ. Միսաքեան՝ պատմագէտ բանասէր ու քննադատ, որ քսան եւ չորս տարի ուսումնասիրեց Փարիզի մէջ եւ եկաւ վերջին տարիներն անցուց ի Կ. Պոլիս՝ իր ծննդավայրն Սկիւտար, ուր վախճանեցաւ 1891ին։

18րդ դարին վերջերը՝ պատմական է անկման Զօփենց

(1) Ձեռագիր Վաստակ Ոսկեղէն Սամուէլ Թաքքիին (էջ 1 եւ 92)։

մահտեսի Անտօն ամիրան, որ Երուսաղէմ գնացած էր մեծ վէզիրին հետ, և Մեծն Նապոլէոնի Սուրիական արշաւանքին առեն՝ Պաղեստինի բնիկներէն Հայերուն և Երուսաղէմի վանքերուն կրած վնասները թեթեւցունելու համար՝ խնդրանօք Երուսաղէմի Պետրոս Պատրիարքին՝ միջնորդ եղաւ տեղւոյն մեծ բդեաշխին և Ս. Յակոբեանց Միաբանութեան: Զօփենցի հետ կը յիշուին՝ Մառէնի Ստեփան և իր ընկեր Փիլիպպոս ամիրաները: Յիշուած է նաև մեծազգի յորջորջուած Պիլէզիկճի Յովսէփ աղայ մը՝ հին Արարատեան գաւառներու գաղթականներէն սերեալ, որ 14 ուստր և դուստր զաւակի տէր եղած էր, այնպէս որ Կ. Պոլսոյ մէջ կըրնանք համարել ամէնէն բազմանդամ ազգատոհմը՝ որ կցորդութիւն ունէր ամէն մեծ ու միջակային ընտանիքներու հետ, խնամութեամբ հարսնութեամբ և փեսայութեամբ՝ Տատեանցմէ, Պալեանցմէ մինչև էմնաֆ ընտանիքներու խաւերը, ծայրագոյն երջանկութիւններէ մինչև յետին միպակուն թշուառութիւններու մէջ տարուբերելով յանատատան... Իր ընտանեկան գերեզմանն է Սկիւտարի գերեզմանատունին կեդրոնը: 1793ին շինուեցաւ Աղատը գիւղին մէջ մեծ վառօդարան մը և վառօդապետ կարգուեցաւ հոն հաճի Տատ Առաքել ամիրայ:

1800ին կը յիշուին ի Հունգարիա ականաւոր վաճառական՝ Եւդոկիացի Դըլըճեանց աղայ Մելքոն և իր որդին Պաղտասար Սարգէլեան, որ օգնած ալ են ժամանակին տպագրական հրատարակութեանց:

1789ին կը յիշուին Կիպրական առաջնորդութեան յիշատակարանի մը մէջ[1] բարեպաշտօն Մահտեսի Յարութիւն և Սարգիս ամիրաներ ՚ի Կիպրոս, որ հայթայթեցին

[1] Տե՛ս Կիպրոս Կղզի (էջ 72):

և նուիրեցին տեղւոյն առաջնորդարանին՝ կալուածներ ու յատուկ վայր։ Դարձեալ 'ի Կիպրոս 1816ին կը յիշուին Բալուցի Սարաֆ Յարութիւն ամիրայ Անտոնեան, նշանաւոր եղած են հոն՝ ԺԸրդ դարի վերջերէն ԺԹրդ դարն՝ Ամլար օղլու, կեսարացի Հոճայ Յարութիւն, Յովակիմեան Յարութիւն և Սարգիս, Պօղոս Երամեան զմիւռնացի, Սիմէոն խըրիմցի՝ Միւթէվէլլի, Յարութիւն Երամեան, Հայրապետ Մելիքեան և Յակոբ Խալֆա, որ կը բնակէր 'ի Պէյլէր-Պէյ և որ թևարկեց Գալուստ Եպս. նուիրակին[1]։



[1] Պատմ. Կաթողիկոսաց Էջմիածնի. Մսեր Մագիստրոս Մսերեանց:

# Ը.

Ամիրաներուն, հայ մեծատուններուն, իշխանաւոր-ներուն և այլ տիտղոսաւորներուն ծագումն և շարունակութիւնը կը հասնի՝ իրենց ժամանակակից նշանաւոր պատրիարքներուն ու կցորդ գրագէտներուն և դպիրներով՝ այս տարտամ գիծերուն հետ մինչև 1800 թուականը, մինչ անոնք կըսկսին առնել աւելի՛ գործօն աւելի՛ վառ դիրք մը անձնական ու մերթ հանրական կամ, որպէս զի այսպէս մտածենք ու ըսենք, ժամանակի մերձաւորութեամբ կերևին այսպէս։

Իրենց ծագումին տուն ու գաւառներու և լեռնային նահանգներու մէջ՝ ընդարձակ սահմաններու տիրապետող և հրամայեցող՝ իրենց տակաւ բազմանալուն ժամանակով մեզի մօտենալուն և քաղաքներու՝ մանաւանդ մայրաքաղաքներու՝ մէջ բնակելուն և գործելուն համեմատութեամբ տակաւ սահմանափակուելով, իրենց գործունէութիւններն հետզհետէ կամփոփուին արուարձաններու և թաղերու մէջ, և իրենց գիտութիւնն՝ աւելի ճարտարարուեստական ու սեղանաւորական անհատային գործերու մէջ կը գտնէ լայն ճարակ մը անմրցակից. որով կը տիրանան մեծ հարստութեանց և առանձին հեղինակութեանց։

18րդ դարին անձկացեալ այս ճարպիկ ամիրաներն՝ ընդհանրապէս աւանդական պարզ մարդիկ եղած ըլլալ կը թուին. աւանդութիւնն յիշատակարաններն ու տոհմային նախապետական հանգամանքն ալ կը ցուցնեն՝ որ անոնց մէջ պակաս չէին եղեր դպրոցասէր ընտանեսէր ու եկեղե-

ցանէր մարդիկ։ Անոնք ընդհանրապէս մանիսէսփ[1] էին եղեր, ընդհանրապէս երկիւղած (pieux) ու բարեհոգի, թէպէտ մեծ մասով անուսումն թէպէտ ըստ ամենայնի անոնց ալ, այլ գործնապէս խորագէտ ու ճնճ՛մն իրենց գործին եւ տունին՝ չրջավայրին թոյլատրած ու ներգործած արեւելեան համեմատութեամբ։

Իրենց բնակութեան տեղերն էին եղեր ու հասարակ՝ Սկիւտար, Օրթագիւղ, Հասգիւղ, մերթ Սամաթիա, Գուրուչէշմէ, Պալաթ, Գում գաբու եւ Եէնի գաբու եւ այլ որ նշանաւոր եկեղեցի մը կամ հայ բազմութիւն մը կը գտնուէր։ Իսկ գաւառներու մէջ՝ վանքերու եւ Առաջնորդարաններու մօտերն ու այգեւէտ արուարձանները։ Իրենց կենցաղը մայրաքաղաքին մէջ՝ ըլլալով համդերձ տանուտիրական ու այլամերժ՝ զերծ չէ մնացած ստոր կիրքերէ, արծաթսիրութենէ, փառամոլութենէ ու նախանձընդդէմ հակառակութիւններէ, որ պատճառ եղած են իրենց բարեկեցիկ թշուառութեանց։ Ժամանակակից հայր Ղուկաս Ինճիճեան՝ Կ. Պոլսեցի Մխիթարեանը՝ քաջ կը նկարագրէ այս կենցաղը քանի մը բանաստեղծական տողերով.—

Ունին հեշտալի՝ տեղիս ի զրնին.
Ընդ նեղուց ծովուն՝ յամարանոցին,
Այլ չունին ինչ սիրտ՝ կեանք բանականին
Ըզմայլել նովաւ՝ ի գործ Արարչին։

Առաքինութիւնք՝ բարոյականին,
Կրթողականօք՝ ըզկիրս սանձողին,
Օտար են սոցա՝ յանօգուտ սակին,
Որք են դեղք կենաց՝ երկարօղք նըմին։

---

(1) Աւելի ամիրաներուն եւ մեծատուններուն յատկացած անուն մը բարեպաշտական։

Սատանան գոհար՝ առ ի զարդ անձին,
Որ յինքեան է զարդ՝ ո՛չ բառացողին,
Մերժեն եղբարին՝ բարոյականին,
Որ մարդոյն է զարդ՝ ո՛չ ինքըն ինքնին,
Ոմանց լրացեալք՝ և յաւելորդին,
Ողբան չունել ինչ՝ ըզկարեւորին,
Քաղց ծարաւ ընչից՝ նախանձ ընկերին,
Ուրինչ ցուցանէ՝ զոր յանձին ունին:
Այլ արդեամբք ողբան՝ չունել զոր ունին,
Զի ո՛չ վայելեն՝ զինչսն զոր ունին,
Ունին իղձ անյագ՝ փոխանակ ընչին,
Ոչ իշխեն ընչին՝ այլ ըղձից իշխին

Անցի նաւակաւ ընդ ծով քաղաքին,
Տեսի և ըզտունս՝ զամարանոցին,
Շըքեղ գեղեցիկ՝ ձգեալ առ ծովին,
Մինչ երանի տալ՝ բընակչաց նոցին:
Մըտի շըջեցայ՝ մի մի ըստ կարգին,
Քննեցի ըզկայս՝ ներքին վիճակին,
Մըտի անդորրում՝ առանց ինչ վշտին,
Եկի զատնայցեալ՝ տխուր վշտագին:
Զի զաղէտս լուայ՝ ինձ կսկըծելին,
Ցիւրաքանչիւրոց՝ զհեծումն ցաւագին,
Կարծէի զբօսնուլ՝ ի խօսից նոցին,
Լըցայ թախծութեամբ՝ և ես ընդ նոսին:
Ոմըն վշտանայր՝ յախտից ընկերին,
Այլ ոմն ի հաղթից՝ հակառակորդին,
Ոմըն ի չարեաց իւր պարտապանին,
Այլ ոմն ի վարձուց՝ իւր տան վարձկանին:
Թողուն զանեսութիւն՝ իւրեանց պարտիզին,
Մատչին զանգատել՝ առ անձուկ սրտին,

*Ազգական բանայ՝ զախտ ազգականին,*
*Բարեկամ ըզգայ՝ խոր բարեկամին.*
*Այրն ըզհեզգութիւն՝ զանգործ կողակցին,*
*Կինն ըզխստութիւն՝ դժնեայ լծակցին,*
*Եղբայր ըզզըրկումն՝ գեղբօր մըտերմին,*
*Մեծըն ըզփոքուն՝ փոքրըն ըզմեծին։*(1)

*Այո՛, և այսպէս է միշտ հարո՛ւստ ու քաղաքաբընակ կեանքի մէջ մանաւանդ։*

* * *

*Այսպէս՝ ուրեմն գալով 19րդ դարին սկիզբը՝ արհեստաւոր, ճարտարապետ, մանաւանդ սեղանաւոր ամիրաները՝ ընդհանրապէս ակնցի, կը տեսնենք որ անոնք՝ ամփոփելով իրենց ատրատամ սահմանները՝ կազմեն որոշ ուղղութիւն մը անհատական և կը շողան յատուկ փայլով՝ մանաւանդ յիշատակի արժանի Վեհ. Սուլթան Մահմուտ Բ.-ի և Սուլթան Աբտ-իւլ-Մէճիտի օրերուն։ Այդ օրերուն առհմաւէր ամիրաներն են՝ որ (1829ին), առաջնորդութեամբ Կ. Պոլսոյ Երուսաղէմական փոխանորդ Զաքարիա Եպիսկոպոսի, նորոգեցին Ս. գերեզմանին վրայ Հայոց պատարագելուն հնագոյն հրովարտակն ալ, ըստ որում սկսան պատարագել հոն՝ նախ Յոյնք ապա Հայք և ապա Լատինք։ Այս հրովարտակը գործադրութեան սկսաւ յԵրուսաղէմ Ադրիանուպոլսեցի Պօղոս Գրիգորեան արքեպիսկոպոսին ձեռքով*(2)։

(1) **Ամսօրանոց Բիւզանդեան**, *տպագր. ի Վենետիկ 1794. (էջ 241—245)։*

(2) *19րդ դարի ամենեն մեծագործ իմաստուն եւ մատենագիր Պատրիարքը Կ. Պոլսի, որ հեղինակած է* **Թանգարան խրատու**, **Զանազանութիւն հինգ դարուց** *եւ* **Համառօտ Պատմութիւն Ս. Գրոց** *գործերը։*

Տասն և իններորդ դարու Կ. Պոլսոյ այս ամիրաները՝ կըսկսին ա՛լ Տէրութեան պաշտօնեաներու և բդեաշխներու հետ ընել մեծ գործառնութիւններ՝ հաղորդակցութեանց, դիւտերու, շոգենաւներու, տպագրութեանց և այլոց յառաջդիմող ուրիշ դիւրութեանց չափով՝ տակաւ կրկնապատկելով իրենց գիտութիւնն ազդեցութիւնն և հարստութիւնը՝ տանուտիրական իրենց սահմանափակ շըրջանակին մէջ: Իրենց որդիներուն ձեռքով կըսկսի արեւմըտեան ոճերու և գաղափարներու նախնական աղօտ չփում մը, և արեւմտեանէ ու արեւելեանէ խառնուածոյ միջին կենցաղ մը, նմանագործ արուեստագիտութիւն մը, կառավարելու և կառավարուելու տարազ մը ամփոփ՝ հեղհեղուկ մարմին կազմէ, որուն բուռական ալ կընդգրկման հիներէն մնացած մեծատուններն և որուն մեծապէս կը նպաստեն Պոլսոյ լուսաւորչական և հռոմէական Հայերուն նոր երեւելիներն և Վենետիկի պոլսեցի կիրթ Մխիթարեաններն ու անոնց աշակերտները: Անոնցմէ բուռական դասը՝ Ջատանեանց-Տատեանց տունը՝ կը ճանչցուի իբրեւ վառօդապետ Տէրութեան իր հնարագիտութեամբն և ճարպիկութեամբ, ու Պալեանց տունը՝ իբրեւ ճարտարապետ արքունի իր հաւատարիմ գործառնութիւններովն և ճարտարութիւններով, առաջինն՝ հարիւր քառասունի մօտ, իսկ երկրորդն՝ երկու հարիւրէ աւելի տարուան(1) ընտանիքներ: Պալեանց յաջորդաբար

(1) Պալեանց նախահայրն է Կարամանի Պէլէն գիւղէն Պալի Խալֆա 1682ին Կ. Պոլիս եկած, որ ապա Բաբերդէն սերունդ ունեցած է Գրիգոր Խալֆան. ինք վախճանած է 1725ին. իր որդին է Մինաս Խալֆա՝ վախճանեալ 1730ին, որ Պոլիս գալով միա՛յն 5 տարի արքունի ճարտարապետութիւն ըրած է. անոր որդին Մակար Խալֆա՝ գործունեայ եւ հանճարեղ, որ՝ ի մէջ այլոց՝ շինած է Նուրի Օսմանիյէ մզկիթը. իր որդին է Պապա Գրիգոր Խալֆան՝ ծնեալ ի Բաբերդ:

ներկայացուցիչն էր Գրիգոր ամիրայ Պալեան, բարի՛ ու պարզ՛ մարդը, որ 1790էն մինչեւ 1832 փայլող ու փայլեցնող մեծ ամիրաներէն մին եղած է. Ինք՝ իր նահապետական մարդասիրութեամբն և ուսումնասէր հնարագիտութեամբ՝ սիրելի եղած էր թէ՛ Օսմանեան Վեհապետին թէ՛ աւագանիին թէ՛ հայ Պատրիարքներուն և թէ՛ մեծերուն և ժողովուրդին։ Իր ճարտարապետական ձեռնկալուն եղած է իր հայրը Մակար Քալֆան, ինչպէս ինք ալ շատերուն՝ մանաւանդ Դաղէզ Յարութիւն ամիրային՝ ձեռքէն բռնած է, ու ներկայացուցած է զայն Օսմանեան Վեհապետին՝ իբր հանճարեղ ու հաւատարիմ խորհրդական, երբ Սուլթան Մահմուտ կայսրն ի խնդիր էր այդպիսի անձի մը։ Իբր արքունի ճարտարապետ՝ մե՛ծ էր Գրիգոր Քալֆայի անունն և գործն Օսմանեան մայրաքաղաքին մէջ, և իր գործակալներն երկրորդականներն ու գործաւորները լէգէո՛ն մը կը կազմէին, որոնց կը կենցաղակցէր ու կը մարդասիրէր ալ մանրմանաբար՝ պահելով հանդերձ իր ծանր շուքն և հեղինակութիւնը։

Իր տունն ալ՝ հինաւուրց զուարթ հիւրասիրութեամբ կը պատուէին միշտ ժամանակին կարեւոր մարդիկը՝ գրագէտ, աշխարհական, եկեղեցական ու արուեստագէտ, ինչպէս այս բացսիրտ հիւրասիրութիւնն ապացոյց տուաւ նաև ճարտարապետականներուն համարակալ գրագետն (Օտեան) Նազրէճի Պօղոս աղայ Պետրոսեան[1]։

---

([1]) Նազրէճի Պօղոս աղայ՝ ի մէջ այլ բարեգործութեանց՝ կտակած ալ է Կ. Պոլսոյ Գարակէօմրիւկի եկեղեցւոյն 75,500 ղրշ.։

## Թ.

Գրիգոր ամիրայ Պալեանի շինուածապետութեամբ կառուցուած են՝ Սէրայ-Պուրնուի հին պալատը(1), Տոլմապահճէի ու Չրաղանի այժմու պալատներուն նախորդ փայտակերտ պալատները, Պէյլէրպէյիի հին փայտակերտ պալատը, Պէլկրատի պէնտերը, նաև Սէյիտիյէ ընդարձակ զօրանոցն ի Հայտար Փաշայ և ուրիշ զօրանոցներ ու հոմանոցներ, որոնց մէկ քանին կը կենան տակաւին, Պոլսոյ հին Եանըքըն Քէօշքին ու Թօփհանէյի բարձրագմբէթ մզկիթը(2): Ինք է պայծառացնողը Պալեանց անունին և անոնց մէջ եղած է առաջին խոհեմ ամիրան, որ ձայն ունեցած է պատրիարքական ու ազգային գործերու ալ մէջ, ուր ժրացած է ջերմեռանդութեամբ և պաշտպան կեցած է խեղճերու, անկեալներու, վանքերու և վարժարաններու: Անգամ մըն ալ սխալ հասկցողութեամբ մը տարագիր ալ գնացած է Տարսոն և Կեսարիա, ու անդէն ընտիր ապուխտի մը շնորհիւ, զոր Դազէզ Յարութիւն ընծայած էր բարեխօսաբար Վեհ. Սուլթանին՝ ի դիմաց Պալեան Գրիգորի, ազատած է քիչ ատենէն ու Կ. Պոլիս դարձած է Եղիա եպիսկոպոսի հետ:

---

(1) Որ այրեցաւ 19րդ դարու կէսին ատենին:

(2) Թէև Նուրի-Օսմանիյէ մզկիթն ու Թօփհանէյի այս մզկիթը շինած են բացառութեամբ մը Հայ ճարտարապետներ, որ միա՛յն պալատի կառուցողներ էին. իսկ մզկիթներն՝ որ կերեւին Կ. Պոլսի բարձրագոյն եւ գեղեցկագոյն կէտերուն վրայ՝ կառուցուած են մեծ մասով յոյն ճարտարապետներու ձեռքով, ինչպէս կը գրէ Կոստանդիոս Աներհուն յոյն պատրիարքը Կ. Պոլսի 1834ին (**Ստորագրութիւն Հին ու Նոր Կ. Պոլսի**, մասն Բ. Գլ. Բ.):

Գրիգոր ամիրան հաստատած էր իր բնակութիւնն Սկիւտար Պիւլպիւլ Տէրէյի բլուրին առաջին սարահարթին վրայ, ուր կերեւի այժմիկ եաւադարեան կիսաւեր սօսին իր պարտիզին անկիւնը։ Պատճառով մը դող եղնելով՝ կաթուածահար վախճանած է հոն 1832ին։

Բարեհամբոյր և աղքատասէր այս մարդ՝ շատ կիւրակէ իր Պաղլար Պաշըյի ընդարձակ այգիին մէջ խնճոյք կուտայ եղեր իր առորական բանուորներուն և անոնց ղեկներուն՝ ճաշակցութեամբ և զուարթ բարեկամութեամբ ուրախելով անոնք։ Ժամանակին ճոխ և ջոջ Հայերը՝ նոյն ինք Ղազէզ անգամ՝ չա՛տ բան կը պարտին Պալեան Գրիգորի, 19րդ դարի սկիզբի առաջին ամիրային։ Ի՞նչ հիմը դրած էր այն համբաւին ու հարուստ աղնուականութեան, որ ասոր պարծանքն եղան իր որդիներուն և ճարտարապետ թոռներուն։ Իր մեծ թոռը՝ Նիկողոս պէյ Պալեան՝ մանրանկար վերկենցաղում մըն է եղեր իր բարքին ու բնութեան, կըսեն. վերկենցաղո՛ւմ մը՝ վարդի նման վաղորդայնի մը շափ նշողերով[1]....։ Ծնած էր 1825ին. չինած է Տոլմա-Պահճէյի սէրային հոյակապ տիվան-խանէն, քանի մը գեղեցիկ քէօշկեր, Պոլիսի նոր քարուկիր Եանըկըն-քէօշկին ու լայնատարր Ղալաթա-Սէրային։

Գրիգոր ամիրայի անմիջապէս յաջորդած է՝ իր դեռ շատ երիտասարդ որդին Կարապետ Խալֆայ, երկիւղած ամիրան, որուն ակնարկեցինք այս գործին սկիզբը։

Այս միջոցներուն կը պայծառանար իբրեւ ուսուցչապետ ու մատենագիր ի Փարիզ Շահան-Ջրպետ եղեւացին, որ կը դասախօսէր հայերէն լեզուն և մատենագրութիւնը Քոլէժ տը Ֆրանսի մէջ։ Ինքն էր սերեալ

---

(1) Յողբերգն մեռմանկան Մալկոյ ֆրանսացի քերթողին։

Շնորհալիին եղբայր Շահան իշխանէն ու ծնած էր 1772 Դեկտ. 16ին՝ պարոն Սարգիս Շահանէն եւ Մարիամ Ալաբեանէն, ու մանկութենէն աշակերտած էր Բագիշեցի Աւգալեան Պօղոս վարդապետին, որ առաջնորդ էր Եդեսիոյ ու վերջին շառաւիղ Ամրդոլու վանքին վարդապետներուն. 1789ին անցաւ իր ծնողաց հետ Իտալիա և այս անգամ Փլորենտիա Լիվորնոյ և Ճենուա՝ անդադար պարապելով լեզուագիտութեան բանասիրութեան և օրէնսգիտութեան. այս տեսութիւն մը ունեցաւ Նաբոլէոն զօրավարին և ուրիշ Ֆրանսացի երեւելի պաշտօնատարներու հետ, որոնցմէ հրաւիրուեցաւ ի Ֆրանսա և գրատունին մէջ դրուեցաւ պաշտօնի մը. այս Փարիզի Արեւելեան լեզուներու վարժարանին մէջ դասատու եղաւ մինչեւ 1826։ Ասկէ հրաժարեցաւ և քանի մը տարի ալ դասախօսեց Թիֆլիզ Ներսէսեան վարժարանին մէջ։ Հաւսկ ուրեմն՝ մասնաւոր թոշակով Ռուսիոյ Տէրութեան՝ հայ և ֆրանսական լեզուներու դասարան մը բացաւ Թիֆլիզի մէջ, ուր և վախճանեցաւ 1838ին։ Իր գործերն են՝ Հնախօսութիւն Ասիոյ հին պատմութեան վրայ, Մատթէոս երիցուն Ուռհայեցւոյ պատմութեան քաղուածք. Ցուցակ ընդհանուր Փոքր-Ասիոյ 1813. Յիշատակարան հին Հայոց վրայ. Կացութիւն այժմեան թագաւորութեան Պարսից 1816. Յիշատակարան ծագման եւ յառաջդիմութեան Թուրքաց։



19րդ դարին մէջ կըսկսին անուն հանել ի Ռուսաստան՝ Թամամշեանք, Արծրունեանք, Խէրոդինեանք, Թայիրեանք, Մանդինեանք(1), բժիշկ Ռոմանոս Նաւթիրեան, Մա-

(1) Ժամանակագրութիւն Սարգսի Սանահնեցւոյ Ջալալեանց Մասն Բ. (էջ 56—75)

կուսցի աղայ Յովհաննէսն, Նախիջեւանցի Յ. Ղալխպեան(1), որ հիմնեց Ղալխպեան ուսումնարանն ի Ռուսահայս՝ մասամբ՝ Ներսէս Կաթողիկոսի իրեն ուղղած և մասամբ իր իսկ դրամէն, Լորիս Մէլիքով, Ազուլեցի Պօղոս Չլոմխանեան Աղամալեանց, բարերարներ կը յիշուին նաև Մարիեամ Կազազկեանց ու Պապովեան, մանաւանդ վերջերս Մանդաշեան մեծ վաճառականը, որ մեծ նպաստներ արւաւ տոհմային հաստատութեանց ու շինեց Փարիզի Հայոց Եկեղեցին, իր հարստութիւնը կը կարծուի 5,000,000 ոսկիի չափ: Անգղիայի մէջ պանքայի մը հաստատութեան ալ մեծապատիւ նախագահնարկն ըլլալու վրայ է (1906):

1730ի տարիներն ալ անուանի եղած է Ռուսահայոց մէջ Աշխարան աղայ Բէհբուդեանց, նոյնպէս իր որդին Քալանդար աղայ: Ռուսահայ վաճառական Շամախեցի Ենովք Բուդաղեան, վախճանեալ 1900 Ապրիլ 12ին Օտէսայի մէջ, նշանաւո՛ր է իր առատութեամբը. մեծ մասով Հայերու նուիրած և կտակած նպաստներուն գումարն է 82000 ռուս. ոսկի: Աստրախանի մէջ ալ երևելի են նշանաւոր վաճառական աղայ Դանիէլ Սարգըսեան, որուն հարստութիւնը կը համէր եօթն միլիոնի (հաւանաբար՝ րուպլի): Ասոր որդիներն ալ Գրիգոր և Մկրտիչ՝ նշանաւոր եղան իրենց հարստութեամբն ու բարեգործութիւններով: Նոյն քաղաքէն անուանի էին նաև Գաբրիէլ Աղաջանեանց և Ջանով Սանասինեանց(2): Վերջերը կը յիշուին նաև Յովսէփ Էֆէնտիեանց, որ կտակեց 60000 րուպլի Թիֆլիսի Ներսէսեան վարժարանին, և Տիկին

(1) Որուն ծախքով տպուած են, ի մէջ այլոց, Յովհ. Տէրոյենցի երեք հատոր Իրաւախոհներ:

(2) Համապատմութիւն Սարգսի Սանահնեցւոյ Զալալեանց. Մասն Բ. (էջ 409):

կատարինէ Լազարեանց, որ նուիրած է 70000 րուբլի Լազարեան ճեմարանին և Բեդրուպուրկի ու Մոսկուայի հայ եկեղեցիներուն։

Եւ որպէսզի փակագծօրէն յիշած ըլլանք մաս մը վերջին դարի դրամէտ ու մեծատուն Ռուսահայերէն՝ որչափ կրցած ենք ձեռք ձգել վաւերական ու հաստատուն անունով ազնուականութեանց՝ կարձանագրենք շարունակաբար հոս 1820էն 60 Ռուսահայերուն ծանօթ երեւելեաց տիտղոսներն ու զարմերն ալ. վերոյիշեալ աղայ Գէորգ Մանդինեանք՝ Թայիրեանց և Խէրադինեանց հետ՝ Տփղիսի մեծ ուսումնարանին հոգաբարձուներն էին և վերակացու ալ եղան՝ երեքը միասին՝ Թէլէթի հայական վանքին նորոգ շինութեան (1)։ Աղէքսանդր Ղազարեան Թայիրեանց՝ աստիճանաւոր և ասպետ Ռուսաց կայսրութեան, որ ի մէջ այլ բարերարութեանց՝ տպագրել տուած է Ջալալեանց Սարգիս արքեպիսկոպոսի ճանապարհորդութիւնը։ Թայիրեանք՝ ընտանեօք հաստատեալ նշանաւոր ազգատոհմ մըն էին և վերակացու մեծն Ջաքարիայի վանք. առաջին վերակացուին անունն էր՝ Սարգիս, անոր որդիին անունը՝ Բուրդ, անոր որդիինը՝ Վաչէ, որուն երկու որդիներուն անունները էին Համամ և Թայիր՝ նախահայրք Համամեանց ու Թայիրեանց։ Այս երկեակ ազատանդք՝ ունէին հիւսիսային գաւառներու մէջ, հին ատենները, աստիճանութեան պատիւն՝ ի շուք իրենց հինաւուրց տոհմին։



1840ին կը յիշուի նաև ի Ռուսահայս Գէորգ Արծրունի, որ նուիրած է տպարան մը Տփխիսի Ներսէսեան

(1) Ճանապարհորդութիւն Սարգսի Սանահնեցւոյ Ջալալեանց, Մասն Բ. (Էջ 74—75 եւ 361)։

վարժարանին։ 1800-1860ին կը յիշուին՝ դարձեալ հին Արղութեանց տոհմէն կնիազ Վասիլ Նիկողոս Արղութեանց, կնիազ Աղեքսանդր Նիկողոս Արղութեանց, կնիազ Շահրաման Արղութեանց, կնիազ Յովհան Արղութեանց, կնիազ Միքայէլ Արղութեանց, կնիազ Վասիլ Ռոմանոսեան Արղութեանց. Գրասէր Աղաֆոն աղայ Դաւթեան Աքիմեանց, և Շահամիրեանց ազգատոհմն ի Տփխիս, պաշտօնեայ բժշկապետ Յարութիւն Յովհաննէսեան, Յարութիւն Այվազեանց, Յովհաննէս Ղայթմազեան, Միքայէլ Տէր Ստեփանեան, Հեճուր Հեճուրեանց, Գաբրիէլ Մելգումեանց եայլն։

Ամիրապատի գրագէտ մատենագիր մին էր նաև Ռուսահայոց մէջ Մկրտիչ Էմինեան՝ հեղինակ ռուսերէն ներհուն գործերու, որուն չքնաղապատկեր վարքը գրուած է ոճով՝ ազնիւ Շահազիզեան Լումայ հանդէսին մէջ և որուն Հայկական հետազօտութեան վրայ հմտալից ձեռնարկին աշխարհաբարի թարգմանած է Յովհ. Տէրոյենց՝ լոյս տեսած Արմաշի վանքին հին տպարանէն։ Իր կարգէն կը համարուի նաև Վսեմ. Կարապետ Եզեանց ալ՝ խնկական զաղտնի խորհրդական Ռուսիոյ և մագիստրոս արևելեան լեզուներու, բարեսէր ու բանասէր անձնաւորութիւն մը, որ առիթ եղաւ Մ. Սանասարեանց և Յովսէփ Իզմիրեանց գեղեցիկ կտակներուն։ Վախճանեցաւ 1905ին և յիշատակուեցաւ շատ հեռաւոր տեղուանք եկեղեցական մեծ սգահանդէսներով։ Կ. Եզեանցի հրատարակած գործերն են.—

1. Հին կեանք (Ռուսերէն)։

2. Արդի հայագիտութեան վիճակը։

3. Կրօնական միութիւն Հայոց Լեհաստանի ընդ Եկեղեցւոյն Հռոմայ (գրաբար)։

4. Ռուս տէրութեան յարաբերութիւնները (Ռուսերէն ստուար հատոր)։

5. Էջմիածինի կաթողիկոսներու յարաբերութիւնները Ռուս պետութեան հետ (Ռուսերէն)։

6. Ղեւոնդ, Սաղիկ՝ ներհուն ծանօթութիւններով։

Աստրախանէն կա՛յ նաեւ պարոն Աղաբաբեանց, որ կառուցած էր դպրոց մըն ալ և իր ծախքովը կուսանէին հոն 12 աշակերտ՝ վարժապետութեամբ պոլսեցի Սերովբէ Պատկանեանի։ Հռչակուած է Ջուղայեցի աղայ Յօհանջան մըն ալ։ Այս միջոցին փայլեցաւ նաեւ ի Հնդիկս պարոն Աբրահամ Աղամուր՝ փեսայ Սամուէլ Մուրատեանց։

Ռուսահայոց մեծատունները ցուցած են միշտ աւելի կորովի ու ինքնատիպ նկարագիր մը բարոյական ու իմացական, ինչպէս իրենց մատենագիրները ալ։ Անոնց առաքինութիւնն ու եկեղեցասիրութիւնն եղած է աւելի վառ ու ջերմ՝ մանաւանդ կառավարութեան կողմէն։ Անոնք աւելի սկզբունքի ու գաղափարականի մարդիկ եղած են, թէպէտ և աւելի ալ հաստատակամ ու անդրդուելի իրենց ուղիղի՛ն ալ սխալի՛ն ալ վերաբերումով։ Հիւսիսի բարքերն ու կլիման ուրիշ կերպ չէին կրնար ներգործել անոնց վրայ։



# Ժ.

Գոցելով այս փակագիծն հիւսիսահայեաց ու դարձունելով մեր ուսումնասիրութիւնները նորէն ի Թուրքահայս՝ կը գտնենք 19րդ դարի առաջին քառորդին՝ որ ժամանակակից համշէական Հայերուն մեծատուններէն հինգ վեց ընտանիք ալ կոչուանին մերթ ամիրայ և ընդհանրապէս հօճայ կամ չէլէպի՝ իրենց բարոյական հեղինակութեան և նիւթական ու իմացական հարստութեան ազդեցութեամբ։ Ասոնք ալ՝ տակաւ լուսաւորուելով և գաղափարապէս թօթափելով վաղեմի անձուկ ըմբռնումները՝ կիրականացունեն լուսաւորչական Հայերու կցորդ գործակցութեան մը միտումները՝ թէ՛ տոհմապէս թէ՛ եկեղեցապէս, մանաւանդ Ադրիանուպոլսեցի Գրիգորեան Պօղոս Պատրիարքի ջանքով. ինչպէս ցայնելայր կցորդ կերթային իրարու չատ ուրեք աշխարհային գործառնութեանց մէջ՝ թէ՛ իրրև զօլօղ թէ՛ իբր արհեստակից և թէ՛ իբրև վարիչ փողերանոցին։

Համշէական Հայերու այս մեծատուններէն են, օրինակի համար, Գրիգոր Չէլէպի Տիւզեան(1), Կարնեցի Մատթէոս Չէլէպի մահտեսի Աստուածատուրեան, Թընկըր զատէ Յակոբ, Տիւզ Յակոբ Չէլէպի՝ դրասէր ու

---

(1) Տիւզեանները՝ իր հին ոսկերչապէս ու վաղեմի վարիչներ Փողերանոցին՝ եղած են նախ Ղազգ Յարութիւն ամիրայի պաշտպան վարպետները (patron):

հանճարեղ աղնուական մը(1), Վենետիկի Մխիթարեանց վարդը, որ տպագրել տուած է Հ. Արսէն, Կ. Բագրատունիի քանի մը գլխաւոր գործերը «Մեկենասեան հովանաւուն իր մեծ հոլովթեւերուն(2)». Մկրտիչ Չէլէպի. Գրլճը զատէ Անտօն և Զէմպէրէկճի օղլու:

Ասոնք են որ վերոյիշեալ Պօղոս Պատրիարքի գումարած միաւորչական ժողովին ներկայ գտնուած են՝ իրենց քանի մը վարդապետներուն հետ, հռոմէական Հայերու կողմէն առ հասարակ. իսկ Լուսաւորչականներու կողմէն իբրև պատուիրակ ներկայ եղած են գլխաւորապէս՝ Այնուորեան Կարապետ ամիրայ, Յովհաննէս ամիրայ Արիստակէսեան, մահտեսի Յովհաննէս Չէլէպի, մահտեսի Յակոբ ամիրայ Լոթֆիճեան, Գրիգոր ամիրայ Պալեան, Գասպար ամիրայ Զարաղեան, Գրիգոր ամիրայ Սագայեան, Մկրտիչ ամիրայ Արփիարեան, Աղայ Պօղոս Մարգարեան, Ճանիկ ամիրայ, Մահտեսի Պօղոս Կէլկէլեան, Յակոբ Մանասեան, Մահտեսի Աստուածատուր

(1) Թուի թէ Յակոբ Տիւզեանի թարգմանութիւնն է Ճենեւ-եայ անգլերէն տաղն ալ անեհւ. —

ԽԵՉԵՓԱՌ

Եկրն է հաս, սոկ, ազգդ այդ,
Սպրուս, սաշաբիկուեֆն, կոռաբազուկֆն
Ծյակննա'յն, մկռասպէրա'նն, խեցեռն'րպն,
Կրունկափադա'գն, շայնախաժա'կն եւ ծածածուաբ-
rn'ւմֆն
Ջեռնաբա'գն, ողնակեա'յն, շանչահայեա'գն,
Ուբոտանի'ն, երկզըչխանի'ն, անձեռնանէ'րձն:

Ի Դարանդկնամարտութենէն Հոմերոսի:

(2) Ցառաջաբանական ուղերձ առ Յակոբ Տիւզ. Հ. Ա. Կ. Բագրատունիի՝ Մշակական Վիրգիլեայ:

Ղօնչէկիւլեան, Յարութիւն աղայ Նորատունկեան, Մկրտիչ Աչեան, Մանասէ Յարութիւն Բինկեանցի, Մարտիրոս Սագայեան, Բարունակ ամիրայ, Ճնորհքեան Մանուէլ, Մանուէլ աղայ Բէրէատճի (հայրն Յակոբիկ աղայ Մանուէլեանի՝ որ նախկին անօրէնն էր Ճեմարանին), Մինաս Զարպհանէցի, Յարութիւն Չէլէպի Կիւլլապեան, Անդրէաս Չէլէպի և ուրիշ բազմաթիւ արհեստապետներ։

Գործիս չափը չներեր զատ զատ անդրադառնալ յիշեալ ամիրաներուն և ամիրայականներուն վրայ, մանաւանդ որ լիակատար տեղեկութիւններ կը պակսին մեզի յաւելեանապէս, կամ գի անոնց սերունդներուն պատմածներն ալ՝ չենք կրնար մեծ մասամբ վաւերական համարել պատմական արձանագրութեան մը չափ։ Ուստի այս կարգով կը շատանանք չեշտելով միայն հո՛ն թէ ժամանակին ազդո՛ւ ձայն և հնչո՛ւն գրպան ունեցողներն ասո՛նք են ընդհանրապէս, որոնց մէջ կան մինչև չորս հարիւր տարուան գերդաստաններ, օրինակի համար Կէլկէլեաններն ու Սագայեանները։

19րդ դարի սկիզբէն մինչև 1870 թուին հասած են նաև Թուրքահայոց մէջ կարգ մը նշանաւոր հայ բժիշկներ, որոնց չարքին կենսագրութիւնն եղած է 1895-1905 ի Վիեննական Մխիթարեանց Հանդէս-Ամսօրեայն մէջ։

*
* *

Միաւորչական այդ երկու խումբէն քիչ մը նորը կը հանենք՝ իբրև վերջին խումբն ամիրաներուն՝ պոլսեցի Ղազէզ Յարութիւն հռչակաւոր ամիրան(1), Պալեան Կա-

---

(1) Ամիրաները մեծ մասով գաւառացի կամ գաւառացիներէ սերուած են։ Ղազազ Յարութիւն Կ. Պոլսեցին եւ Կ. Պոլսական մեծ շուկային մէջ եփած՝ ցոյց տուաւ գերազանցապէս, թէ Պոլսեցին

րապետ ամիրան, Տատեան Յովհաննէս ու Պօղոս պէյերը, Սէրվէրեան Յովհաննէս աղան կամ ամիրան, որ քանի ու փայտի վրայ քանդակելու նորոգեան գեղարուեստը մեզի Հայերուն մէջ ու գլխաւոր սատարողն եղաւ հին ճեմարանին Սկիւտարի՝ մանաւանդ ի՛ր իսկ դրամովը ի հնձուկս Միսաք և Ճանիկ ամիրաներուն, որ՝ չգիտենք ի՛նչ պատճառով՝ ուխտած էին, կրուի, ախոռի վերածել այդ հողերուն փարախը դպրութեանց: Նաև երկաթեան ու Փիշմիշ ամիրաները՝ Ղազէզի հանրական գործակից, Յովհաննէս ամիրայ Ազնաւուրեան, Հաճի Մարտիրոս Պաղտասարեան, Մաքսուտ Սարիմեան, Պաղտասար Գասպարեան, մահտեսի Յարութիւն Չէլէպի Կէլկէլեան, Չալեան Յովհաննէս աղայ որ ունեցած է աշխոյժ դեր մը ազգային գործերու մէջ և վախճանած 1863ին 87 տարեկան, Կարապետ աղայ Մանուէլեան՝ ծագումով Կեսարացի, որ 1830ին Բ. Դրան և Եպարքոս Բէրթէվ փաշային սեղանաւորութիւն է ըրած և Սկիւտարի ճեմարանին բացումին ալ երկիցս ջանադիր եղած էր, ծնած 1800ին. Յովհաննէս Բինկեանեան. ասոնց մէկ քանին էին հին փայտակերտ հիւանդանոցը շինողներէն ու վարողներէն(1). Միսաք ամիրայ և Մկրտիչ ամիրայ Ճէզա-

---

ինչպէս կըմբռնէին ամիրայութիւնն եւ ինչպէս կը վարէին զայն: Ասոր համար է՝ որ Ճանիկ ամիրան, կըսեն, ժողովի մը մէջ յայտնարարեր է թէ «Տէրտէր ուշադրին մարդ չեղլար կըսէին՝ անհա՛ մէկ մարդ մը եղաւ որ . . .»: Եւ արդարեւ՝ Ղազէզ ամիրան, թէպէտ ինք ալ իր կարգին քիչ շատ ըմբռնած իր ժամանակին ազգս թերումները ու սովորութիւնները, գիտէր բոլորովին նուիրել իր հարստութիւնն եւ հեղինակութիւնն հանրային բարեգործութեանց ու շինարարութեանց՝ մայրաքաղաքիս վարչապէս բարձրահայեցութեամբ:

(1) Տե՛ս Պատմութիւն Ազգային Հիւանդանոցին:

յիշել(¹)՝ պաշտպանն Հասմիւղցիներուն և Շահնազարեան Կարապետ վարդապետին։

Տե՛ղն է հոս նաև յիշելու Պետրոս ամիրայ Եուսուֆեանը (ծն. 1780 վախճ. 1846). Պօղոս Պէյ Եուսուֆ, Առաքել աղէյ Նուպար՝ Եգիպտոս Մէհմէտ Ալի փաշայի առեւտրական գործակատար ի Մարսիլիա և բանակեան եղբ.՝ Նուպարեան Մկրտիչ աղայի որդի Նուպար փաշա(²), Թագւոր փաշա, Բարթող փաշա, Զմիւռնացի յառաջադիմութ ջոջերը, որ մեծ մասամբ եգիպտական վառ գօտիին տակ շինեցին իրենց փառքն ու բաղդն և կազմեցին իրենց աղանմանդաւոր գօտին(³)։ 1819–1820ին կը յիշուին ի Կ. Պոլիս Մանասեան Գրիգոր աղայ, որ էր Մուղաթա սառաֆի, Ուզունեան Յովհաննէս ամիրայ, որ ապա կրօնափոխ եղաւ և Յոհան Անտօն, որ վաճառականն էր Ներքինապետին։

Ահա այս հանրագիծ անձնաւորներով և գործերով կը հասնի մինչև 1835 Թուրքահայերուն հօճայութիւնը. ամիրայութիւնը, փաշայութիւնն և պէյութիւնը՝ մանաւանդ ամիրայութիւնն իբրև չեշտեալ դրութաամն մը

(¹) Ճեզայիրցիին վրայ քիչ մը վարն աւելի ընդարձակ գրած ենք:

(²) Նուպար փաշայ գրած ալ է իր համառօտ կենսագրութիւնը: (Տե՛ս Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս. Հ. Յակոբ Քօսեան. Հատոր Ա. էջ 117): Ծնած էր 1825. վախճանեցաւ Փարիզ 1899ին:

(³) Զմիւռնիացիներուն մէջ երեւելի է նաեւ Պարոն Մուրատ Յարութիւնեանը, որ կը բնակէր Երուսաղէմի մէջ եւ բարեկամ էր Ս. Յակոբեանց վանքին, մինչ օգնելով անոր իր խորհուրդով եւ ազդեցութեամբ, մանաւանդ երբ՝ շնորհիւ Եուսուֆեան Պօղոս պէյի՝ Նաբոլիի ու Սարտենիայի հիւպատոսութիւնն առնելով եւ ճոխացաւ թէ՛ պաշտօնով թէ՛ հարստութեամբ: Իսկ կտակած է Երուսաղէմի հայ վանքին բաւական կալուած:

*ժողովրդական՝ ի փոխարինութիւն կարգ մը անձնական կամ ժառանգական բարեմասնութեանց և առեւտրութեանց, աւագութեանց, բարեպաշտիկ գործերու, նուիրատուութեանց, եկեղեցաշինութեանց և դուն ուրեք ալ գիտութեանց կամ հեղինակութեանց*(1)։

*Իրենց վրայ ունելի նկարագրեալ ծանօթութիւններ առնել փափագողը՝ կրնայ դիմել Բերայի, Օրթագիւղի, Սկիւտարի, Հասգիւղի ու Գալըգըլըի գերեզմանատանց հին տապանագիրներուն, որ մեծ մասով քերթող Եղիկեան Յովհաննէսի և Փէշտըմալճեան Գրիգոր պատուելիի՝ 19րդ դարասկիզբին ամիրաներուն փիլիսոփային՝ գրիչներէն ելած են․ մանաւանդ մաս մը օրինակուած ալ է Ղալաթիոյ ազգային մատենադարանին մէջ՝ ժամանակակից ձեռագրի մը վերջերը։*

*Իսկ մենք՝ ըստ մեր նախագիծին՝ քանի մը անաչառ պատճառաբանութիւններով և հակիրճ քննութեամբ մը՝ փակե՛նք այս մասն ալ ամիրայական դրոյին։*

*
* *

*Օսմանեան պետութեան և ընդարձակածաւալ երկիրներուն փառաւորութեանց մէջ փառաւորուած, հարստացած, տաղաւարած և ընդարձակուած այս ամիրաներուն և մեծատուններուն մեծ մասը կը բնակէր Կ. Պոլսոյ նախայիշեալ գեղադիտակ արուարձանները*(2)՝

---

(1) Ամիրաներուն մէջ պակաս չեն եղած գրասէր ու գրագէտ մարդիկ ալ, ու Վենետիկի եւ ապա Վիեննայի Մխիթարեանց ուսուր ու գրական գործերն անոնց մեծ մասին մատենադարան-ներուն մէջ կը գտնուէին ու կը բանասիրուէին երկիւղածութեամբ:

(2) Հ. Ղուկաս Ինճիճեան Կ. Պոլսեցի Մխիթարեանը կ'ըսէ Կուրուչեշմէյի համար թէ բուրգ էր եւ յոյն ազնուականներու

լայնատարած գետիններու վրայ(1), բազմայարկ ու բազմասրահ ապարանքներու մէջ՝ խնկուած, դիւթուած և ճաճանչաւորուած առասպելական խնջոյքներով, շարքիներով, խաղարկութիւններով(2) ու քէյֆերով՝ գիշերն ա-նանցմէ կազմելով բացառութիւն մը անապգիւտ: Այդ բարեբախտիկ ամիրաներն ունէին՝ ամէնահարկաւորապէս՝ իրենց հետեւորդ ազաները, ամանք իրենց կանանոցին, իրենց մանկլաւիկներ՝ը, իրենց մառանապետներն ու սակառապետները, իրենց աւէկէճիներն ու հացկատակները, որոնք խաղալից պաշտօնաներ կըլլան մեծատուններուն ապառաց հաճոյախօսութեամբ ու կարեւէր անկումներուն. անոնք՝ կարգ մը նախամանութեամբ հետ՝ ունէին իրենց արտակարգ մոլութիւններն իրենց նախապաշարումներն ու յոռի կողմերը ակար, որ բուն պաշտօնաներն ալ եղան իրենց կործանումն, և այդ կործանումին առաջքն առնել հայրապէս՝ անկարգած է ժամանակին բարձրաստիճան կղերին մեծ մասին հաճոյակցութիւնը վրիպաստութիւնն և փառասիրութիւնը:

Կային այդ մեծատուններուն մէջ՝ ագէտներ, ամբարտաւաններ, մոլեռանդներ, թուլամարտներ ու մանաւանդ անխոհեմներ. կային՝ գիտակներ, համեստներ, ջերմեռանդներ, խառակրօններ ու խորագէտներ ալ: Եւ այդ երկու ներհակ տեսակները՝ նուազեցան կամ անե-

---

Նախասահմանած վայրն էր մինչեւ իր սանը, 1800—1820: Տե՛ս **Ամիրայից Բիզանդեան** (էջ 128): Մինչեւ 1835՝ Կ. Պոլիսի լաւագոյն եւ բարձրագոյն յունական վարժարանը Գուրուչէշմէի մէջ էր:

(1) Միայն Պալեանն ու Տատեանն երկուքն հազար մը արտավար հող ունէին՝ հարեւանցի հաշիւով:

(2) Ասենին խաղարկութիւններն էին գլխաւորապէս՝ **հէյալ, օֆֆապազ** և **քէօշէկ**:

ցին որոշեալ ատեն մը՝ իրենց այդ յատկութեանց նուա-զութեան կամ ամբողջութեան, յոռութեան կամ լաւութեան համեմատ:

Ժամանակակից Մխիթարեան քերթող մը՝ քաջ կը պատկերացունէ Վոսփորի հայ մեծատուններուն կենցաղն հետեւեալ երանգավառ ոտանաւորին մէջ.—

Կայ ի Թրակեան Վոսփորոսի խըռնեալք բարիւ,
Կանգնեալ պալատս, կամ յորս երբեմն ի հեշտ զեփիւռ:
Կայ յոսկեզօծ արշալուսոյր պարծին մակոյկ,
Կայ բազմամեայ ոսկեփարիւ շքեղ բակոյկ:
Այլ ի զըննիլ զոսկեմարսից յարձակ ճոխիս,
Եւ կամ ի սէս մանկանցխայն կան խիս առ խիս...:
Այժմու զըրոյցք,—զի՞նչ այն խորտոյք—զի՞նչ այն նաւոս:
Հընդկահանդերձք սամոյրազարդք ճոխ եւ կաւոս:
Փողոց փոխան մըրգանակաց՝ սըրինգ սարեակ,
Անցուցանեն անցորդ զնգայն ողջոյն ցերեկ:
Իսկ ի գիշեր՝ նաւս եւ սաստիկ միշտ խորասոյզ
Մաշկ զնգայն ի յապշութիւն ըզմիտս ի յոյզ:
Այլ ոք կըռնաս՝ մօտ առբազմեալ յիւր գեղանի,
Եւ սիրտն արուար ի սէր պըչրող միշտ գեղանի.
Աչ իւր մանկանց ցուպ ծըխափեր շարժեալ ճօճի...:
Տեսցես ըսկայ եւ պըսակեալ զոսկեպարձ էջ,
Ի դամարձակ հանճարեղաց յուսոց ուղէջ.
Կամ վերաբեալ յաստեղաց պար զերդ Անդրոմէդ[1],
Զորոյ երբեմն հար ըզմարմին ծով մէջ ի մէջ:
Թէ կեանք նըսա անցցեն այսպէս՝ կարծեն միշտ սօն,
Գըրեալք զանձինս յամենայնի զոհք օն եւ օն.

---

(1) **Անդրոմէդ**՝ որ կը պարծէր թէ Հերայէն աւելի գեղե-ցիկ էր, եւ կապուեցաւ ժայռի մը՝ ճարակ ըլլալու համար ծո-վային նհանգներու:

*– Ուրկէ անցէս փակեալ շիրմին յանձուկ ի բոյն*
*Ա՛նդ իւր որոց, ա՛նդ և դամբանին միշտ կենդանւոյն*[1].
*(Երգեաց Հ. Մանուէլ Ջախջախեան ի 1825)*

---

# ԺԱ.

Պատմական ու աշխարհախօսական ալ իմաստասիրելով հին այս մեծատուններուն վրայ՝ կը գտնենք որ անոնք կատարած են, մեր Արեւելքի անցեալին մէջ, թէ՛ հանդէպ Տէրութեան թէ՛ հանդէպ հայ հասարակութեան, կարեւոր և հզօր դեր մը առանձինն՝ իրենց տեղական ու անսահմանափակ իմացականին և ճարտարութեանց չափով: Անոնց հաւաքական գործունէութիւնը Կ. Պոլսոյ մէջ, մանաւանդ իբրեւ սեղանաւոր և սակերիչ, նման չէ ունեցած հինաւուրցն Բիւզանդիոնի խոշոր խաներուն և պատուաւոր շուկաներուն մէջ:

Անհատապէս ալ՝ անոնցմէ ամէնէն հզօրներն հարուստներն և միանգամայն վաղանցիկներն եղած են անո՛նք՝ որ ունեցած են կարի՛ գաւառական ծագում մը քաղաքային, ու եղած են աւելի՛ խորամանկներ քան իմաստուն խորագէտներ: Ընդհակառակն՝ անոնց ու պոլսեցի էսնաֆին մէջ՝ ամէնէն խելացիներն արդիւնաւորներն ու իրենց միջակ դիրքին չափով տոկուններն եղած են անո՛նք՝ որ թէ՛ խորագէտ թէ՛ արուեստագէտ թէ՛ գիւղակեաց կամ հին մայրաքաղաքցիներ էին՝ համեստ ու խելացի օգտուողներ բաղդէն ու հարուստ պետութեան

---

(1) Տաղք Մխիթարեան վարդապետաց, տպագրեալ ի Վենետիկ. 1852. (հատ. Բ. էջ 43):

չնորհներէն ու պաշտպանութիւններէն ։ Առաջիններըʼ Փոքր-Ասիայի արմուղ խորերէն եկածնե՛րն են այս , առանց իմաստաւորելու իրենց նոր և ազնուական շրջանակը , առանց բանի տեղ դնելու աստիճանական յառաջդիմութեան գերադասնց բարիքնʼ համեմատութեամբ յանկարծական յառաջդիմութեան , իրենց Կ. Պոլիսի մէջ տեղաւորուած ու լայնցած ազգականներուն կամ բարձր պաշտպաններու թեւարկութեամբʼ իսկո՛յն վեր ոստնելով , վե՛ր ու շա՛տ վեր . հոնʼ գլուխի բնական հեռաւորդ պտոյտներուն հանդերձʼ յաջողած այ են տիրանալու , տը երանելի ժամանակ մը . մեծ փառքի իշխողութեան (autorité) և հարստութեանʼ ինչպէս նաև անոնց անկարծութեան լծորդ մեծ ախտերու և կիրքերու , որպէս զի նոյն թափով և նոյն համեմատութեամբ իյնան վարʼ կշռուած ժամունʼ վա՛ր գահավիժաբար վա՛ր ու կորսուին անհե՛տ կտակելով իրենց յաջորդ սերունդին վատ անունի մը քամիկը մեծատունի դժուա՛ր թշուառութիւն մը ։

Իսկ վերջիններնʼ այսինքն խելօք գիւղակեացները կամ Փոքր-Ասիայի քանի մը բանիրուն քաղաքակեացները , օրինակ իմնʼ կեսարացիները հին և ազնիւ մայրաքաղաքացիներն ու թերեւս անէն անոնք այʼ որ գէթ Ակն խաղաֆԿն չէին և իրենց համար աստիճանական յառաջացում մը ընտրելու մասին աւելի՛ համեստ ու իմաստուն էին , զուտ իրենց տոկուն արժանիքովը բաւականաչափ տակաւ յառաջանալէ ետքըʼ խորագիտօրէն կեցա՛ծ են հոն , ուրկէ անդին ա՛լ չէր զօրեր իրենց տեսակ մը ինքօգնական ույժը . և բստ այսմ իրենք ալ իրենց կարգին արժանացած են , պոլսեցի բանիրուն միջակորեարին հետ , մեծ ամիրաններէն շա՛տ աւելի դիմանալուʼ իրենց դիրքին հարստութեանն և ազդեցութեան մէջ ։

Եւ ասոնք եղած են ընդհանրապէս Պալի կոչուած

արհեստաւորները, ոսկերիչներու, դաղէգներու, պէգճի-ներու մեծերը, մեծաքանակ վաճառողներն ու դարպխա-նէցիներէն մաս մը։ Տգէ՛տ այլ բանգէտ ամիրիկներ ու աղաներ, որ գիտուննե՛րն էին կենցաղելու արուեստին, գիտէին շահիլ ու սիրաշահիլ եւ լրջօրէն՝ թէպէտ շատ չգիտէին մեզի պէս գրել, կարդալ, ճառել ու վիճել։

Հայ մեծատուն սեղանաւորներու վրայ հետեւեալ հաւատարիմ տեսութիւն մըն է՝ գրուած Թուրքիոյ Ներ-քին գործերուն Նախարարուն գիւմիւշտէտ անձնաւորութենէ մը, որ պաշտօնավարած է երկար ատեն Կ. Պոլիս եւ գա-ւառները՝ 19րդ դարի առաջին քառորդին. — «Հայերն էին ու են դեռ Թուրքիոյ ամէնավաճառ եւ ամէնահա-րուստ ժողովուրդը, որով եւ լաւագոյն երաշխաւորու-թիւններն եղած են առաջի Բ. Դրան, ըլլալով ներհուն Թուրք լեզուին, ըլլալով նաեւ հաւատարիմ ռայաներ՝ կը մատուցանեն պաշտօնատար բաշաներու բոլոր այն պէտ-քերը, որ յանձնարարելի կընեն իրենք Թուրք փաշայե-ռի մը համդէպ, իբրեւ կարող ու ժիր մարդ գործի, իբ-րեւ ամուր սեղանաւորներ, իբրեւ հլու վարկատու։ Հայ-կերն յաճախ գանձուելով բնական նիւթերու ձեւին տակ՝ Հայերուն տաղանդը, իբրեւ վաճառական ու սեղանաւոր, կրկնապէս օգտակար կը դարձունէ զանոնք եւ կընծայէ անոնց շատ առիթներ արագ արագ դիզելու մեծ հարըս-տութիւններ։ Ինք Վեհ. Սուլթանն ալ հաշտ աչքով կը նկատէ անոնց բարեբաստ յաջողութիւնները, այնու մա-նաւանդ որ անոնց հարստութիւնները չեն դառնար շռայ-լութեամբ, ինչպէս կըլլան բաշաներու հարստութիւն-ները, այլ հոգածութեամբ կը պահուին կը մնան իրենց դը-րամարկղներուն մէջ՝ մինչեւ որ կառավարական կամք մը կամ պէտք մը դուրս բերէ զանոնք աճեցունելու համար միրիի հասոյթները։

Այսպիսի գործառնութեանց համար մեծաքանակ դրրամագլուխներ հարկ են, որով սարաֆներու (1) թիւը կը թուի հասած ըլլալ 80-100ի մը. ու եթէ իրենք մերժեն երաշխաւոր ըլլալ թուրք կառավարիչի մը համար՝ այդ կառավարիչն արժէք չունենար յաչս կառավարութեան պարզ անհատէ մը աւելի. որով այդ սարաֆնե՛րն են ի՛րական գաւառներու վարիչներն ու կը վարեն ըստ հաճոյս և ի չար անձանց. Նոյն իսկ վերջին տարիները (1837) այնքան հզօրացուցած են իրենց կշիռն՝ որ ոչ մէկ սեղանաւոր կը հաւանի սարաֆն ըլլալ փաշայի մը (որ բարձրացած է այդ աստիճանին՝ կրկնենք ըսել՝ բարեհաճութեամբ սարաֆին) եթէ փաշան չճարէ վկայագիր մը անոր նախորդ սեղանաւորէն՝ հաստատելու համար թէ վճարած է անոր իր բոլոր պարտքը։

Ենթադրենք որ փաշային վճարելիք գումարն առ կառավարութիւն՝ ըլլայ 500,000 դրշ. (5000 ոսկի) վճարման քառորդ մասամբ, սեղանաւորը նոյն հետայն մէկ անգամէն պարտաւորութեամբ մը կառնէ փաշայէն ընկալագիր մը ամբողջ այդ գումարին համար, և այս ընկալագիրը կը բերէ իրեն առ նուազն երկու առ հարիւր (ամէն ամիս) տոկոսիք մը։ Ասոր պէտք է հայթայթել փաշային զէնք, շալեր, չիպուքներ, ձիեր, որոնց համար սեղանաւորը կառնէ 10 % յանձնարարագին մըն ալ։ Փոխարէն տոմսակները պէտք է վճարուին երկու չորս ու վեց ամսուան միջոցներուն. բայց ինք անմիջապէս կառնէ փաշայէն ընկալագիր մը ամբողջ գումարին համար՝ միւս ընկալագիրին նման տոկոսիքի ենթարկեալ։ Երբ քիչ ատենէն փաշան հասնի նշանակեալ գաւառը՝ պարտի ղըրկել սեղանաւորին նուէր մը հասարակաց համէն հարիւ-

(1) Գնող — միջնորդ, սեղանաւոր։

րին տասը կամ հինգ արժէքով, իսկ օրինաւոր խայրիք իր պաշտօնին, նմանապէս նուէր մը սեղանաւորին գործակատարին ալ՝ իր գաւառին պէս պէս արտայայտութիւններէն։ Բայց երբ սեղանաւորն իմանայ իր գործակատարէն՝ թէ փաշան դրամ կը դիզէ՝ անմիջապէս կը ղրկէ անոր ծանուցագիր մը սա ձեւով «Դժբաղդաբար ձեր բարձրութեան դէմ տրտունջներ հասած են հոս, բայց ես լռեցուցի անոնք ճարտարմտութեամբ։ Այս գործ 10,000 ղրշ.ի մը ծախք պատճառեց ինծի, զոր անցուցի ձեր հաշւին, խնդրեմ հաճեցէք անցունել զայն պահանջքիս կողմը»։ Կրնայ ըլլալ որ այս ծախքն իրա՛ւ եղած ալ ըլլայ, բայց և իբր յաճախ շինծու կըլլայ։ Թերեւս կարծուի ալ որ եթէ երբէք այսպիսի փաշայ մը սատրազամ ըլլայ՝ պիտի ջանայ վրէժն առնել այսօրինակ անիրաւութեան մը, բայց բնաւ այդպէս չէ։ Հայերն իրենց հարստութեամբն հայթայթած ալ են իրենց փարաֆ-ներ (կոմիսակիցներ), ճարպիկ միջոցներ ու բաւական հզօր ազդեցութիւն մը՝ նպաստաւորելու համար սատրազամին անուանումին իսկ, և գործի վրայ գանուող Թուրքերը կը համարին սեղանաւորին հարստահարութիւնները իբրեւ ճարկառր չարիֆ, որ և աղբիւրներ են իրենց ալ հարստութեան։ Սատրազամ ընտրելոյն ալ ունի ուրիշ շահ մը եւ խնայելու իր սեղանաւորին. Նա կընդունի անկէ իր պարտքերուն ջնջումը ի վարձ պաշտպանութեանը, զոր կընձեռէ սեղանաւորին ընդդէմ ներհակ ազդեցութեանց միւս փաշաներուն։ Ամէնէն հարուստ սեղանաւորին ունեցածը կրնանք ենթադրել մէկ միլիոն լիրայ սթէրլին մը։ Բայց և այնպէս՝ իրենք միշտ անակընկալով մը ամէն բան կորսնցունելու վտանգի մէջ են։

Գաւառներու մէջ փաշայի ընկերացող խորհրդականի գործակատարն յաճախ կառնուի սարաֆին ազգականնե-

րէն և բոլոր դրամական գործերը կըլլան անոր ձեռքով․ դրամին սակն ու յանձնարարագրերը շատ աչքի զարնող գումարներ են։ Այս գործակատարն է որ կը հաւաքէ գաւառին հասոյթները, որոնց հանդէպ իր ներկայացուցած տունն երաշխաւոր եղած է․ և այդ հասոյթ-արդեանց վրայ շահավաճառներ կընէ՝ շատ վար գինով մը ձեռք բերել հնարելով ամէն բան․ բայց այսմ՝ ամէն փաշային կցորդ կընթանայ վերատեսուչ մը՝ ինչպէս արագող ձուկերուն խեցեմորթ մը, որմէ չկրնար ազատիլ բովանդակ ճիգերուն անգամ։ Փաշային բոլոր շարժումները կը հսկուին․ անոր բոլոր նկատումներուն ան՛րի այէս է վերատեսուչը, և կը մղէ զայն բռնական ու հարստահարիչ գործերու՝ չթողլով որ սասանայ նա իր ամբողջ հասոյթը։ Փաշան չկրնար ճամբու դնել զայն, վասն զի կապուած է անոր անիրաւ երաշխաւորութեանն իր պաշտօնին բովանդակութիւնը։» (Թուրքիա եւ իր պարագայքը D. Urguhart, քարտուղար անգղիական դեսպանատան ի Կ․ Պոլիս․ Փրանս․ Թարգմանութիւն, տպագր․ Բրիւքսէլ, 1837—էջք 155-159)։

Անաւասիկ ուրիշ վկայութիւն մը 19րդ դարի առաջին քառորդին Թուրքահայոց վրայ՝ գրուած դիւանագէտ կաթոլիկ յոյն բժիշկէ մը—«Կ․ Պոլսոյ քրիստոնեայ բնակչութեան ամէնէն նշանաւորն Հայն է․ առնուազն 20,000(!)ի չափ։ Ասոնք թէպէտ բաժանեալ կրօնական կարծեօք՝ կընծայեն, սակայն, կատարեալ միութիւն մը, որ մեծապէս կը նպաստէ կառավարութեան իրենց տուած պաշտպանութեան։

Հայերն առհասարակ լաւաբարոյ, աշխատասէր, վաճառական ժողովուրդ մըն են։ Իրենց սեղանաւորական տուները կը վայելեն մեծ վստահութիւն․ անոնք՝ փաշաներու մեծագոյն մասին, մեծ անձնաւորութեանց,

մասնաւորաց հարստութեանցը պաշտպաններն են։ Անոնք կը հայթայթեն պէտք եղած դրամը փաշաներուն՝ հաստատուելու համար իրենց պաշտօններուն մէջ, և որքունի փողերանոցին ընդհանուր տնօրէնը սովորաբար հայ մը կըլլայ (Տիւզեանք ու Դաղէզ)։ Հայերը կը վայելեն թուրք կառավարութեան տարածին չափ ապրելու և շահելու ազատութիւն մը, և անկէ՛ է որ կըրնան ու կը կամենան օգնել միշտ համերաշխութեամբ իրենց տոհմակիցներուն։ (Essai sur les Fanariotes par Marc-Philippe Zallony, Docteur en medecine, Marseille, 1824)։

*
* *

Մեծ Նոր-Խանի, Վալիտէ-Խանի, Վէզիր-Խանի ամբարներն եղած են մեծ մասամբ ակնցի կամ ուրիշ քաղաքցի սեղանաւորներ (բացի Բաբերդէ, Երզնկայէ, Կարինէ, Խարբերդէ՛, Կեսարիայէ ու Երևանէ), քիչերը վաճառական։ ԵՒս անոնց իւրաքանչիւրն՝ իր քաղաքակիցներն այլամերժօրէն յառաջ քաշելու և Կ. Պոլսոյ համբաւական իրողութեանց մէջ ալ ազդեցութիւն և հրամայականութիւն վաստըկելու աշխատած են յաւէտ՝ խառնուելո՛վ պահանջկո՛տ և անագորո՛յն դառնալով ու դրացին ու իր համազգի օտարն և թողլով տառապանելով ու նեղելով ամէն արտադրութիւն իրենի՛ն ազգականին կամ պաշտպանեալին և կամ իր կիրքերը փայփայող անարժանին...
Իսկ թէ՛ ակնցի թէ՛ ո՛ր քաղաքցի կամ գիւղացի՝ վառօղապետ, ճարտարապետ, հացապետ ու արհեստագէտ ամբարներն ալ՝ ունենալով այդ վերիններէն զարծանէս զատուցեալ գնացք մը և՝ իրենց ճարտարուեստական մտացիութեամբն՝ ըլլալով ուրի՛շ աշխարհամբարձ ուրի՛ն, խօսք հասկըցող ու լայնախոհ, կը յիշուին ընդարար զատ՝ ինչպէս հանրային գործերու մէջ ալ կը գործեն զատաբար։

որոնց գործառնութիւններն ալ աւելի ընթացակից ըլլալով մայրաքաղաքի մէջին արհեստաւորներուն և ոսկուն բանուորներուն՝ տուած են աւելի ոսկուն առատութեամբ աւելի մէջին հաշուեգրութեամբ և խոհեմութեամբ մը։ Ասոնցմէ մէկ քանիին ամիրայութիւնն ալ՝ իբրեւ մօտէն ծառայողներու արքունականին՝ ունեցած է միակողմէն աւելի ազնիւ աւելի բարեսէր ու այլաշահ շուք մը, որով և իրենց ազդեցութիւնն հանրային գործերու մէջ փայլած է աւելի՝ սէր և աւելի՝ ժողովրդականութիւն։ Ասոր համա՞ր է՝ որ Պալեան ու Տատեան ամիրաները փայլած են հինգ ամիրայի բարոյական ոյժ, և ինք՝ Պապա Գրիգոր ամիրան՝ Դաղէզի ձեռնկալուն, դատուած ու ճանչցուած է վարպետ (sage) ամիրայ յորջորջումով. ինչպէս կը կոչուէր նոյն ինք Մեsrufu ամիրան ալ (դագկզ Յարութիւն Պէզճեան)։

Եւ այս վերջիններուն համբոյր խրախուսանքովն և գործակցութեամբ, մանաւանդ վաղեմի պոլսեցիութեան և հնարագէտ մտացիութեան իրաւունքով, Կ. Պոլսի գլխաւոր էմնաֆներն ու արհեստագէտներն ալ՝ 19րդ դարի սկիզբէն՝ կանոնաւորապէս միջամուխ եղած են հասարակային խնդրութեանց, իրենց արհեստապետներուն և վարպետնէցի ճոռոմ Հայերուն միջոցով, որ ունեցած են մերթ (1815—1840) ամիրաներու հաւասար ոյժ մը՝ մանաւանդ իբր ամէնէն խօսուններն իրաւմուտներն ու եկեղեցականները՝ գլուխ ունենալով իրենց Դաղէզը։ Մինչեւ 1840՝ Հայերն էին Զարպխանէի վարիչները. տես մանաւանդ Լամարթինի Ուղեւորութիւնն յԱրեւելս (Voyage en Orient Tome second)։ Ասոնցմէ եղած են նաև ուսումնասէր և ուսումնական խորհրդական մարդիկ՝ սկսելով Թէրզեանց Աբրահամ չէլէպիէն, մատենագիր բժիշկ Րեստէնէն, լեզուագէտ Յովհաննէս Եղեկեա-

նէն՝ մինչեւ Գրիգոր եւ Մկրտիչ Աղաթօն, Սերվիչէն՝ որ բժիշկ ու բարեկամ էր Մեծ Եպարքոս Ալի փաշային, Յակոբ Կրճիկեան՝ խորհրդական Մեծն Րէշիտ փաշայի ի Փարիզ, Միւհէնտիս Գէորգ՝ չափագէտ ու տոմարագէտ՝ որ 19րդ դարին սկիզբները գոյացունել ուզեց համաձայնութիւն մը Յունաց պատրիարքարանի տոմարագէտներուն հետ ու վերջ տալ Ծուազատիկի անպատեհութեանց, Յովհաննէս Միւհէնտիսեան՝ առաջ ոսկերիչ ապա Ա. տպարանապետ. Արիստակէս Ալթուն Տիւրրի՝ նախկին պաշտօնատար Եգիպտոսի, լեզուագէտ, խմբագիր Եգիպտոսի պաշտօնաթերթին եւ Պատրիարքարանի ժողովներու գործօն անդամ. Պետրոս Խորասանճեան, Գրիգոր Մարկոսեան Զմիւռնացի,(1) Աստուածատուր Զօնդ, Գրիգոր Օտեան, Յակոբ Տիվիթեան, Յովհաննէս Սուքէնեան՝ գատաւոր, Յովհաննէս Հիսարեան՝ մատենագիր ուսուցիչ, Բարունակ եւ Սահակեան Արսլանեան (երկու փաշայ) այլ էֆէնտիները, որ նաեւ կրցած են քանիցս միջնորդել խաղաղապէս ամիրաներուն եւ արհեստաւորներուն՝ խօսքով, խրատով, գրիչով ու խորհուրդով՝ մինչեւ որ շոգենաւային, հեռագրական, տպագրական ու վերջ ի վերջոյ երկաթուղիի դիւրութիւններն եկան աւելի դիւրացունել բարձրամիտներուն անհաւանութիւնն եւ անհամոզելի անգիտութիւնները, ու բանալ հաւասարել իրենց ու հասարակութեան միջեւ կոթողած ամբարտակեալ խորը: Այդ խորհրդական եւ ուսումնական մարդիկ՝ առանց մեղէն հաւանելու իրենցմէ առանց ծայրայեղ ու զայրացկոտ արմատականութեան՝ կը համարձակէին ըսել թէ՝ կրցան 1840էն մինչեւ 1860, քաղաքակրթութեան վերայիշեալ

(1) Աշակերտ Վահանեցի Տէր Յովհան քահանայիւն ի Զմիւռնա:

միջոցներն յօգուտ ի կիր արկանելով՝ զօրացունել, ամիրաներուն չափազանցեալ զօրութեան և ձեռնմխութեանց հանդէպ, ժողովուրդին ու էսնաֆին բանիրուն մասին ներդաշնակող ազդեցութիւններն իրաւացի, մնչուչա հանելով ի հարկէ տաքուկ բաժին մը հետաքրքրական այդ հարթիչ շրջումին պահանջած բնական վէճերուն, կռիւներուն և ընդդիմադրութեանց ։ Այսպէս կը սկսէր նախկին շունչ մը փչել Թուրքիայի վրայ Սահմանադրական ոգին ։

*
* *

Կ. Պոլսոյ ժողովուրդին այդ բանիրուն մասը, որ ամէնէն յարմարն էր ամիրայութեան արմատացած ու պատուաստուած գերծումներն յօտելու մաքրելու՝ ի վաղուց ունեցած է մեծ անուն՝ իբրև քաղաքացի վարպետ, իբրև խօսող ճարտարապետ ու բանիմաց, իբրև կրթող և առաջնորդող Նորեկ Փոքր-Ասիացին, իբրև մանաւանդ բանասէր ու կրթասէր տարր մը. իր մէջէն ելած են շատ կողմերով մեծ մարդիկ՝ երբեմն ամիրաներէ՛ն ալ մեծ ։ Այդ ընտիր էսնաֆին մէջ ամէնէն մեծ կշիռն ունեցած են՝ դէթ մինչև 1870՝ Կ. Պոլսոյ ծածկագէտ քահանայորդիներուն և վարժապետներուն հետ՝ հին ոսկերիչներն ու մանիֆաթուրաճիները, և դարձեալ՝ Պոլսեցի, Զմիւռնացի, Տիգրիկցի, Կեսարացի. Պանտրրմացի վաճառականներն ու պետական դրագէտ պաշտօնեաներէն ոմանք՝ մեծ մասով Սամաթիայէն, Բերայէն, հին Օրթագիւղէն, Հասգիւղէն, Գում-Գափուէն ու Սկիւտարէն՝ գերազանցապէս ճարտար խօսելու կշռելու և կրթելու մէջ ։

Ասոնց ներգործութիւններո՛մն էր՝ որ 1836ին(1)

(1) Ասկէ երկու տարի առաջ ձեռնարկած ու շինած է՝ Ս. Երուսաղէմի աթոռին պոլսական փոխանորդն Յովհաննէս Մովսէսեան Զմիւռնացի վարդապետը (այժմ շինող պատրիարք Երուսաղէմի)՝ Պոլսոյ Երուսաղէմեան Փոխանորդարանը, ահնարկու-

ամիրաներէն երկիւղածներն և ուսումնասէրները Պատրիարքարան հաւաքուելով՝ ի ժողով բազմեցան «Աղաւնի» Ստեփաննոս Պատրիարքին նախագահութեամբ և որոշեցին հիմնել Սկիւտարի հին ճեմարանը, որուն ի նպաստ Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքը կուտար 120000 դր. և որուն այս ոգիով չափ հովանաւորեցան ազգանուէր ամիրաներէն նախ Միսաք ու Ճանիկ ապա Ճէզայիրլի Մկրտիչ ամիրաները՝ լոկ հովանաւորելու համար ճարտարապետականներուն, նաև՝ ու առաւելն՝ նախապատուութեան ու նախաձեռնութեան նախանձէ մը բռնուած։ 1830ին կը յիշուին՝ իբրև տպագրական մեծ բարերարք՝ Մանուկ աղայ մահտեսի Աստուածատուրեան և իր կողակիցն Երանուհի տիկին՝ Կարնեցի։

1836էն կը գրուցուի նաև Նեմրուդ Յարութիւն ամիրայ(1), որ Ճէզայիրլիին հետ ծաղկեցուց Խասգիւղի Ներսէսեան վարժարանը. այս կարգէն է նոյնպէս Յովհաննէս Բինկեանեան [?]։

1815էն մինչև 1845 փայլող ազգանուէր մեծ ու փոքր ամիրաներու տոհմաններուն [?] և դատակարգին վրայ կուտանք հոս հակիրճ ծանօթութիւններ և անուններ մը

---

թեամբ եւ նպաստով աչ Պէզճեան Յարութիւն, Փիշմիշ Միհայէլ եւ Փափազեան Ճանիկ ամիրաներուն: Այս շէնքն է՝ որ կը կոչուի տուն Երուսաղէմի կամ Երուսաղէմատուն, Պատրիարքարանի աջ կողմը: Կա՛ր նաև հին Երուսաղէմատուն մը, որ 1826ի Հօճայ փաշայի անուանի [?] հրդեհին այրած էր Մայր Եկեղեցիին ու Պատրիարքարանին հետ:

(1) Հիմնադիր Վոսփորի Ենիքէօյի եկեղեցիին եւ հայր ու մեծ հայր Կ. Պոլսոյ Նէվրուզեանց: Զմիւռնացի Թուրքէն Անդրէաս Փափազեան նշանաւոր վարժապետին ենթակայիցն [?] ու ընկերը՝ Թավուքճեան լեզուագէտ երիտասարդն՝ Խաչիկեան [?] դարձին այս Նէվրուզեանց տունն օրած ու դաստիարակած է անոնք. իր գերեզմանն աչ Խասգիւղ Նէվրուզեանց բաղին մէջ է:

ձեռագիր այն Տետրակէն, որն հաճած է ցոյց տալ մեզի հանգուցեալ վերջին ամիրայականի մը որդին և որ գըրուած է Մեծնոր խանի սեղանաւորներուն սեպհական գրասենեակին մէջ. այս տետրակն է՝ որուն կակնարկենք ալ Ամիրայք անունով մեր ներքնագրուած ծանօթութեանց մէջ:

Այդ դասակարգերուն բաժանորդ երեւելի անունները կը յիշատակենք հոս, որպէս զի տուած ըլլանք արդի սերունդին լեցո՛ւն գաղափար մը կարգաւորեալ՝ անոնց վրայ, և իրենց սերունդին՝ յիշատակարան հայելի մը իրենց նախորդներուն, որոնց անունները պիտի կարդան հոս պատմօրէն՝ թերեւս առաջի՛ն անգամ ու պիտի հըրճուին պապասիրութեամբ մը, և յետամնացներն ալ պիտի թելադրուին ի նախանձաւորութիւն լաւագոյն նմանութեանց և գործունէութեանց:



## ԺԲ.

Սեղանաւորները և ամիրաները այս դասակարգը կը բաժնուէր երեք տեսակի, որ իրենց մէջ կը ստորաբաժնուէին նոյնպէս երեքի, ինչպէս կը նշանակէ Ստեփանոս Պատրիարքի կանոնադրած հարսանեաց կոնդակին ալ՝ (1) տպագրուած 1835ին յՕրթագիւղ Կ. Պոլսի։

Առաջին բաժանումն էր՝ — Աղկա, Էվաս, Էսնա, ու երկրորդ բաժանումը կամ ստորաբաժանումն էր այսպէս՝ Աղկան կը բաժնուէր երեք կարգի, — Ա. Աղկա, Բ. Աղկա, Գ. Աղկա — ինչպէս կը ստորաբաժանուէին նաև Էվասն ու Էսնան. — Ա. Բ. Գ. Էվաս ու Ա. Բ. Գ. Էսնա:

Ի սկզբան (1830—1840)՝ Ա. Աղէաէն էին՝ Խիւտավէրտի օղլու Նազարէթ ամիրայ, Փիշմիշ Միքայէլ ամիրայ ակնեցի՝ իր ճարպիկութեանն համար այդպէս Փիշմիշ (եփած) յորջորջեալ, և այդ ճարպիկութեամբ՝ փուռ թեզկերէն ամիրայութեան բարձրացած, Պալեան Գրիգորէն ու Դադէզէն ետքն առաջնակարգ ամիրան եղած էր. Կէլկէլեան մահտեսի Զէլէպի, Երկաննեան Յարութիւն ամիրայ, (2) Բիւրքճի-խանըը Պետրոս, Տավուտեան Յովսէփ, Թընկըրեան Յարութիւն (3) (այս չորսը կը յիշուին ետքերը)։

Բ. Աղէայէն էին (Բամամասյի հետ)՝ (4) Բարունակ

---

(1) Կոնդակ հարսանեաց սահմանեալ ազգային ժողովով (էջ 9—10):

(2) Ամիրայք, էջ 1:

(3) Ամիրայք. էջ 7:

(4) Վասն զի Եւրոպացիք ալ մեր կը գործածենք Հայերու սեղանաւորական իրաւունքներէն մէջ:

աղայ, Բինկեանցի Յովհաննէս աղայ, Պետրոս աղայ, Ղազար աղայ, Մարգար աղայ, Միսաք աղայ և Մահտեսի Մարտիրոս աղայ։(1)

Գ. Այնպէս էին՝ Ադնաւորեան Յովհաննէս աղայ, Ղազար աղայ, Տամատ Յովհան աղայ, Խորասանճի Յովհաննէս աղայ, Կիւղէլեան Յարութիւն, Թօփհանէլի Յարութիւն աղայ, Պաղտասար աղայ(2) և լն.։

Իսկ Ա. Խմբակէն էին Մաղաքիա աղայ, Նիկոլ աղայ (հայ հոռոմ), Փափազօղլու Խնդիր աղայ, Ջերագլեան Գրիգոր աղայ(3), այս երկուքը քիչ շատ հմուտ էին առաջնակարգ դպրութեան։

Բ. Խմբակէն էին՝ Ճանիկ ամիրայ, Մովսէս և Յովհաննէս աղայ, Ղոնչէկիւլեան Մահտեսի Պաղտասար և Մելքոն աղայ, Ճէզայիրլի Սարգիս աղայ (Հայրը Մկրտիչ ամիրային)(4) Մահտեսի Երամ աղայ (հայրն Երամ-

---

(1) **Ամիրայք** *էջ 2։*

(2) » » *2 եւ 9։ Այս վերջինը թուի շինողն է Բերայի Երրորդութիւն Եկեղեցիին։*

(3) **Ամիրայք**, *էջ 2 եւ 10։*

(4) *1851ին Կ. Պոլիս հրատարակուած շնորհիւ ամսական հանդէս մը կը համառօտէ վերջին ամիրաներէն այս հոյակապներին վրայ կենսագրական հետեւեալ տեղեկութիւնները՝ առանց երաշխաւորելու պատմական ստուգութեան այդ ծագումին, որ կրնայ անյայտ պատճառներով կրքընած ըլլալ կուսակցական կամ ձեռնտուութեան պատճառներու, վասն զի նոյն տեսները ճէզայիրցիին ամենին փայլուն տեսնն էր ՚ու մեծապէս կօգեր իւր գրողներուն, մանաւանդ իր կողմի գրողներուն. սա ալ կայ որ նոյն միջոցներն երկու կուսակցութիւն սաստիկ զայրացած էին ի հեռուէս իրարու՝ մին Պալեանցն ու Տատեանցը միւսը ճէզայիրցիին եւ իր կցորդ սեղանաւորներունը։*

*Մկրտիչ ամիրայ ճէզայիրցի կը կոչուի եղեր նաեւ Հովուեանց եւ այդ ազգատոհմին ծագումը կը սերուի շատ հին ժամանակներ։ Մշտնջենաւորելու համար այդ հին ազգատոհմին անունն՝ իւրա-*

եանց), Երուամ աղայ, Մանուկ Յովհաննէս աղայ Սաեփանեան ։

Գ. Խմբակէն էին՝ Աշնան Պօղոս աղայ, որ մինչեւ 1880 ազգային գործերու միջամուխ կըլլար, Միսաքեան Յակոբեան աղայ, Երկիի աղայ (հայ հոռոմ)։

---

քանչիւր տանուտէր ջանացեր է իր զաւակներէն մին անուանել Հովիւ. եւ այդ ազգաբանութիւնը կը շարունակուէր երեք դարէ հետէ որդի ի հօրէ. ասոնց նախահայրերէն Գուներար կամ Գինեար անունով մէկ մը՝ պատճառով մը կուգայ հաստատուիլ Սեբաստիա, եւ անժառանգ ըլլալով կը յօժարի որդեգրել ազնուական ցեղէ մը Արծկեցի որբ պատանի մը՝ Գուղամ կամ Այուղամրի անուն։ Քանի մը տարիէն կամուսնացունէ զայն, եւ քիչ մը ետքը՝ Ա. Սուլթան Սելիմին Պարսկաստան արշաւելուն ատեն՝ Գ. Գուներար կը քաշուի Ակնայ երկիրը, ուր քաղաքին մօտ տեղ մը կը հաստատէ իր բնակութիւնը, եւ այդ տեղին ալ անունը կը դնէ՝ իր որդեգրին կոչումով՝ Այուղամրի, այս այն գիւղն է որ ժամանակ մը ետքն ու հիմայ ալ կը կոչուի Այուչէքի։

Գ. Գուղամի ծնած բոլոր զաւակները կը մեռնին անդէն խանձարուրի մէջ՝ բացի վերջինէն, որուն անունը դրին Հովիւ՝ ի յիշատակ Հովուեանց հին տոհմին։

Այս Հովիւն է ահա երկրորդ նախահայր Հովուեանց զարմին, որուն ութերորդ թոռն էր (թոռան թոռին թոռը) Ճէզայիրլեան Մկրտիչ ամիրան։ Ըստ այսմ — Գուղամ ծնաւ Հովիւը, Հովիւ ծնաւ Թորոսը, Թորոս ծնաւ Հովիւը, Հովիւ ծնաւ Սարգիսը, Սարգիս ծնաւ Թորոսը, Թորոս ծնաւ Սարգիսը, Սարգիս ծնաւ Յովհաննէս Ամիրան, մականուանեալ Ճէզայիրլի. Յովհաննէս ամիրայ ծնաւ վերջին Սարգիսն ամիրայ, որուն որդին էր՝ ինչպէս գրած եմք վերեւ՝ Մկրտիչ ամիրայ Ճէզայիրլի. մեծահոգի եւ հանճարեղ, այլ անձնահաւան ու քիչ մըն ալ անխոհեմ՝ ինչպէս կըսեն՝ որով յետին աղքատութեան մէջ կնքեց իր վերջին տարիները, եւ կապեց յետին աղքատութիւն մը իր կողակիցին եւ միւս մերձաւորներուն։ Բազմաթիւ երիտասարդներ իր օգնականութեամբը կրթուեցան Եւրոպայի մէջ։ Հասգիւղի մէջ հիմնուեցաւ իր ծախքովը մեծ վարժարան մը եւ շարունակուեցաւ քանի մը տարի. իսկ հեղինակաբար ստանձնեց ու տնօրինեց մաքսի մեծ գործառնութիւնները.

*Եւ Ա. խմբայ էին՝ Բինկեանցի Խաչատուր աղայ, Էլլիզեան Մաթոս աղայ, Միւպոնեաճեան Պաղտասար աղայ, Ղանչէկիւլեան Յովհան և Մարտիրոս աղայ, Մահտեսի Ասատուրի աղայ (հայ հոռոմ)։*

*Բ. խմբայ էին՝ Մամճեան Նիկողոս աղայ, Եազըճեան Յովհաննէս աղայ, Տամատ Յովհան աղայ, Խամէր Օղլու Պօղոս և Յովհաննէս աղայ, Շիշմանեան Յակոբ աղայ, Սավլա աղայ եայլն(1)։*

*Ու Գ. խմբայէն էին՝ որ կանուանուէին* Եղբայր, *Տատէոսեան Մկրտիչ. Պանճէպեան օղլու Գէորգ (որ եւ քերն*

---

պաշտպան հանդիսացաւ երկրագործական ձեռնարկներու, գլուխ կեցաւ նոր կամուրջի մը շինութեանը նախաձեռնութեան մէջ. իր առատաձեռնութիւնն եւ **ապրանքը** չափ չունէին՝ կըսեն, որ վերջապէս գլխաւոր պատճառներն եղան իր արագ նուազումին եւ անկումին։ Երբ նախատեսցրեալ բանտարկութենէ մը եղաւ՝ փախուցաւ Մալթա, Լոնտրա, ուր վատնեց շատ արծաթ. անցաւ ապա Գերմանիա, ուր դրամն հատաւ եւ իբր 3000 ֆռ. փոխ առաւ Գայֆաեան Ամբրոսիոս վարդապետէն եւ չկըրցա՞ւ վճարել... (Սարգիս Թեոդորեան, **Պատմութիւն Մուրատեան վարժարանի**, հատ. Դ. էջ 86—87)։

Մկրտիչ ամիրայ Ճէզայիրլեանի հինաւուրց խորհրդականն ու գործակատարն էր Աչիքեան Սագայեան, որ եւ խանի մը տէրի Պատրիարքարանի ալ գործակատարութիւնն ըրած էր. ան իր ծերութեան օրերն անցուց Սկիւտարի բարձանց վրայ՝ ընթերցասիրելով եւ բնասիրելով խաղաղութեամբ իր երկրագործական բնակարանին մէջ եւ հեզհեզ նուազելով թէ՛ ամօք, թէ ընչիւք. երբ վրայ հասաւ անանկնկալ (5000 ոսկիի) ժառանգութիւն եւ վախճան մը. իր հարստութենէն պէտք օգտուէին Սկիւտարի աղքատ մանուկները՝ եթէ երկու ներհակ ու անխոնջ միջամուխներ չխառնուէին կտակի խնդիր մը, ուրկէ օգտուեցան միայն դատաւորք, դատաւորք, նաեւ մեծկակ Մանուկ մը, որմէ կը յուսամք դեռ բաժին հանել ազգասիրաբար Սկիւտարի խեղճ փոքր մանուկներուն ալ...

(1) **Ամիրայք** էջ 4։

ամիրայ ալ բաւեցաւ) և Աւետիս եղբայր[1], որ հարիւրամեայ վախճանեցաւ ի Սկիւտար 1904ին վերջերը. Մարկոս և Կարապետ եղբայր, Յօհան Զաքարիա, Ղուկաս եղբայր եայլն[2]. ու ասոնք բազմաթիւ էին, և կը նստէին ընդհանրապէս փոքր Նոր-խան, Վէզիր խան, Քաշըքճի խան. վերջերն ալ իրենցմէ մինչև առաջին Ալէային բարձրացողներ ու ամիրայ կոչուողներ եղան։



Ասոնց ջոջերէն ամենակարեւոր խումբ մը՝ համախոհութեամբ իրարու հետ և համահաճութեամբ պետութեան՝ հիմնած էր այն հսկա՛յ ընկերութիւնը սեղանաւորական, որ բաժնուելով երկու ճիւղի՝ կը կոչուէր Անատօլու և Ռումէլի քումբանեար: Առաջինը կը տնօրէնէր ու կը հաւաքէր՝ իր գործակատարներուն և հարկահաւաք հաւաքողներուն ձեռքով՝ Անատօլուի հարկերը՝ և երկրորդը՝ նոյնպէս իր գործակատարներուն և հաւաքողներուն ձեռքով՝ Ռումէլիի հարկերը, այնպէս որ բովանդակ Տէրութեան հարկերն և տուրքերը կը ժողովէին այդ ընկերութեան ձեռքով, որ շատ անգամ ի հաշիւ Տէրութեան կանխավճարներ ընելով այդ հարկերուն փոխարէն՝ կը դիւրացունէր անոր պիւտճէին առ ձեռն հաւասարակշռութիւնը, և ինք ալ կը շահէր լաւ՝ ցորչափ գիտնար իր հաշիւը, և տնօրէնէր լաւ պաշտօնէութեան մը ձեռքով իր ընդարձակ գործերը։ Անատօլու քումբանեային մասնակիցներն էին՝ Ռեզունեան Յարութիւն, Քիւրքճի-

---

(1) Ադրիանուպոլսեցի մեծատուն ընտանիք մը՝ ժիր ու տոհմական, որ 1855ին ազգին իր ամիրայ գործեց ու ապրեցաւ գրեթէ ծերութիւն (100 տարի) խաղաղ եւ խնդացի:

(2) Ամիրայք, էջ 5—6:

խանը Պետրոս, Միսաք աղայ, Ճէզայիրլեան Մկրտիչ, Պաղտասար Զարդարեան և Պօղոս Աչեան՝ իսկ Բումկի խումբանեային Ճանիկ, Մաղսուտ, Մանուկ Յարութիւն Կէլկէլեան, Աբրահամ Ալլահվէրտի, Յովհաննէս Թընկըրեան և Յովսէփ Տավուտեան։ Եւ ամէնուն գլուխն էր Ուզունեան Յարութիւն ամիրայ, որուն պարգեւեց Վեհ. Սուլթանն ականաւոր Իֆթիխար նիշանի։ Այս ընկերութիւն դեռ նմանն ունեցած չէր Թուրքիայի մէջ. բայց իր փառաւոր սկիզբին ու կազմութեան հակառակ՝ չկրցադիմանալ ընդ երկար, և հարիւրապատուորներու վճարողներու և ուրիշ զեղծումներու և անկանոնութեանց պատճառաւ՝ հետ ընդ հետ նուազեցաւ ու եղծաւ, տեղի տալով հետզհետէ նոր դրութեանց ու եւրոպական ձեւով կազմուած պանքաներու և հաշուընկերութեանց։(1)

Այս է ասանիկ վաճառական ցանկն ու գործառնութեանց հակիրճ պատկերն՝ ամիրայ, աղայ, եղբայր սեղանաւորներուն, որոնց մէջ 1800էն մինչև 1850-55 գոյացած էր ու կը տևէր տեսակ մը գործակցական համերաշխութիւն արևելեան՝ հանդէպ պետութեան Եպարքոսին և միւս Բդեշխներուն։ Իրենք յաճախ կը կնքէին անոնց հետ պայմանագրութիւններ ու կ՚ընէին մեծաքանակ առևտուրներ և դրամական փոխանակութիւններ։

Ունէին իրենց ընտրեալ ճեմարան (նախ՝ Երկանեան Յարութիւն ամիրան, ետքը՝ Ճանիկ ամիրան), իրենց առևտրապետական անձնակը, իրենց գործակատարները, գրագիրները, թեւարկեալները, իրենց թաղերը, գաղութ-

---

(1) Ամիրաներու եւ իրենց յաջորդներուն նուազումին եւ անկումին պատճառներէն մին ալ եղած է՝ իրենց ցոփութիւնը մէկ-ըստուոր կենցաղավարութեան եւ ներդաշնակեալ գործունէութեան, որ սակայն երեւան կուգար մրցակցող եւրոպական նորաձեւ գործառնութեանց հանդէպ:

ները, քահանաները(1) ու վարդապետները, նաև հայրա-պան բանդէմները ու պատուելիները։ Ունէին իրենց դի-ղաղնացութեանց, ուխտաւորութեանց, խրախճանու-թեանց, հարսնութեանց, պսակադրութեանց և յու-ղարկաւորութեանց յատուկ եղանակներն ունէին(2)։ Ու-

(1) Տէր Մելգոն քահանայ Պալաթի՝ գրագէտ ու գեղեցկագիր բանասէր, Տէր Մեսրոպ քահանայ Տէր Յարութիւնեան Գումգա-բուլի՝ արզրումցի, վախճանեալ 60ամեայ 1826ին, որ նախնեաց մատենագրութեանն հմուտ էր եւ ունի գրաբառ ընդարձակ ճա-ռախօսութիւն մը, Տէր Գէորգ Մայր եկեղեցիի, որ 1820էն 1863 շատ ազդեցիկ եղաւ Պատրիարքարանի գործերուն մէջ, Տէր Յով-հան Վանանդեցի քերթող քահանան զմիւռնացի, եւ իր որդին Տ. Երեմիա քահանայ Խասգիւղի սոմարագէտ ու հայերէնագէտ, Տէր Գէորգ Արծրունի Հասգիւղի, Տէր Յովհաննէս Փափազեան Ակհիսարի եւ Տէր Պալուս Օրթագիւղի։

(2) Հետեւեալն՝ յայտարարութիւնն է Տատեան Պօղոս պէյի յուղարկաւորութեան հանդէսին պատրաստութեանց, զոր կը քա-ղենք Սուրէնեան Յովհաննէս էֆ.ի գրուած ձեռագիրէ մը։

Դագաղը ժամ 7ուկէսին դուրս պիտի ելնէ Բերայի Ս. Երրոր-դութիւն եկեղեցիէն։

Ա. Նախ եւ առաջ երկու զապթիյէ ձեռուընին մոմ, կէցիկէն չպիտի ըլլայ։

Բ. Բ. Դրնէն գալիք ասկէրիէ մուզիքան։

Գ. Քանի զապթիյէ ձեռուընին մոմ, կէցիկէն չըլլալով։

Դ. Ութ հատ Բերայի քոմիսիոնէն խավաս, ձեռուընին բան մը չըլլալով։

Ե. Տասն հատ Բ. Դրնէն եկած խավաս, ձեռուընին բան մը չըլլալով։

Զ. Տասը հատ Դրան իչ աղասի, ձեռուընին բան մը չըլլալով։

Է. Մէկ խաւաշէմ՝ երկու զաւազան, ձեռուընին կէցիկէնով։

Ը. Երեսուն սիրացու տղայ ձեռուընին մոմ եւ կէցիկէնները ճերմակ՝ եւ մոմերուն վրայի թիւլերը սեւ։

Թ. Տասը մեծ սիրացու միեւնոյն կերպով։

Ժ. Քահանայք առանց շուրջառի՝ միայն մոմով։

նէին դարձեալ իրենց սեպհական յառաջդիմական կամ յետադիմական կարծիքն ու գաղափարները, իրենց մատենագրութիւնները, մասունքները, հագուելու շքուելու խծծեալ տարազները, բուրաստանները, իրենց հոմարտայութիւններն ու սեփական փափկամոլութիւնները: Ունէին իրենց ինչքին յատուկ գրգռիչներն՝ օշարակներ այս այս պտուղներու, գինի, օղի, մանաւանդ սուրճ և ծուխը, որ կը տիրապետէին կ. Պոլսի մէջ և ունէին շատ բիւ-

---

ԺԱ. Վարդապետք զոյգ զոյգ շուրջառով եւ ձեռուրբնին մոմ:

ԺԲ. Պատրիարքի առաջ եւ երկու քովէն երկու հատ երկայն հատակով խաչանայք՝ առանց շուրջառի եւ առանց մոմի:

ԺԳ. Եպիսկոպոսք շուրջառով եւ ձեռուրբնին խաչ:

ԺԴ. Պատրիարքը շուրջառով եւ գաւազանով եւ խաչ, եւ երկու պզտիկ տղայք՝ շուրջառի ծայրերը բռնելով:

ԺԵ. Ննջեցեալը չորս ժամկոչ ուսերնուն վրայ առնելով, հագուստնին սեւ յաբեր եւ գլուխնին ֆէս:

ԺԶ. Ննջեցելոյն երկու քովէն չորս չորս բուրջա մոմեր. առանց ազգին մէջ գտնուած միրալայ եւ խայմախամներն ունիֆորմայովը թեւերնուն մէկմէկ սեւ թիւլ. առանցմէ ի զատ ծածկոցին չէրիս-ները՝ որ վեց հատ են՝ երեւելի եւ ծեր ամիրաները պիտի բռնեն:

ԺԷ. Ննջեցելոյն երես դրսի կողմերը Դռնէն գալու զինուորները շարուին. եւ այն զինուորները ննջեցելոյն երկու դրսի կողմերէն մարդ ներս մտնելու թող չտան:

ԺԸ. Լուսարար եւ ժամակոչ եւ մահալլէք քէհեայի՝ առանց որ սպասաւորներ են՝ ամեններին այս կարգին մէջը չպիտի մտնան:

ԺԹ. Դռնէն ելող խաչազարդիկ՝ որեւիցէ, առանց կարգադրութիւնը Պէօղլուի Ղալաթա Սարայի մերձէքը գտնուած խուլ սղաքի Ահմէտ աղային յանձնելու է: Տիրացու տղայոց եւ եկեղեցականաց կարգադրութիւնը Նաւրուզեան Յարութիւն աղային յանձնելու է. գրուած կարգով երթալու եւ կամաց կամաց քալելու համար՝ որպէս թէ Թէշրիֆաթճի ըսել է՝ յարգի մէկ անձի մը յանձնելու է: 1863 Դեկտ. 12/24:

եալի հնաւանդներ[1]։ Ունէին վերջապէս իրենց սիրած Պատրիարքները, օրինակի համար՝ «Աղաւնի» Ստեփաննոս Պատրիարքը, Զուհաճեան Մատթէոս և փոքր ինչ ալ Գէորգ Դ. Կաթողիկոսները, որ իրենց մէկ քանիին մի-ջոցով կըրցան կաթողիկոսանալ՝ մեծափառ հանդէսներով յուղարկուելով Տփխիս ու Էջմիածին. ունէին նաև իրենց սեպհական ազնուապետական տիրացուները, մանկածու-ները, հեճուպներն ու ամէն բանի միջնորդները, ունէին և ունէին տակաւին շատ յայտնի ու ծածուկ բաներ՝ ի-րե՛նցը եւ միա՛յն իրենցը։

Սեղանաւորներու այս դասակարգին մէջ՝ կը յիշուին նաև քանեակ մը հայ-հոռոմներ, որպիսիներ շատ կային Փոքր-Ասիայի մէջ՝ մանաւանդ Ակնայ շուրջ գիւղերն ու մօտերը, Թուրի՝ Եզր կաթողիկոսի ատենէն մնացած։ Այս հայ-հոռոմներէն կային Բիւթանիայի կողմերն ալ՝ մինչեւ

---

(1) **Սիրուն Զրօսարան** անուն հին ձեռագիրի մը մէջ կը գտնենք զուարճալի զրուցատրութիւն եւ դատախօսութիւն մը՝ նոյն ժամանակուան գործածելի տաք տեսակ ըմպելեաց ու ծխելեաց միջեւ այլաբանաբար, որ կը յանցի իրենց մեծ մասին ախոռա-վըճիռի մը:

Ախոռի կը դատապարտուին ձեռագիրին լեզուով՝ «**Դինին եւ օղին**՝ յեւրոպա եւ ի նորին նահանգս, այն է Ֆրէնկիստան. **մեղ-րօշարակն**՝ յԱսիա եւ ի նորին նահանգս, այն է Անատօլու. **կը-րեկօղին** ի Պոնտոս, եւ ի գաւառսն նորին, այն է Դըրըմ եւ Ասպագա. **զարեջուրն** ի Մոլտավիա, եւ ի գաւառս նորին, այն է Ռուսաց պողտան. **քաղջուրն**՝ յԱդրիանուպոլիս եւ ի նահանգս նո-րին, այն է Էտիրնէ. **կրկնեացն**՝ ի Հելլեսպոնտոս եւ ի նահանգս նորին, այն է Կելիպոլու: **Սուրճ** սուրբ (Էպուլ Հասան Շաղլի առաջին անգամ ծանօթացուց Մէքքի խանվէին յաջողութիւնները, եւ ուստի եղաւ պաշտպան շահապը խանվէճիներուն: Ըստ Ճիհան-նումայի՝ 1554ին սկսան Պոլիսի մէջ բացուիլ հասարակաց խան-վէներ՝ ինչպէս կը յիշէ նաեւ Ներհուն Յ. Համմէր:) առ իւր

1830ը և կամ ալ դեռ՝ մանաւանդ Կէյլէյի Օրթագիւղը, որոցմէ առած եմ Հալքի կղզիին աստուածաբանական Որթոտոքս վարժարանին մէջ երկու ուսեալ սարկաւագներ, աշխարհաբառ աղէկ խօսող, այլ գրաբար չգիտեն թէպէտև կը փափագին ուսանիլ։ Պոլսոյ հայ-հռոմէներուն մէջ յիշելի ու ամիրապատիւ անձ էր՝ 19րդ դարին սկիզբները՝ Անաստաս աղան կամ ամիրան, երեւելի իր հարստութեամբը ու ազդեցութեամբը, որ հայ լեզուի թարգմանել տուաւ յունական Եկեղեցիին արարողութիւնները(1) (իր հայ՝ ազգով և յոյն՝ կրօնքով);, ինչպէս

---

պա՛կ **զաֆիոնն** եւ **զպէրշն**(․՛) իւրեւ խորհրդակալ բարեկամ, եւ զծուխս (ծխախոտ) ծառայ անձին կացուցանէ եւ զիւր առող իշխանութեան հաստատէ ի բազմուրեալ խաղաղն Կոստանդնուպոլիս։ Զասա զամենեսին յիւրանակէն վինակս արտայայտեալ՝ ինքն եւս **զաֆիոն** եւ **զպերշ** հռեան հաստատեալ աշխէն՝ եւ **զծուխսն** կամակատար կացուցեալ զծառայ ի պայտու՝ զաթոռ իւր հաստատել կացուցանէ ի Վիզանդ։

Զուարճախօս **թիրեաքի** մը գրիչէն ելած այս վկայութիւնը կը հաստատէ՝ թէ 19րդ դարու սկսեն առաջ գինաւոր ըմպելին ու ծխելին են եղեր ի Կ. Պոլիս՝ սուրճ եւ ծխախոտ՝ **աֆիոնով** ու **պերշով** համեմեալ։ Քահվէն առաջին անգամ Պոլիս հաստատուեցաւ 1554ին հալէպցի մը միջոցով, որ կանուանէր Շէմս՝ Շէյխ Շէտէլիի անուն արաբին խանութէի գիւտն ընելէն 300 տարի ետք։ Տե՛ս Համմէր, **պատմութիւն Օսմանեան** թարգմ. J. J. Hellertի, հատ. Զ. էջ 280։

(1) Հետեւեալը՝ դուռն է Անաստաս ամիրային տպել տուած յունարէն եւ հայալեզու Մաշտոցին. —

**ՄԱՇՏՈՑ**

**Հատընտիր խաւարմամբ հանեալ ի մեծ Մաշտոցէն**

**Յունաց որ կոչի**

**ԷՖԽՕԼՕԳԻՕՆ**

Նորոգ թարգմանեալ եւ արագրեալ՝ աշխատասիրութեամբ Անաստասայ մեծիմաստ վարժապետին Յունաց եւ պատուելի Գրիգոր

*տասնեւմիերորդ դարին ամբողջովին եւ անձամբ կատարած էր այսպիսի թարգմանութիւն մը հայ-հռոմ Կարապետ Իշխուն, որպէս կը գրէ Հ. Ղուկաս Ինճիճեան*(1)։

*Այսպէս՝ հայ-հռոմութիւնն ալ ազգին մէջ քանի մը հարիւր եւ աւելի շատ տարիներու երեւոյթ մըն էր՝ նման ամիրայութեան, եւ այդ երկուքն ալ՝ գրեթէ ոչ եւս են նմանապարագ արար։*



*դպրի Փէշտըմալճեան. «Զանի եւ արդեամբ բարեպաշտօն եւ աստուածասէր սառաց Օհաննէս աղայի, որ ի սուրբ Գէորգայ վանից գիւղէն Ակնայ քաղաքին»:*

*Հրամանաւ Տեառն Աղաքանցենոսի Որբազան արքեպիսկոպոսի եւ տիեզերականն Պատրիարքի Յունաց, տպագրեալ յՕրթագիւղ 1831, ՌՄՁ:*

(1) *Ի հատորն Բ.* **Ասիա**, *Մասն Ա. (էջ 305): Մինչեւ Կ. Պօլսոյ առումը նոյն մայրաքաղաքին մէջ հինէն գտնուող Հայերը կրօնքով յոյն եղած էին մեծ մասամբ, որով հայ-հռոմներու մասն կը կազմէին: Տե՛ս* **Երեւակ** *1861 հատ. Ժ. (էջ 18):*

## ԺԳ.

Ինչպէս նկատեցինք վերերն ալ՝ այս ամիրաներէն բացառաբար դուրս կկենային՝ Նախ մեծ Ամիրան Ղազէզ Յարութիւն, որուն պատմութիւնն՝ աղէկ գէշ գրուած է մանաւոր գրքոյկով մը, և հոս գործիս չափը չներեր երկայնաբանել իր վրայ. այս Տիւզեանք ու Զարպհանէջի միւս ջօջերը, վաճառական Տատեանները, որոնց վրայ ևս կարծէ՛ գրել առանձինն, Ճարտարապետ Պալեանները, որոնց վրայ լաւագոյն կըլլար որ գրէր ազգականութիւն չունեցող անձ մը. Սէրվէրեան Յովհաննէս ամիրայ. Միսաք ամիրայ Միսաքեան սեղանաւոր և միբեկեղի Փրկիչի Հիւանդանոցին, որ կառոյց Պօյաճը գիւղի եկեղեցին և Թաղուեցաւ անոր շրջափակին մէջ 1856ին: Գէորգ պէյ Երամեան՝ որ հանրային գործերու մէջ ալ բաւական ազդեցիկ դրութիւն մը ցուցընելէ ետք՝ քաշուեցաւ իր տաճարին տիկնոջը հետ Բարիզ և հոն ճոխաբար ապրեցաւ մինչև խոր ծերութիւնը. մինչ իր որդիներէն բարձրապատիւ Սրբուհամ փաշայ՝ Լուսաւորի տիկնոց վրայ վարեց կենցաղ մը փառաւոր և հարուստ: Տատեան Յովհաննէս[1] պէյ՝ խոհեմ, ժիր, աշխատական և ձեռներէց անձնաւորութիւն մը, որ բացի նշանաւոր գործունէութիւններէ թէ՛ ի նպաստ Տէրութեան թէ՛ ի նպաստ իր սիրած տոհմին՝ երեք տարի անընդհատ եռեւէ եղաւ մաքննական գիւտի մը եւ բարոյացի դիւանի մը համբե-

---

(1) 1847ին Տատեան Յովհ. ամիրայ՝ իր Յարութիւն Դարեցին որդիին հետ՝ արքունի հրամանով ուղեւորեցաւ Եւրոպա՝ գնելու համար արքունի գործարաններուն կարեւոր գործիք ու մեքենաներ:

րութեամբն և հանճարիմացութեամբ(1)․ Իր որդին Յա-
րութիւն-Գարեգին փաշայ՝ նշանաւոր դիւանագէտ, կըր-
ցաւ միանգամայն արթնութեամբ ծառայել մինչ ի շունչ
վախճանին թէ՛ Պետութեան թէ՛ ազգին, և բարին ու
գեղեցի՛կը սիրելու իր աստուածեռնութեան երեսէն՝ վախ-
ճանեցաւ չունեւո՛ր վիճակի մէջ։ Այս շարքէն ու հինէն
կան նաև քանի մը հայազգեաններ, որոնցմէ էր՝ Նորա-
տունկեան Յակոբ Գրիգոր Սիմէոն հայրերուն վարպետն՝
Էֆէնտի պաշի Յարութիւն ամիրան(2), որուն խորամն էր
(փաշաանէյա) այժմու Պէյպէրեան վարժարանն ի Սկիւտար՝
իր բոլորի ընդարձակ հողերովը։

Եւ անոնք ամէնն ալ՝ ամիրայական կցորդ ու հա-
մապատիւ էին վերիններէն ամէնէն ջոջերուն, և միասին
ի ժողով կը գումարուէին առհամայն կարեւոր խնդիրներու
համար, խնդիրներո՛ւ՝ պատրիարքարանի ու պատրիար-
քական փոփոխութեանց, եկեղեցիի ու Թաղերու մատա-
կարարական անօրէնութեանց, դպրոցի, հիւանդանոցի,
որբանոցի շինութեանց և այլն և այլն։

---

(1) 1844ին Վեհ. Սուլթան Մէճիտ արքան այցելեց Նիկոմիդիա, Պրուսա եւ Միխալիչի՝ ուղեկցութեամբ Յովհաննէս եւ Պօղոս Տատեանց, Կարապետ Պալեանի, Յովհաննէս Սերվերեանի եւ Կարապետ ու Յակոբ Տիւզեանց, որոնց իւրաքանչիւրին պարգեւեց նաեւ ադամանդեայ տուփեր՝ ի վարձ իրենց հաւատարիմ ծառայութեանց:

(2) Այս այն Յարութիւնն է՝ որ ժամանակին **աաանեըկունե-րուն** մէջ ամէնէն աւելի պնդողն էր Աստուածատուր խիստ Պատրիարքին հրաժարելուն վրայ, այնպէս որ՝ երբ օր մը դարձեալ կը ժտէր նոյն Պատրիարքին թէ «անգործա՛ռ. պիտի տաս հրաժարա-կանդ»՝ խստաբարոյ Պատրիարքն ա՛լ չդիմանալով «Ելի՛ր՝ գրե՛մ» կըսէ, եւ թուղթը կառնէ՝ ու իրա՛ւ ալ կը գրէ, բայց հրաժարա-կանէ աւելի աղիտաբեր բան մը, հայցայէս Յարութիւնին աքսո-րավճիռը, զոր ինքն հայցայէսը միամտութեամբ առնելով՝ կը տանի փակեալ առ որ անկ է: Այսպէս՝ յանդուգն Յարութիւն ամի-րայ յանձնես կըլլայ իր իսկ աքսորումին հրամանատարը:

Ամիրաներուն և ամիրապատիւ աղաներուն թիւն ալ Օսմանեան պետութեան փառաւոր պաշտպանութեան ներքեւ՝ հետզհետէ աճելով և գրաւելով նախանձելի ու արդասաւոր վստահութիւն մը՝ հասած է, 1800էն մինչեւ 1845ի ժամանակները, գրեթէ 150ի, որ կըրցած են ցայն-վայր՝ իրենց պարզ և անայլանց (inaliénable) ճարտար-ութեամբը դիզել մե՛ծ հարստութիւն. վկա՛յ՝ իրենցմէ մինչեւ ցայսօր կանգուն մնացած քանի մը մեծ կառուց-ուածներն ու ապարանքները(1), որ կը կենան Պոլսոյ ա-միրայաբնակ արուարձաններուն մէջ, վկա՛յ դարձեալ՝ Փոքր-Ասիոյ ու Պոլսոյ եկեղեցիներուն դպրոցներուն և վանքերուն իրենց նուիրած պէս պէս յիշատակները (մա-նաւանդ Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքին ու Ակնայ եկեղեցիներուն) և տպագրել տուած գիրքերն ու մշա-կել տուած հողերն ու այգիները, թո՛ղ այն անհագին գումարներն ու գոհարեղէնները, զոր վատնեցին անխնա-յաբար թէ՛ իրենք թէ՛ իրենց սերունդներուն անփորձ ու ճոխարսայ մասը: Հաստատուած զրոյց մը կայ՝ թէ Դա-դէշ արկղիկ մը, չա՛տ ծանրագին պարունակութեամբ, աւանդաբար ի պահ դրած է եղեր Ս. Խաչ Եկեղեցիին (ի Սկիւտար) աւանդատունը. իրեն ազգականացած Ակնցի ամիրայ մը՝ օր մը իշխանաբար բանալ կուտայ աւանդա-տունը ձեռամբ լուսարարապետ քահանային և զայն պարպելով մէջինը՝ նոյն վիճակին մէջ կը փակէ արկղիկը, և կը ձգէ հոն դարձեալ ի պահ... Դադէշ յանկացուած

(1) Որոնց մին է նաեւ Գումգաբուի Հայոց Պատրիարքարա-նին կից մեծ տախտակաշէն ապարանքը Ճանիկ ամիրայի, որ Օրմանեանի պատրիարքութեան օրով վերածուեցաւ վայելչաշար ընդհանուր դիւանատունի:

էր կտակով այդ հարստութիւնն իր ազգականներուն և հիւանդանոցին ։

Յետ իր վախճանին՝ արկղիկը բացուելով՝ յո՛յս անգամ չեն գտներ մէջը ։

Ամիրայական սեղանակալութիւն ։

Կրնայ թէ ամիրայական այս անիրաւութեան ամօթալի յայտնութիւնը նախապատճառ մը եղած է՝ որ ազգին յառաջխաղացներէն մաս մը համայնական ու եկեղեցական գործերու վարչութիւնն այս կարգի ամիրաներուն ձեռքէն առնելով՝ կանոնաւորապէս ընտրեալ վստահելի անձանց յանձնեն ։

«Ամիրայք» առաջնակարգին սեղանաւորական(1) ցանկին մէջ՝ կերեւին նաև քանի մը ջոջ Հրեաներու անուններն ալ. և Հրեաներն՝ իբրև բաղդակից Հայերուն Օսմանեան Տէրութեան ինչպէս և բոլոր աշխարհներու մէջ՝ շատ ուրեք խնամութեամբ մը գործակից ալ եղած են անոնց. դրամի գործերու առանձին կեանքը և առեւտուրի կողմէն՝ աշխարհի վարժապետն են Հրեաները ։ Քամոնտոյ, Քասդրոյ և այլ նշանաւոր տուներ ունեցած են Հայերու հետ գործակցութիւններ ։ 1848ին՝ Կ. Պոլիս ի Դալաթիա հայագիր տպարան մը կը բանէր Ն. տը Քասդրօ հրեայ տանին ձեռքով, որ ցարդ Կ. Պոլսոյ շնորհքով Հրեաներէն է ։ Այս տպարանէն՝ ելած էր Բանալի կամ պատասխանի մտաւոր եւ գրաւոր թուաբանութեան անուն փոքրիկ գիրք մը՝ տպուած 1848ին յատակ ու մաքրագիր հա-

---

(1) 1865էն 1870 Կ. Պոլսի եւրոպական մամուլն սկսած էր աղէկ չգրել սեղանաւոր Հայերուն վրայ՝ անշուշտ արեւմտեան եկամուտ նախանձով մը, որպէսզի Հայերն իրենց պետութեան աչքէն եւ դրամական ու վաճառական գործերն անցնին [illegible] եւրոպացիներուն ձեռքը . . . ։

յերէն, 51 էջ. Նոյնպէս Պապազեանի եւ Բրոքհաուզենի անուն հայերէն հատոր մը 363 էջ՝ տպուած նոյն տարին։ Տը Բասդրոյ տուներն եղած են՝ դրամատէր գիտուն եւ բժիշկ անձնաւորութիւններ. արդ իսկ՝ Բասդրոյ եղբարց մին ապարան մը կը բանեցունէ Ղալաթիա, Բէրշէմպէ բազար. այս եւ Բամմաս տուներուն գերեզմաններն ալ՝ Խասգիւղ Հայոց գերեզմանատան կից Հրէից հին գերեզմանատունը կը գտնուին՝ վայելչակերտ չիրիմներով։ Հրէից թիւն հասած է հիմայ ընդ ամէնը 11 միլիոնի։

* * *

1828 Փետր. 10ին՝ Պարսկական Թիւրքմէնչայ գիւղին մէջ հաստատուեցաւ՝ ընդ մէջ Ռուսաց եւ Պարսից այն յաւիտենական հաշտութեան պայմանագիրը, որուն երրորդ յօդուածը կը սահմանէր «կատարելապէս սեպհականացունել Ռուսաց Տէրութեան Երեւանի խանութիւնն յայս եւ յայն կոյս Երասխի, եւ Նախիջեւանի խանութիւնն եւ իշխանութիւնը»։ Այս պարագան՝ բարգաւաճութեան մեծ միջոց տուաւ այդ նահանգին, որով բաւական ատենէ ի վեր այդ տեղուանքը նահապետական մեծութիւնն եւ ճոխութիւնն Հայերու վերակոչ ու պատճառ եղաւ պայծառանալուն Ռուսահայ կարգ մը մեծերու, որոնց մէկ մասն անուանած ենք գործիս Ռուսահայոց վերաբերեալ բաժիններուն մէջ։ Այս փոփոխութեան քիչ նպաստ չմատոյց Ներսէս Աշտարակեցի Արքեպիսկոպոսն (ապա կաթողիկոս), որ էր վիճակաւոր Հայոց Վրաստանեայց։ Ներսէս Արքեպիսկոպոս՝ որ իր փոքրիկ մարմնին մէջ կը կրէր սէր ու կրօն մեծ սիրտ մը եւ մինչեւ ի չուն վախճանին չձգեց գրիչն իր ձեռքէն(1) եւ սկզբունքն իր գլու-

(1) Ձեռքի՛ս անմահա՛ր եմ ի՛ր իսկ ձեռքով գրած պաշտօնական

խէն՝ տուացու, այս աւիթով. Ռուսաց կայսրէն «Աղեքսանդրի Նեւսկոյ Սրբոյն կարգի հաղորդակցութիւն մը. որուն պարգեւագրին գրաւոր թարգմանութիւնը կը յեռունք հոս(1) ի յիշատակ մեծանուն Օծեալին, որ՝ ոչ մեծատուն(2) (վասն զի դրամը չէր սիրեր) այլ մե՛ծ մարդ մը հանդիսացաւ մեր Հին օրերուն մէջ՝ Էջմիածնի Ս. Տաճարին Շահապետն այն։ Մեծ պետերն՝ ազդակի կազդեն իրենց ժամանակակիցներու մեծութեանց վրայ. եւ յաճախ պատճա՛ռն ալ կըլլան անոնց։

—Բարձրագոյն պարգեւագիր տուեալ Սրբազան Ներսէսի վիճակաւոր արհի Եպիսկոպոսի Հայոց եւ Վրաստանեայց։

Սրբազան Ներսէս Արհիեպիսկոպոս Հայոց

Ի բազմաց հետէ եւ ի բազում դիպուածս ցուցիք դուք Տէրութեան Ռուսաց գլարդոյ Ձեր մտերմութիւն, եւ մանաւանդ յայժմեան պատերազմին ընդ Պարսից, որոյ բարեյաջող վախճանին, որպէս յուսամ ես, ունի ի մօտոյ յանկ ելանել, զփոյթ ի մէջ առիք աշխատանօք մեծառու զօրս մեր, մինչեւ անձնատուր լեալ յանդիմանակաց վտանգին, հրամանատարին աւանձին Կովկասեան զինուորական խմբոյ, ճէներալ ադիւտանի Պասկեւիչն բազում անգամ ծանոյց ինձ զպայծառ ձեր զովանի սիրազործութեանց յայս արարեալ՝ թէ ի տիրել ամենայն պատերազմական գործառնութեանց՝ հանդիսացեալ իցէք անձամբ անձին աուսել նախանձաւոր օգնից Ռուսիոյ՝ հա-

---

քուղթերը նամակներն ու ստրակները, կոկիկ ու մաքրիկ արագացուցրութեամբ մը, որոնց մէկ խանին ստուած են ասս անդ:

(1) 1829ին ի Կ. Պոլիս ձեռագրուած ստրակ մը առնելով:

(2) 1849ին Ներսէս կաթողիկոս Աշտարակեցի ղրկեց 1000 րուբ ի Զմիւռնիա ի նպաստ շինութեան Ս. Ստեփանոս եկեղեցիին:

*տասուն պահելով ի մէջ ժողովրդեան Հայոց զբարեհամբոյր առ մեզ հպատակութիւն՝ ոչ միայն բարեխառն խորհրդատուութեամբ և յորդորմամբ, այլ և անձամբ իսկ լինելով օրինակ. և ի նշանակ այսքան օգտակար նպաստից ձերոց. և ի ցոյց յատուկ բարեհաճութեան առ մեր ժողովուրդն Հայոց՝ խրախուսս վարկայ ես հաղորդակցել զձեզ կարգի սրբոյն Աղեքսանդրի Նևսկայ. զորոյ զնշանսն ընդ այսմ յղելով առ ձեզ մնամ ձեզ բարեյօժար։*

*Ի բնագրին ստորագրեալ է իւկական ձեռամբ նորին Կայսերական մեծութեան*

ՆԻԿՈՂԱՅՈՍ

*Ի Ս. Պետերբուրգ* 1828 *Յունուարի* 25

*Ու տարոց վրա՛յ էր՝ որ Նորագոյն եռանդով եւ հոգիով կազմուեցան, յիշեալ Ռուսահայ Նահանգներուն մէջ, ազնուական կամքեր՝ ազգի՛ եւ ազնուական գործունէութեանց եւ արդիւնական խորհրդոց՝ մեծատուններու եւ հիմնաուրց ազգատոհմերու մէջ։*

*
* *

*Թուրքահայ ամիրաներուն չքաւորը ածականներն էին՝ սկսելով ղուկասեան «Լուսաճաճանչ»էն՝*(1) *վանմարիա՛ն,*

---

(1) Օր մը՝ միամիտ **Ղուկաս** եպիսկոպոս մը գրել տալու համար աղերսական նամակ մը առ ձանին ամիրան՝ կերպայ Փէշթըմալճեան Գրիգոր պատուելիին, եւ կը խնդրէ որ այդ նամակին ինք պատուելին շարադրէ իր գեղեցիկ հայկաբանութեամբը, եւ ամիրային ալ դնէ բացառիկ չքնաղ մը. «Ի՞նչ կուզես որ դնեմ, կըսէ պատուելին, պէրճափա՞ռ գրեմ» «Չէ՛ պատուելի աւելի, մեծ անուն մը դի՛ր», «Է՛յ գերափառ գրե՞մ», «Չէ՛, պատուելի՛, աւելի մեծ» «Է՛յ ի՞նչ գրեմ» «Լուսաճաճա՛նչ ամիրա՛յ գրէ» եւ պատուելին ժպտելով մը կը ճանաչագրէ «լուսաճաճանչ»ը, Լուսաշաւիղին ճեղքեան անձ՛յս եւ ալ ֆաթի՛կ պատուելին:

Բիւզանդիոնի օրագիրին 925 և 926 թիւերուն մէջ։ Այս հանի Մկրտիչ Զարդեան ճարտարապետին կցորդ է նաև Սըվաճի Պաշի Յովհաննէս խալֆան կեսարացի՝ Այվազեան մականունով, որ կը բնակէր Սկիւտար Իճատիյէի առաջին բարձունքին գլուխն՝ ընդարձակ ապարանքի ու պարտէզի մը մէջ, և որ գլխաւոր պաշտպանն և ասպնջականն էր Խրիմեան Վեհափառ Ս. Կաթողիկոսին Էջմիածնի ի Կ. Պոլիս։ Ասոնց կարգին յիշատակելի է նաև Գրիգոր Աղայ Ներսէսեան՝ նոյնպէս ի Սկիւտար բնակեալ, որ Կարապետ Պալեանի և որդիներուն ճարտարապետութեան ասպարէզէն ու այս աշխարհէ ալ հրաժարելէ ետք՝ երբ յաջորդ. շարունակեց անոնց գործը մեծ ճարպիկութեամբ, և դիզեց քառորդ միլիոն ոսկիի մը չափ հարստութիւն. ինքն ալ Բաբերդցի էր և պարզ գործաւորական վիճակէ մը բարձրացած։

*
* *

Սուլթան Մահմուտ երկրորդի օրերուն կը փայլէր նաև, արքունի նաւարանին մէջ, տէմիրճիպաշին կարևոր պաշտօնով՝ Տէմիրճիպաշի Պօղոս աղայ՝ Տէմիրճիպաշեանց նահապետական գերդաստանին երկրորդ նախահայրը, որ ունէր 13 զաւակ. որոնցմէ Եղոյք Տէմիրճիպաշեան՝ էր հայրը Սերոբէ և Թորոս Տէմիրճիպաշեանի, Կարապետ Տէմիրճիպաշեան՝ հայրը բանաստեղծ-իմաստասէր Եղիա Տէմիրճիպաշեանի, Յովհաննէս Տէմիրճիպաշեան՝ հայրը Գարեգին Տէմիրճիպաշեանի, Տնօրէն հեռագրական ու Թղթատարական վարչութեան մէջ, և Գէորգ Տէմիրճիպաշեան՝ հայրը Լեւոն Տէմիրճիպաշեանի, Տնօրէն Համր. պարտուց հաշուակալութեան մէջ։

Տէմիրճիպաշեան գերդաստանին առաջին նախահայրն էր՝ 18րդ դարուն մէջ՝ Գէորգ անուն քաջահոգի վրա-

տանց մը. երբ Վրաստան բոլորովին պարտութեան մատնուեցաւ՝ ըստ ժամանակին սովորութեան գերիները գլխատուելու էին. Գէորգ ալ գերիներուն մէջ գտնուելով՝ այն ինչ դահիճը կը պատրաստուէր լմնցունել գլուխն ալ, «Ողորմեցէք ինծի, գոչեց, իմ կեանքս՝ որ թերեւս իմ մեռնելէս աւելի օգտակար պիտի ըլլայ ձեզի. ես գործաւոր վարպետ մըն եմ»։

Կատարուեցաւ գերիին խնդրանքը, և զրկեցին զինքն արքունի նաւարանն իբրև գործաւոր, ուր երկու տարի աշխատելէն ետք՝ անուանեցաւ դարբնապետ (Տէմիրճի-պաշի). Պոսթանճի-Պաշիի տիտղոսով, որ էր գլուխ Ենիչէրիի կարգի մը, վասն զի Տէմիրճի պաշին իր հրամանին ներքև ունէր 4000 Ենիչէրի։

Ժամանակին Թէրսանէյի նախարարը՝ նախանձելով այս Ենիչէրի աղայի Տէմիրճիպաշիին բացառիկ ազդեցութեան վրայ՝ դաւանայէս բողոքեց անոր դէմ Սուլթանին, որ և մահու վճիռն արձակեց նորէն Հօճայ Գէորգ Տէմիրճիպաշիին. դահիճները առաջնորդեցին զայն Տէմիրճիպաշին Ճինճի Մէյտանը. պատրաստեցին մահապատի հանդերձանքը, ձեռուըները կապեցին, աչքերը գոցեցին ու հարուածն իջնալու վրայ՝ մեծ վեզիրը յանկարծ կը սուրայ Սուլթանին և կը յայտնէ թէ առանց Տէմիրճիպաշիին՝ Թէրսանէյի գործերը պիտի իյնան անկանգնելի. Սուլթանը անդի կուտայ ու կայծակնօրէն հասցունել կուտայ Տէմիրճիպաշիի կեանքը շնորհող հալֆիրուսկ մը ՚ի Ճինճի Մէյտան. Թերաքամ սուրին ներքևէն կը փրկուի Հօճայ Գէորգի կեանքն՝ այս երկրորդ անգամ և կը տանին զինքն հանդէպ արքային, որ գգուելով իր վերականգնեալ հաւատարիմը. «Տա՛ռ փախցար, այնպէս չէ՞ Հօճա՛յ Գէորգ» կըսէ. Գէորգ՝ գլուխը շարժելով «Ո՛չ

այնչա՛փ, էֆէնտիմ, Ալլա՛հ(¹) ազատեց զիս» կը քաջա-բանէ . . . :

Այս քաջ մարդէն սիրած գերդաստանին աչքի զար-նող նկարագիրն եղած է՝ Հնդակից անձնանուիրութիւն և խոր ու վեհանձն անկեղծութիւն, որուն քանիցս փոր-ձերը տուաւ Եղիա Տէմիրճիպաշեան գրագէտն ալ՝ ան-արհացեա՛լն, աւա՛ղ, իր եղերական վախճանին . . . :

# ԺԴ.

Առանց 1853ի(²) Ղրիմի դաշնակցական պատերազմին՝ վերջինչեալ մեծատուններու տակաւ նուաղեալ դիրքն ու հարստութիւնը չպիտի յաջորդէր կարգ մը նորագոյն սեղանաւորներէ պաշտօնեաներէ ու աշխարհահռչակ վա-ճառականներէ, որ վերջեալ թուականէն սկսան հետզհետէ, տարբեր կալուածներու վրայ, շինել իրենց բաղդն և բառ այդմ յաջորդել նախնի տեղական մեծատուններուն՝ աւելի՛ գիտակից աւելի՛ ինքնօգնական ու եւրոպական հմտութիւններով, գիտութիւններով, ճարտարութիւննե-րով և գործունէութիւններով :

Առանցմէ՛ ալ՝ առանց պաշտօնապէս կամ հանրապէս

(¹) Այո՛, իմին Աստուած, չորիցս ազատած է զիս գրիչս այ այդգոյն ճգնաժամերէ՝ վա՛սն մեղաց իմոց . . .

(²) Իբր յիշատակելի կը ծանօթագրեմ հոս՝ որ 1854ին եղաւ նոր հրովարտակ մը, որով իրաւունք տրուեցաւ քրիստոնեաներուն վկայութիւն տալ քրէական իրողութեանց մէջ. անիսլամները զուրկ էին ցայն վայր այս իրաւունքէն: 1855ին ալ հրատարակուեցաւ ուրիշ հրովարտակ մը, որով վերցաւ խարաճ անունով հարկն անիսլամներու վրայէն:

կոչուած ըլլալու ամիրայ՝ կրնան համարուիլ ամիրայ՝ Տատեանց ազգականացած Գափամաճեան բազմեղբայր-ները, հիմնադիր վաճառականին Յովակիմեան, վաճառա-կան բնակած Սիմոն աղայ՝ առեւտրոց մանիֆաթուրայի, մանիֆաթուրային ռահվիրան: Պէյլէր օղլու Յակոբ աղայ Կեսարացի՝ հզօ՛րն ազդեցութեամբ՝ մեծ սեղանաւոր եւ անոր Մկրտիչ Եսայեանի, Գույումճը Մելքիսեդ աղայ՝ ազդեցիկ Թում-գապուցի եկեղեցպան մեծ մը, Կիւ-միւշճի Գասպար աղայ, որ ոսկերիչներուն եւ դրամագէտ-ներուն հարստագոյն ամրագոյնը՝ վասն զի կանխիկա-գոյն՝ ուսափ եւ իմաստնագոյն եղաւ: Քիւրքճի պաշի-ները՝ ծագումով Եւդոկիացի, որոնցմէ Բարթող Քիւրք-ճիպաշեան, 1860էն առաջին համբաւաւոր գործունէութիւն-ներ ալ ունեցաւ բարեբար, Կեսարացի Մանուկեանները (Մանուկ-օղլու). Աճէմ օղլու Պետրոս'նշանաւոր սրահաճի, որ 200000 լիր ի՛ չափ հարստութիւն մը շինելով քաշուե-ցաւ Փարիզ ու Վիեննա եւ ապրեցաւ հոն ցվերջ՝ կտակե-լով իր հարստութիւն ամբողջ՝ Փարիզի քաղաքապետու-թեան!. Իրեն յաջորդեցին հոս 'ի Կ. Պոլիս Կարապետ, Գրիգոր, Տիգրան եւ Յովսէփ Գարակէօզեան եղբարք՝(1) ծագումով Ռոտոսթոյէն՝ որ 1855էն 1900 ամէնէն աւելի ապահովական ու ճշտապահ տուներն համարուեցան սեղա-նաւորութեան եւ վաճառականութեան 'ի Կ. Պոլիս 'ի Մանչէսդըր եւ 'ի Դամբէժ, ինչպէս Յովհաննէս ու Միքայէլ Յակոբեան(2) եւ Յովհաննէս ու Մկրտիչ Եսայեան(3): Ասոնց

(1) Գարակէօզեանք՝ բաց ի մասնաւոր եւ ոչ տարփողեալ ան-յայտ նուէրներէ ու նպաստներէ՝ տուած են ազգին 20,000է] աւելի ոսկի, եւ աւելի ալ կուտային թերեւս եթէ [illegible] հետեւանք չըլ-լային օրագիրք եւ անյայտ ոմանք...:

(2) Բարերարք Կ. Պոլսի մէջ Ս. Փրկչի հիւանդանոցին ու շինողք Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցիին.

(3) Շինողք Բերայի Եսայեան վարժարանին:

կարգէն են նաև Կարապետ Գալուստեան վանեցի վաճառական Եգիպտոսի մէջ, որ կառոյց Գահիրէի հայ վարժարանն և կտակեց անոր իբրև կալուած ընդարձակ հողեր. Ղարիպեան Յարութիւն ազնուական 'ի Թիֆլիզ, Կարապետ Անուշեան՝ Պուքրէշի հայ համայնութեանց բարերար. Բռունդուքեանք (Թրանկիւլեանք) 'ի Վիեննա և 'ի Սուչավա՝ հին ու ազնուական գերդաստան մը կալուածատէր, որ խնամութեամբ կցորդեցան Կ. Պոլսեցի Տօքթ. Խորասանճեանց հետ, Կեսարացի Կիւլպէնկեան Սերոբէ ու Սարգիս եղբարք[1] և որդիք՝ Պարսիկ Յովհաննէս ու Կիւլլապի եղբարք, Գալուստ Կիւլպէնկեան յԱնգղիա, որ ունին մէկէ աւելի համբաւաւոր յիշատակներ թէ՝ յԵրուսաղէմ թէ՝ 'ի Կ. Պոլիս թէ՝ 'ի Կեսարիա և այլուր: Նշանաւոր էր նաև Բէյլիզեան Մկրտիչ աղէյ՝ Սեղանաւոր Եգիպտոսի բնակչիններուն որուն եղբօրորդիքը՝ Արթին ու Միքայէլ աղէյք Բէյլիզեան՝ նոյնպէս Եգիպտոսի մէջ հասան պետական մեծ պաշտօններու:

Գաւառականներու մէջ ալ՝ այս միջոցին՝ երեւցած են նշանաւոր հայեր, ինչպէս Մուշի մէջ Մեծօ (մեծատարափ) Միքայէլ օղլու մահտեսի խոճայ տային, որ շինել տուաւ աղբիւր մը Մուշի շուկային գլուխը. և ջուր բերել տալով մօտ տեղէ մը՝ ծախսեց 380 ոսկի չափ, որ Կ. Պոլսի հաշուով կ'ընէ 1000 ոսկի: Այդ աղբիւրը կը կոչուի ցարդ խօճայ տայիի բունարը:

Նորերէն կան նշանաւոր վաճառական զմիւռնացի Պալեօզեանք, Սպարդալեանք[2], Մարտիրոս Յովսէփ Տիգրան Թոքաթեանք, Թադէոս Ալինաք՝ որ արժանի յաջորդութեամբ գլուխ կեցաւ իր հանգուցեալ խնամա-

---

(1) Բարերարք Ս. Փրկչի Հիւանդանոցին եւ այլ հաստատութեանց:

(2) Հիմնողք Զմիւռնայի Հայոց Հիւանդանոցին:

ներ քեռիին՝ Մատթէոս Թոքաթլեանի՝ Անգղիայի Տան, Գէորգ Թօփալեան ու եղբարք Կիւրինցի, գմբռնոցի Եսայեանք, Կ. Պոլսեցի Հաճեանք, Կ. Պոլսեցի Յովհաննէս Թաշճեան բարեպաշտ և բարոյագէտ՝ վաճառական գործի յԱմերիկա, Ոսկեան եկեղեցասէր եղբարք[1], Կարապետ Եղիազարեան յԱնգղիա, Կիւմիւշկէրտան, Յարութիւն և Մանուկ Սմբատեան եայլք: Իսկ պաշտօնեաներէն ու արուեստագէտներէն՝ Գաբրիէլ էֆ. Նորատունկեան, Աղւանվէրտի Յովհաննէս էֆէնտի՝ բարեգործ ու բարեկրօն աղնուական մը, որուն ծագումն 1908ի Բազմավէպերը կը տանին մինչեւ հին Կամսարականաց տոհմին, Սադըղ Յովհաննէս փաշայ, Անտօն պէյ Աղւանվէրտեան, Զամիչ Յովհաննէս էֆ., Փորթուքալ Միքայէլ Փաշայ, որ Եգիպտէի պատմագրութեան վրայ գրած է հմտալից ուսումնասիրութիւն մը[2], Թնկըրեանք, Արիստակէս էֆ. Ադարեան[3], պատկերհան Յովհաննէս Այվազովսքի ռուսահայ, պատկերհանք Ոսկանի Պէհզատեան և Աբրահամ Սադայեան 'ի Սկիւտար, բժիշկք՝ Տօքթ. Միքայէլ Խորասանճեան[4], Տօքթ. Յովհաննէս Բեաթիպեան, բժիշկ մասնագէտ Տօքթ. Յովսէփ Ճիզմանեան, Տօքթ. Յովսէփ Թորոսեան՝ հիմնադիր Լէմպէրկի

(1) Բարերարք Արմաշի վանքին ու շինողք Սկիւտարի Ս. Կարապետ եկեղեցիին:

(2) Տպագրեալ ի Վենետիկ Մխիթարեանց տպարանն 1902ին:

(3) Բարերարն Հայ հռոմէականներու Բերայի Ս. Յակոբայ անկելանոցին. իր եղբայրն էր՝ Ստեփաննոս Պետրոս Ազարեան Հայ հռոմէականներու կաթողիկոսը: Երկուքին այս եղբարք 1848ին հրատարակած են նաեւ ընդարձակ բառգիրք մը յունարէն, իտալերէն, հայերէն, տաճկերէն, Վիեննայի Մխիթարեանց տպարանին:

(4) Տօքթ. Միքայէլ Խորասանճեանի Բարեգործական Քոյրը կտակեց 1907ին ի կենդանութեան՝ տասներկու հազար օսմ. ոսկի Կ. Պոլսոյ Հայոց Ս. Փրկչեան Հիւանդանոցին:

Թորոսեան հաստատութեան, ուր կը կրթուին 50ի չափ հայ աղայք. Տօքթ. Բարունակ պէյ Ֆէրուհխան և Տօքթ. Սահակեան Փաշայ Արսլանեան, որ և քաջ խօսող դիւանագէտ բանասէր ու պատմագէտ անձնաւորութիւն մըն էր (վախճ. 1901ի վերջերը). գրած էր իր ընդարձակ կենսագրութիւնը, որմէ մաս մը կարդացած ալ էր գործիս հեղինակին և որուն ընագիրը՝ ժամանակակից պատմութեան վաւերական մանրամասնութիւններով յարգի ու կարևոր, անհետացաւ յետ վախճանին հանկարծակի իր կտակին: Ներշանաւոր էր նաև իբրև պատմագէտ քաղաքագէտ հրապարակագէտ Յովսէփ Վարդան փաշայ՝ հայ հռոմէական:

Եգիպտոս նշանաւոր եղան նաև վերջերը Պօղոս փաշայ Նուպարեան, Հայկ էֆէնտի Էքիզլէր վաճառական, ու Կոմսարական բանասէր վաճառական եղբարք՝ քանի մը ուրիշ վաճառականներու հետ, որ 1895էն ի վեր սկսան ածիլ ու բարգաւաճիլ հոն դիւրագոյն պարագաներու մէջ: Եգիպտոսի Հայ գաղթականութիւնն սկսած է 11րդ դարին երբ Գրիգոր Կաթողիկոս հոն անցաւ. Նոյն ժամանակ իբր 30000 Հայ Եգիպտոս գնացին կը պատմագրուի:

Ամիրաներու վերջա՛բան՝ կայ նաև փոքրիկ Տօնիկ ամիրայ մըն ալ, որ Գասըմ փաշայի արդի եկեղեցիին հողը գնեց ու նուիրեց հասարակութեան: Յիշե՛նք վերջապէս Թալասցի Եգիպտարնակ Աչքդեան Յակոբ աղան, որ նուիրած է Երուսաղէմի Ս. Յակոբեանց ձուլարանն ու վիմագրատունն և ընդարձակ գրադարանը. կտակած է նաև քանի մը հազար ոսկի Ս. Յակոբայ ժառանգաւորաց վարժարանին և թաղուած է Երուսաղէմ, Ս. Փրկչի վանքին մէջ:

Առանցմէ զատ՝ կրնանք մոռցած ըլլալ թերևս շատ անձեր ալ հինէն ու նորէն, որոնց անուններ չենք պատահած մեր հետազօտութեանց ու մատենագրական պրպտումնե-

րուն մէջ և որոնք յիշատակուելին թերեւս ուրիշ պատեհու-թեամբ ։ Մեր աղբիւրները չա՛տ հազուագիւտ, մեր աշխատութիւնները չա՛տ ծանր ու մնայուն էին նման գործերու պատրաստութեան համար. Ճամբայ մը բացինք անտարժանաբար անկախ բաժինի մը մէջէն. թո՛ղ ուրիշ գրիչներ աշխատին լայնել պեղել ու ուղղել՝ յարդարել այդ ճամբան առձեռն գիւտութիւններով, բայց և մեզ հանրային օգուտին անպայման անտեսելու, որ մենք ջանացինք դարձնել[1] ։



Այսպէս ահա՛ գլխաւոր անուններուն հակիրճ անցեալն եւ հանրական ու անհատական գործունէութիւնները կը հասնին մինչեւ 1860 այն նախնի ու 19րդ դարի մեծատուններուն, որ տեւեցին իր 300-350 տարի, և, իրենց աւանդապահ առաքելութեանցն ու հարստութեանց կցորդ, ունեցան իրենց միջնորդարեան ու աւանդական պակասութիւններն ու բարոյական և գաղափարական աղքատութիւնները, որոնց ի հեճուկս կանէր յառաջդիմարար՝ Կ. Պոլսոյ ու գաւառականաց բանիբուն, արուեստագէտ, գրագէտ ու առհասարակ միջակային դասին և փոքր եկեղեցականներուն մէջ՝ փոքր կարողութիւն մը բնիկ ։ Եւ այդ միջին տարրին եղաւ ո՛յժն էր՝ որ, ժամանակին յառաջացած պահանջներուն, անցեալին չափազանցութեանց ու կամապաշտութեանց փորձառութեան, խմա-

(1) Գործոյս մինչեւ վերջին յիշատակութեանց ժամանակներուն (1865—1870)՝ Կ. Պոլսի բազմահայ թաղերն էին, ուր եւ կը սաղաւարէին հայ մեծատունք Սկիւտար Ենիմահալլէ ու Սելամսըզ. Գատըգիւղ, Օրթագիւղ, Բերա, Սամաթիա, Պալաթ, Եէնի Գաբու, Գումգաբու, Կեդիկ փաշայ, Հասգիւղ եւ Վոսփորի քանի մը գիւղերը:

տաւէրներուն, պատրիարքներուն(1), Իրագէտ եկեղեցականներուն և կառավարութեան շնորհներուն և միջամտութեանց հետ լծորդուելով (ամէն չէ՞ որ արեւմտեան և ընդօրինակեալ ձեւի մը վրայ՝) պարզեց, գանեց, բաշխեց, ՍԱՀՄԱՆԱԴՐԵՑ, դատակարգութեան ու ամէն՝ օրինական խառնուրդի մը լծեց հանրական գործերն՝ յանձնելու համար կարծեցեալ ներդաշնակութեան մը, որուն ամիրաներէն շատ քիչերը կրցան ըլլալ բաժանորդ և հանդիսանալու, վասն զի իրենց ազնուապետական անցեալ անչափ գիտութեան փոխարէն՝ խաղալիկ եղան երեսփոխանական ու կարծ՝ հասարակական անշահախնդրութեան մը՝ բանի՛ն, գիրո՛վ, գործո՛վ(2):

Իրե՛նց՝ ամիրաներո՛ւն՝ կենցաղի ճոխ սեղանէն ու թասէն իրր խաղաղ անձնատուրութեան բուն պատճառն ալ իրե՛նք էին: Սեղանաւորներուն մեծ մասը ծագումով Ակնէն էր՝ բաղկացած ազէտ այլ խորագէտ ու խորամա՛նկ ալ մարդոցմէ, որ կը բանեցունէին իրենց խելքն՝ իրենց բան ու գործերէն դուրս ալ՝ իրար քայքայելու, սահեցնելու, նաեւ կո՛յր վրէժխնդրութեանց: Ամիրաներու և միւս հայ մեծատուններու անկումին մէջ տխրագոյն դերեր խաղացած են՝ չարաճճի սադրողներու փոփոխիկ չարաբարդողներու հետ՝ նախա՛նձ քաղթինե՛ր և ուրիշ

(1) Բարի՛ն Յակոբոս Պատրիարք Սերոբեան եւ մասամբ մը Գէորգ Պատրիարք Քէրէստէճեան՝ մեծատուններու եւ միջակայիններու միջեւ կրցան ինչ չափ կատարել չէզոք եւ հանրօգուտ դեր մը տնտեսական:

(2) Այս վերիվայրութեանց եւ փոխարինութեանց առաջին սերմն ընծայեց (1861—1863) Երուսաղէմի Պատրիարքական ընտրութեան **Ներսէն դուրսէն** պայքարը, որ **խաւարեալ** եւ **լուսաւորեալի** յարանուանութիւններով ճանչցուած է եւ որուն պատմութիւնը գրած ենք այլուր: (Պատմութիւն 19րդ դարի Թուրքահայոց):

բարոյական անարժանութիւններ, զորոնք աղէկ կ'ըլլայ ՛նը-շանակել հոս համարձակ. «Ես անոր հէ՛րը տա՛նիծեմ, եւ անոր հակէ՛ն ալ գամ» (¹)ները՝ վերջնապաններն եղած են յաճախ երկու ամիրաներու միջեւ անհրաժեշտ կարծա-նումին միւսի մը ձեռքով, եւ յատուկ մոլութիւններ մըն ալ՝ եղած են պատճառ իրենց խօլ մախումներուն եւ ան-ձայքին վատահամբաւութեանց: Պոլիսի միջակայքին իրա-դէտ ժողովուրդն ալ 1860-1865էն շատ առաջ կռահած էր այս ամէնը, եւ Ճեմարանի բացումին ու փակումին ա-ռաջին յեղումներուն տակն՝ վերջինիս կիրքերը մեծ մասամ տուած են ամենին տկնուվրայութեանց (1840-1846)ին:

* * *

Անոնց տոհմային բարձրամտութեան եւ քծնանք փա-ռասիրութեանց ալ՝ բռնական ճարակ կը մատուցանէր միւթեվէլլիութիւնը, որ էր հին ու աւանդական վարչա-պետութիւն մը Թաղային ու եկեղեցապատկան գործե-րու՝ ընտրուած միա՛յն Պատրիարքէն ու պատասխանա-տու միա՛յն անոր՝ բաց երկուստէք հաճութեանց, քան ուրեք բաց իմաստուն հանրապետութեան եւ անփոփո-խութեան:

Հինաւուրց այս Միւթէվէլլիներէն զատ՝ կային Եկե-ղեցպաններ ալ՝ արդի Թաղական Խորհրդոց պէս՝ որ ե-կեղեցիին համեմատ կրնային ըլլալ 4էն մինչեւ 12 հոգի: Բայց առանցմէ՝ ամէն մեծ եկեղեցի ունէր դպրոցի համար՝ երեք, աղքատներու համար՝ երեք եւ Հիւանդանոցի հա-մար՝ մի հոգաբարձու:

Եկեղեցպաններու պաշտօնն եռամեայ էր, որմէ ետք Եկեղեցպաններու եւ Միւթէվէլլի փոխանորդին հետ՝ հո-

(¹) Ակնայ զուարճախօսութեամբ:

գաբարձուներու թաղային քարոզիչին, աւագերէցին ու աթոռակալին մասնակցութեամբ ժողով ընելով՝ կը պատրաստէին ցուցակ մը եկեղեցպանութեան ընտրելիներու, կրկին թիւով՝ հոգաբարձուներէն և միւս արժանաւոր մարդոցմէ։ Միւթէվէլլիի փոխանորդը կը մատուցանէր ընտրելիներու այդ կրկնապատիկ անուանացանկը միւթէվէլլիին, որ ինքնիշխանաբար նշանակելով նոր եկեղեցպաններն՝ հաստատել կուտար անոնք կնքակով Պատրիարքին. նոյնպէս՝ դարձեալ միւթէվէլլին հաշիւ առնելով նախորդ եկեղեցպաններէն՝ կը մատուցանէր Պատրիարքին։

Գալով միւթէվէլլի բառին՝ այդ անունն ունին մահմետական շէրիաթով տիրոջ ու մատակարարի գաղափարներն հաստատապէս։ Վաքըֆ եղած ստացուածներն ու եկամուտները տնտեսելու և մատակարարելու համար՝ կտակարարին կարգած մատակարարը կանուանի միւթէվէլլի։

Թուրքահայերուն եկեղեցապանական գործերը, կալուածները, կտակները, դպրոցներն եւն վերին հոգաբարձութեամբ մը մատակարարելու գործն ալ՝ այդ սահմանին հանդիսութեամբն յանձնուած էր նոյնպէս միւթէվէլլիներու, որոնց հսկողութեան ներքև կը գործէին վերոգրեալ եկեղեցիներն հոգաբարձուներն և փոխանորդները։

*
* *

Ահա այսպիսի՛ մարդիկ էին՝ 1400էն 1870՝ ճին օրէրուն մեծաւոր հայերը:

Եւ անոնց հետ էին ընդհանրապէս պատրիարքներուն, բդեաշխներուն, պետական նախարարներուն, վարդապետներուն, վարժապետներուն, փիլիսոփաներուն, վանապետներուն, արուեստապետներուն, աւագերէցներուն,

քահանաներուն և կաթողիկոսներուն իսկ(1) բանն ու գործն է յարաբերական ճարպիկութիւնները : Միջնադարեան ու գրաբարեան մարդիկ, ինչպէս ո՛չ է ըսել, մեծ մասով ալ՝ առանց հասկընալու և՛ միջին դարն և՛ գրաբարն(2) և՛ աշխարհաբար, հասկընալով միա՛յն ու միա՛յն այն դարն և աշխարհը, որուն մէջ կապրէին, և միա՛յն այն լեզուն, որ կը բերէր իրենց դրամ հանգիստ և ազդեցութիւն :

Այդ դրամէն ու ազդեցութենէն արձանական ու մատենագրական բաժին մըն ալ եղած է՝ ժամանակին դպրոցներուն գրագէտներուն եւ վարժապետներուն հետ՝ անցեալ Մխիթարեաններո՛ւն եւս(3). իսկ հանգիստէն՝ մեծ-կակ բաժին մը ինկած է իրենց որդիներուն և թոռներուն ա՛յն մասին, որ սիրած են աշխատելէն աւելի նստիլն ու հանգստիլն անչա՛փ անարգի՛ւն, ինչպէս գի չըսենք ու-րիշ բաներ . . .

(1) Փափագողը կրնայ կարդալ Գաբրիէլ Պասկանեանի կենսագրութեան եւ Մսեր Մսերեանցի կաթողիկոսներու պատմութեան մէջ՝ Դանիէլի եւ Դաւիթի նախանձընդդէմ կաթողիկոսութեան սենն ու առաջները ալ՝ Ներսէս Ե. Աշտարակեցի կաթողիկոսին վարդապետ եղած միջոցին Պոլսոյ եւ Զմիւռնայի մէջ վարած դիւանագիտութիւնները, զորս աւանդութիւնն ա՛լ աւելի պերճաւոր կը պատմէ:

(2) Հին Ամիրաներու եւ հայ մեծատուններու կարդացած գիրքերն էին սովորաբար՝ Ոսկան վարդապետի, Մխիթարի, Զօհրապեանի Աստուածաշունչները, Սաղմոս, Նարեկ, Մեկնութիւններ Ս. Գրոց, Չամչեան, Ժողովածու, Եփիմերոսք, Դարապատումները, գի-սակ Բիւզանդեան, Նաղեան, Վարք սրբոց եւ Չարանց եւայլն:

(3) Ի յիշողաց եմ թէ Ղազար ամիրան միա՛յն 1836—1837ին տպուած հայերէն մեծ բառգիրքին տպագրական ծախքին ի նպաստ՝ լեցուցած կամ հոսեցուցած է Հայրերին վանական ծոցը (Վենետիկի Մխ. վանքը)՝ 1000ի չափ ոսկի: (Տե՛ս նաեւ **Պատմութիւն Մուրատեան Վարժարանին** Հ. Սարգիս վարդապետ Թէոդորեանի, հատ. Բ. էջ 437. **ծանօթութիւնը**):

Գործիս մէջ՝ պատմական ձեռնարկի մը և խելամտութեանց կանոնին ներածին չափ՝ պարզուած և ցուցադրըուած այս հոխ անուններուն և դրուատանուններուն հետ իրենց՝ անոնց ուէրերուն՝ ճոխութիւնը, ազդեցութիւնը, ամիրայութիւնն և նախապետութիւնն ալ իբրև բոլորովին անհետացան 1865էն 1869ի վերջերը։ Ու այդ փառաւոր և քաղաքա՛ր անցեալէն՝ 1870էն հազիւ հետաւոր փառքերու և փայլումներու աժգոյն երանգ մը ստուերապար կը ծածանէր՝ քանի մը հին տուներու միջոցով՝ նոր հորիզոնի մը նոր գոյներուն ետևը. իբրև ցոլացում հակա՛յ կոհակներուն մե՛ծ ծովի մը, որ՝ ծփացունելէ ետք իր վրայ փոթորիկներ, խաղաղականներ, ճախապնացութիւններ ու ունկնատխտ լաստեր՝ կը վարէ իր ցածուն հանդարտ և ուժասպառ ալիքն առա՛յդ, գրա՛րթ. — Սահմանադրական — այլ անհա՛ւկ ծովեզերք մը երեկորնական, չա՛ռ մամնաորեալ, չա՛ռ խօսուն հեռաորիկ ու մարդախիտ և կարծ մանրախնդիր որրութիւններով տարաբաժանեալ խարբախեալ ու խաղաղացեալ։

Խաղաղութի՛ւն այս անցեալ վէհատակներու. խաղաղութի՛ւն ներկայ աղատակած բարդառածումներու. խաղաղութի՛ւն հին օրերէն՝ այսպա՛յ օրերու։

## ՎԵՐՋ

# ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԱԾ ԱՆՈՒՆՆԵՐՈՒ ՑԱՆԿԸ՝

*ՄԵԾ ՄԱՍՈՎ ՄԱԿԱՆՈՒՆՆԵՐԷՆ ԶԱՏԵԼՈՎ*



ՎԵՐՋ ՑԱՆԿԻ

# ԿԱՐԵՒՈՐ ԳԻՏԵԼԻՔ ՈՒ ՊԱՐՏՔ ՄԸ

*Հայ մեծատուններու այս պատմութեան չարժառիթ եղած էր մեզի՝ 19րդ դարու Թուրքահայոց ստուար պատմութիւն մը 700 էջի չափ, զոր հինգ տարուան ծախքով, աշխատութեամբ, ուղեւորութեամբ եւ բանական օրերու սիրամաչուքներով պատրաստած էինք բոլորանուէր եւ զոր 1905էն ի վեր դրած էինք բաժանորդագրութեան՝ մեզի ծանօթ երկու վաճառական ընդղանեաւորներու միջոցով : Բաժանորդագրութիւնն եթէ լրանար 210 օսմ. ոսկիի՝ իբրեւ վարձ մեր ծախուց եւ երկարաշունչ աշխատութեանց՝ ձեռագիրը պիտի դրկուէր Ս. Էջմիածին, կամ հոն տպագրուելու եւ արդեանց հարիւրին 50ը բարենպատակ գործի մը յատկացուելու կամ ի չքաւոր արձանագրեալ անուանց բաժանորդաց ի պահ դրուելու Մայր Աթոռոյ Թանգարանին՝ պատեհ առիթին դարձեալ տպագրուելու համար :*

*Մանաւանդ արդի ամենամանրադրական Թուրքահայո՛ց այլ չատ կարեւոր այս պատմական, վարչական, արհեստական, բանասիրական ու փիլիսոփայական ազգ եւ ընդարձակ գործը, հակառակ մեր երկայնամիտ դիմումներուն եւ սիրամաչուքներուն, դժբաղդաբար ցարդ մնացած է ծածկեալ ու գերեւեալ՝ գլխաւոր պատճառն ըլլալով գլուխ կեցող անձանց բազմազբաղ անյօժարութիւնն եւ ամժ-չամեմներու տանձգութիւնը բամբասանքն եւ այլն ի կարգին :*

*Մինչ տասն երկու հատուածի մը չափ 1908-1909 տարւոց միջոցներուն հրատարակեցինք փութով անոր փիլիսո-*

փայլական եղբայրակցութիւններէն՝ Արեւելքի և Բիւզանդիոնի մէջ՝ ի փոխարինութիւն մատուցած մեր փոքրաթիւ ազնիւ բաժանորդագրուողներուն, որոնց պարտական ստորագրուած էինք՝ իրենց վճարածէն հարիւրին 15 ունի արժէքով տպագրեալ գիրքերէն հատուցանել:

Ներկայիս առիթով՝ կը հրապարակենք հոս այդ ազնիւ բաժանորդագրուողաց անունները շնորհակալութեամբ և յուշարարութեամբ, թելադրելով որ հաճին իրենց մէջէն որոշեալ յօժարամիտի մը միջոցով բովանդակել որոշեալ գումարը, որպէս զի գործը չմնայ անարդիւն՝ անհոգութեան գրաւանքին տակ և ուրիշ նորամուտ ձեռնարկուներ չվհատեցունեն չհրատարակեն զայն՝ ամէն գրող մէկ բանի մը հատէն իջնալու և նախաձեռնարկին գործը վիժեցունելու ըստ անազնիւ սովորութեան:

Մեզի ամէնէն աւելի պէտք եղած բանն հիմայ՝ մօտաւոր անցեալին անաչառ ու պատմագիտական պատմութիւնն է: 30 դրշ.էն պակաս, որ գործին գինը պիտի ըլլայ, բաժանորդագին չընդունուիր:

Բաժանորդագրուողք 19րդ դարու Թուրքահայ պատմութեան Յ. Գ. Մրմրեանի 1905-1909...

| | | | |
|---|---|---|---|
| Գեր. Հմայեակ Եպիսկ. Դիմաքսեան | Օ. | Ո. | 1 |
| » Գէորգ արքեպսկ. Երէցեան | Ֆ. | » | 2 |
| Բարձր. Պօղոս փաշայ Նուպար | Օ. | Ո. | 11 |
| Ազն. Տիգրան Կամսարական | » | » | 2 |
| » Յովհ.: էֆ. Յակոբեան | » | » | 2 |
| » Արշակ. էֆ. Գարաճէօղ | » | » | 2 |
| » Եդուարդ և Արամ էֆք. Գարակէօզ | » | » | 2 |
| » Գրիգոր խան Շամասանճեան | » | » | 1. 50 |
| Գումար | Օսմ. | ոսկի | 23. 50 |

| | | | |
|---|---|---|---|
| | Նախորդ գումար | Օ. Ո. | 23. 50 |
| Ազն. | Գառնիկ էֆ. Ցնորըգլեան | » » | 3 |
| » | Տիրան պէյ Կիւմիւշկէրտան | » » | 1 |
| » | Միհրան էֆ. Մուրատեան | » » | 2 |
| » | Արամ էֆ. Ցնորըգլեան | » » | 1. 50 |
| » | Թումիկ էֆ. Սուրէնեան | » » | 1 |
| » | Վահան » » | » » | 1 |
| » | Տիգրան » Ելքէնճեան | » » | 1 |
| » | Լեւոն » Սէմճրճեան | » » | 1 |
| » | Կարապետ էֆ. Արխանեան | » » | 1 |
| | Ընդհ. գումարը Օսմ. ոսկի | | 36 |

Այսպէս՝ ՄԵՐ ՎԵՐՋԻՆ ՋԵԿՈՅՑՆ ՈՒ ՊԱՐՏՔՆ ալ հոս կնքելով՝ կը յայտարարենք «Ահա առացի ձեզ...»

1909, 25 Հոկտ. Ց. Գ. Մ.

Սկիւտար Կ. Պոլսի, Թոփհանէլի օղլու ճատտէ 15 Թիւ



# ՎՐԻՊԱԿՔ

| Էջ | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 44 | 7 | *Մուսաա էգ* | *Մուսա բէգ* |
| 44 | 44 | *Խաղաղաա* | *Խաղաղար* |
| 45 | 13 | *Բուշեոցի* | *Բուշեացի* |
| 64 | 19 | *Վերջացքը* | *Վերջայքը* |
| 65 | 11 | (pépotisme) | (népotisme) |
| 87 | 4 | *աուջիկ* | *աղջիկ* |
| 93 | 1 | *մեծարաններուն* | *մեծատուններուն* |
| 107 | 21 | *է հաս* | *էհաս* |
| 128 | 4 | *Միսաքեան* | *Միսաքեան* |
| | | *Յակոբեան աղայ* | *Յակոբեան աղայ* |
| 88 | 13 | *Գաբրիէլ պատկունի* | *Գաբրիէլ Պատկանեանի* |
| 132 | 12 | *եւ իր որդին՝* | *եւ իր որդին.* |
| 147 | 4 | *Հնդակից* | *ընդակից* |
| 148 | 13 | *տապին* | *տաղին* |
| 153 | 10 | *անչափ գիտութեան* | *անչափգիտութեան* |
| 153 | 19 | *սանեցոնելու* | *սանեցունելու* |
| 154 | 1 | *գործք* | *որ* |



## Յ. Գ. ՄՐՄԸՐԵԱՆԻ ՏՊԱԳՐԵԱԼ ԳՈՐԾԵՐԸ

Ղ.ՐՇ.

Ա. Հուգոնի Փոսկոլեայ եւ Իպ. Պինտեմոնթի Գերեզմանք (սպառած) 5

Բ. Կենցաղ կամ դաստիարակութ. Հ. Սբէնսըրի 10

Գ. Ալէյուխա՝ Ննջեակ իմաստասիրական Ա. տպգր. (սպառած) 5

Դ. Հին օրեր ու այդ օրերու Մեծատունք Ա. տպգր. (սպառած) 5

Ե. Ալէյուխա յԵէմ., ուղեւորութիւն Նկրդրկն. 10

Զ. Հին օրեր Պուէս Խաչատուր Միսաքեան 7.50

Է. 19րդ. Դար և Ցոլհ. Պրուսացի Տէրոյենց 12.50

Ը. Սուներք Հին դէմքերու տանեակ 5

Թ. Թուրքահայոց հին վճռկնթ. և վճռկնք. 12.50

Ժ. Ալէյուխա՝ տանեակ խմորեկն. Բ. տպգր. 7.50

ԺԱ. Մատենական պատմ. Հայ Մեծատուններու 10

ԺԲ. Պատմութիւն Թուրքահայոց 19րդ Դարու վարչական, արհեստական, քանաքի-րական ու փիլիսոփայական՝ 700 էջի չափ (ի բաժանորդագրութեան...) 30

Կը ծախուին՝ Կ. Պոլիս Պալենց, Աչճեան ու Գըլըճեան գրատուններն և մեծաքանակ՝ հեղինակին քով:



